3



Description du Pont,
ou de la mer noire (en arménien)

---

Venise, 1819.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՊՈՆՏՈՍԻ

## ՈՐ Է ՍԵԱՒ ԾՈՎ

ՍՏՈՐԱԳՐԵԱԼ ՏԵԱՌՆ Հ. ՄԻՆԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ
ԲԺՇԿԵԱՆ ՏՐԱՊԻԶՈՆՑՒՈՅ
'Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ



'Ի ՎԵՆԵՏԻԿ
'Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1819. ՌՄԿԸ.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Գիտուններուն հեռացոյց գործիքին նմանցուցին պատմութիւնն, որ ոչ միայն հեռու եղած մանր բաները մեծ կը ցուցնէ, այլև չտեսնուած և չերևցած բաներն ալ առաջ բերելով յայտնի կ'երևցնէ ։

Այս գործիքը չեղած՝ հին աստղաբաշխները միայն եօթն մոլորակ տեսան աչքով, և հազար քառասուներ-կու աստղ որոշեցին . բայց հեռադիտակ որչափ աւելի կատարելագործեցաւ այս գործիքն, այնչափ աւելի մարդիկ համարձակեցան զննել երկնային մարմին-ներն . իբր թէ աչքով պարզելով կամարներուն մէջ բիւրաւոր աստղեր տեսան որոշեցին ։ Ուստի հիմա տասն մոլորակէն աւելի, և միլիոնաւոր աստղեր կը համրեն ։ Տես Ձեռ. 345 ։

Այսպէս պատմութեան գրեանքն և աշխարհա-գրութիւններն ելլելով հեռու ժամանակի մէջ եղած բաներն և անծանօթ աշխարհներն ու ազգերն՝ հե-ռացուցի նման մօտ բերելով յայտնեցին . անանկ որ չտեսնուած աշխարհները, և չերևցած կորած տեղերն ու ազգերն՝ երևան ելան ։

Այս պատճառաւ Եւրոպացիք իրենց մանկանց խելքը սորվեցնելու համար՝ միշտ կը ջանան կարդացընել ընտիր պատմութիւն և ճիշդ աշխարհագրութիւն։ Այս խորհրդով մենք ալ պատմութեան գիրքն յօրինեցինք։ Տես հտ. Բ. և Գ։ Անոնք նաև շատ անգամ մարդ կը ղրկեն զանազան աշխարհներ. որպէս զի՝ ճիշդ քննութեամբ նոր ծանօթութիւն և նոր տեղեկութիւն ստանան։

Եթէ ասոնք միայն հին խելքով մնային և հին բաներով երթային՝ շատ հաստ և ագէտ կը մնային. որովհետև մարդուս աչքը միայն մօտ եղած բանը կը տեսնէ, և ականջն լսածը միայն գիտէ. ուրեմն պէտք է հնարել զանազան պատմութիւններ և աշխարհագրութիւններ, որպէս զի՝ անցածը պատմեն և հեռու եղածները խօսեցնեն։ Հին ժամանակը քանի՞ երևելի քաղաքներ, և քանի՞ մեծ մեծ կղզիներ կային ազգերով լեցուն. որ հիմա չի կան, և անոնց տեղը ծով եղած է։ Նաև շատ տեղեր ջուր էր ծովու նման, հիմա ցամաք է, և մարդիկ կը բնակին։ Տես Ճռմ. 266։

Եւ որովհետև այս աշխարհ մարդու բնակարան է, մարդկութեան կը վայլէ՝ որ իր բնակարանին մէջ ինչ որ կայ գիտնայ, և չտեսածը տեսնէ, միշտ աշխարհագրական պատմութիւններ կարդայ, և նոր նոր տեղեկութիւններ սորվի գիտնայ, թէ ինչ տեղեր և ինչ ազգեր կան եղեր. կամ թէ այս աշխարհ ինչ փոփոխութիւններ տեսեր է։ Այսպիսի ծանօթութիւն հարկաւոր ճանչնալով գիտունները՝ հին ատենէն 'ի վեր գրեցին և պատմեցին իրենց բռնած տեղերը և տեսած բաները։

«Բաժնուած երկու հազար երկու հարիւր յիսուն տարի առաջ գրեց իր ըրած Սև Ծովու Ճամբորդութիւնը, և Պոնտոսի վրան սակաւ ինչ տեղեկութիւն տուաւ։ Իսկ հետագայնին Արրիանոս երևելի փիլիսոփան հազար եօթնհարիւր տարի առաջ Սև Ծովուն չորս բոլորը պտըտեցաւ, և Արրիանոս կայսեր Թուղթ գրելով համառօտ տեղեկութիւն մը տուաւ Պոնտոսի երևելի տեղերուն վրա. որ կըսուի Շրջագրութիւն։ Տես տախ. Գ։

Թէպէտ եւրոպացոցմէ ևս գրողներ եղան Պոնտոսի մասնաւոր տեղերուն վրայով, սակայն շատ քան կարծիքով գրեր են, ըստ որում անձամբ փորձեցինք. որովհետև այս կողմերը չունին համարձակութիւն եւրոպացիք. վտանգաւոր է իրենց, և կը վախնան քննելու. ինչպէս կը խոստովանի Տուռնըֆօր։

Արդ՝ մենք շրջելով ընդ ոլորտս Պոնտոսի Առաքելական պաշտօնիւ՝ ահա մեր երկամեայ ճամբորդութեան մէջ կամեցանք գրել՚ի Պոնտոս նոր քննութեամբ այս մեր աշխարհագրական պատմութիւնը Պոնտոսի կամ Սև Ծովու ճիշդ, շատ տեղ անձամբ դիտելով, չափելով, և հին գրերը կարդալով. նաև հին յիշատակարաններն եպիսկոպոսարաններուն և եկեղեցիներուն որոնելով՝ ըստ կարի ճշմարտեցինք և ստորագրեցինք համառօտիւ՝ հանդերձ աշխարհացոյց պատկերով, յօգուտ ուսումնասիրաց ազգիս։

Որոնք ոչ միայն պէտք է հմուտ ըլլան այժմեան օգտակար բաներուն և աշխարհագրական տեղեկութեանց, այլև հնութեանց և անծանօթ աշխարհաց և ազգաց. որպէս զի՝ վառուին նոր սիրով ուսումնականութեան, և գովելի գործքով ազգասիրութեան։

Լաւ նկատելով սուտ աշխարհիս յարափոփոխ և անցո-ղական բաներն՝ կատարելութեան և տարբերութեան հետևելին, որ կը մնայ միշտ և անփոփոխ։ Ըստ այսմ.

* Զամենակեցոյ կեանքս անցաւոր,
Կարծել չասայ քեզ փառաւոր.
Զի թէ 'ի կառս ես թագաւոր,
Եւ կամ իշխան յոյժ զօրաւոր,
Հողոյ ծնունդ ես հիւթաւոր,
Որ դառնալոց յող կամաւոր։

«ՈՉ 'Ի ԿԱՐԾ ԸՆԴՈՍՏՈՒՑԵԱԼ ԵՒ ՈՉ 'Ի ԼՈՒՐ ԶԱՐԹՈՒՑԵԱԼ, ԱՅԼ ԵՍ ԻՆՔՆԻՆ ԱՆՁԱՄԲ ԱՆԴԷՆ 'Ի ՏԵՂՒՈՋՆ ՊԱՏԱՀԵՑԻ»։

Եզն. Ա։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՊՈՆՏՈՍԻ

## Ա. ԱՆՈՒՆ.

1. ՆԱԽՆԻՔ Պոնտոս անուանեցին սեւ ծովը. զի անունս պոնտոս հելլենացոց լեզուով ծով կը նշանակէ. որ ոչ միայն այս ծովուն է սեփական, այլեւ սեւ ծովուն հարաւային աշխարհներն ալ Պոնտոս ըսուեցան եւ բնակիչները Պոնտացիք։ Ինչպէս կը հաստատէ Յոհաննէս կաթողիկոս պատմելով Մօրիկ կայսեր համար, թէ * Օ պոնտոս. յորում մայրաքաղաքն է տրապիզոն կոչէ զնա մեծ մասն հայոց ||։ Ուր նախ Յաբեթի ցեղէն եկան բնակութիւն շինեցին. որպէս աւանդութեամբ կը պատմեն (105)։ Հարտին աշխարհագիրը կըսէ թէ սեւ ծով առաջ Յաբեթի թոռանը անուամբ Աշքենազ կըսուէր. վերջը յոյնք փոխեցին Աքսինոս ըսին. որ կը նշանակէ լաւ հիւրընկալ։ Ուրիշ թէ արգոնաւորդք հեգնութեամբ այս անունը տուին. որովհետեւ սեւ ծով միշտ խռովութեամբ եւ ալեկոծութեամբ հանդարտութիւն չունի։ Ըստ ոմանց սեւ ծովն առաջ կըսուէր Աքսինոս այսինքն անհիւրընկալ՝ բնակիչներուն աւազակութեանը համար. բայց երբոր յոյնք բնակեցան, մարդասէր ըլլալով ծովն ալ հիւրընկալ կոչուեցաւ։

Սակայն հասարակ անուամբ Սեւ ծով կըսուի գրեթէ

ամէն լեզուի մէջ ոչ միայն սեւագոյն եզերաց համար, որ շատ տեղ սեւ աւազով լեցուն են, այլեւ ահեղ ալիքներուն եւ հովին բռնութեան պատճառաւ. որ ամպով կը պատեն ծովն, ու ջուրը սեւ կերեւցընեն. որովհետեւ սեւ ծովուն միջոցը նեղ ըլլալով, եւ չորս դիէն լեռներով պատած ըլլալով, հիւսիսային եւ արեւմտեան հովն ելածին պէս, մէկէն ամպով կը մըթնէ, եւ ալիքներով կը խռովի։

Ոմանք կը պատմեն թէ հին ժամանակը Կիմերեան անուամբ ազգ մի կայ եղեր Պոնտոս. որոնք սեւ գոյնը շատ սիրելով՝ սգաւորութեան նշան դրեր էին. անոր համար կոչվեցաւ Սեւ ծով. ըստ արաբ. Պահրէ էսվէտ. Պահրէ ղանդը. եւ ըստ ռուսաց Չէռնոյէ Մօռէ։

2. Հին բանաստեղծներէն ըսօղ եղաւ թէ սեւ ծովը սեւութիւն չունի եւ ալիքները շատ չեն տարածիր։ Թէֆիս եւ Սօլինոս նաւապետները տարին մինչեւ Կողքիսոն, Անկուէլիստան, եւ Ռապաղա հաւուցին զՅասոն եւ զՀերքիւլէս (56)։ Բայց սակայն ասոնք ալէկոծութիւն չեն տեսած. վասն զի յայտնի է թէ միշտ եզերքէն երթալով ներսի ալիքներուն չեն պատահած։

Իսկ ես անձամբ փորձեցի յանդուգնա Պոնտոսի ահագին ալէկոծութեամբ, երբոր ալիքները լեռներու նման կը տարածէին արեւմտեան հովին բռնութենէն, նաւն անյայտ կըլլար ալիքներուն մէջ։ Սեւ Ճերմակ ծովն ալ եւ Ադրիականի ծովն ալ դիտեցինք, որ ալիքները կըղզիներուն վազուկ ջրերէն խառնակելով, չէին այնչափ տարածէր այն խորունկ ծովերուն մէջ։ Նաեւ օդը շատ անգամ պարզ ըլլալով երկնագոյն կերեւնան այն ծովերը. իսկ սեւ ծովն յաճախ ամպով պատած ըլլալով եւ ալէկոծելով սեւագոյն կերեւնայ, ինչպէս կը հաստատէ Ովիդիոս բանաստեղծ, որ աքսորեցաւ Պոնտոս (250)։

* Մ՛է ինչ խռովեսջիր երկիր պոնտոսի,
Սակայն թէ անխռով լինել քեզ մարթի,
Ո որ ՚ի սրաթըռիչ գունդ երիվարի,
Մ՛իշտ սմբակակոխ առնէ թշնամի.

Մ՛ի ինչ խռովեսջիր եթէ ասացից,
Թէ աքսորանացս 'ի ցաւս աղէտից,
Դու ծանրատաղտուկ 'ի վերայ բարդիս,
Եւ ծանրաբեռնես ըզվիշտ վըտանգիս ‖։

Ողբ. դպր. Գ. 1։

## Բ. ՈՐՊԻՍՈՒԹԻՒՆ։

3. Սև ծովը ամէն ժամանակ միակերպ չէ եղած. երբեմն շատաջուր էր, և հիմա սակաւաջուր. ժամանակ ալ կըլլայ որ անջուր պիտի ըլլայ, ինչպէս աշխարհագրական կարգը կերևցնէ (7)։

Արրիանոս կը հաստատէ թէ Պոնտոս Ճերմակ ծովէն անուշ է, և անասնոց օգտակար, մեծամեծ գետեր հոն վազելուն համար. Փարշի կողմը տեսանք կըսէ, որ կովերը ծովուն ջուրը կը խմէին։ Ահա անկէ 'ի վեր 1700 տարի անցնելով հիմա աւելի բարեխառն է։

4. Անոր համար հին պատմիչները կըսեն թէ սև ծովը առաջ շատ խորունկ ըլլալով անդունդ կըսվէր. բայց գետերը շարունակ աւազ, տիղմ, և քար թափելով շատ տեղ ծանծաղ եղաւ։

Այնչափ որ ծովուն ջուրը վեր ելլելով չի սղմեցաւ եզերաց մէջ, պատռեց Ստամպօլու բերանը բացաւ. և այսպէս սև ծովը ցածնալով իջաւ. ու Մարմարայի ծովուն կողմը շատ տեղ ծածկեց։

Հերոդոտոս հին պատմիչ, որ էր 2285 տարի առաջ, կըսէ թէ Տրօյիայի դաշտը, և բոլոր Մ՛իւսիա ծովուն տակն էր. որովհետև այս տեղերը բարձր չեն, ինչպէս տեսանք։ Ստրաբոն կըսէ թէ Ստրատոն հաստատեց թէ Եւքսինոս սև ծով հին ատենը չունէր Ստամպօլու բերանը. այլ գետերն որ հոն կը վազեն բռնութեամբ բացին։ Այսպէս կը հաստատէ նաև Դիոդորոս սիկիլիացին։

5. Ահա այս է պատճառն որ սև ծովուն մէջ տեղ տեղ չէնքեր կերևնան (258). և ծովէն չէնքի կտորներ կելլեն։ Տեղ տեղ ալ բարձր լեռներու վրայ նաւ կա-

պելու տեղեր կան, չուանէ մաշած քարեր և օղակներ. ինչպէս ստուգեցինք Տրապիզոն և Սինէպօլու քաղաքը. ուր իրեք ժամ վերը նաւ կապելու տեղերը կերևնան. քաղաքացիք ալ նոյն աւանդութիւնն ունին (63):

6. Այնպէս նախնիք կը պատմեն թէ Ազախու ծովն առաջ անցք չունէր սև ծովուն հետ. Տօնաւիս գետին բերած տղմով և աւազով այնչափ բարձրացաւ, մինչև պատռեց Թամանու բերանը բացաւ: Այսպէս սև ծով աւելի առատանալով մեծցաւ անատենը. և բացվելով Ստամպօլու բերանը նորէն պըզտիկցաւ:

Այն ժամանակը Ճերմակ ծովն ալ առատանալով կոխեց Ռոտոս կղզին բոլորովին ծածկեց ժամանակ մի. յետոյ քաշվեցաւ. և մինչև հիմա լեռներուն վրա քարացեալ ժժմունքներ կերևնան: Փիլոն կը գրէ թէ հիմա ծովը նուազեցաւ. որպէս կը վկայեն Ռոտոս և Դելոս կղզիներն որ ջրին տակն էին, և յետոյ քիչ քիչ երևեցան: Ապա ուրեմն ազախ ծովն ալ միշտ միակերպ չէ եղած. որուն՝ հիմա արևելեան կողմն աւազով լեցուն ըլլալով նաւերը պտըտելով հիւսիսի կողմէն կանցնին. զի Տօնաւիս գետին ընթացքը այն կողմն աւելի լեցուցեր է (188):

7. Ասկէց հետևցուցին փիլիսոփաները, թէ երկար ժամանակ անցնելէն ետև՝ սև ծով բոլորովին պիտի լեցվի. վասն զի տասուիրեք մեծամեծ գետեր և յիսուն միջակ գետեր հանապազ քար և աւազ բերելով շատ տեղ ցածցուցեր են. ինչպէս տեսանք:

Նաև շատ տեղ դիտեցինք Պոնտոսի ծովեզերքն, որ գետերուն բերած մաշած քարերով լեցուն են. գրեթէ շատ տներուն յատակը նոյն քարերով շինած է. որ անպակաս կը բերեն գետերը. մանաւանդ երբոր կառատանան:

Արրիանոս միայն Լազիստան տասնըչորս գետ կը համրէ. որ իրեք գետին մէջ նաւ կը քալէր: Պօլիբիոս կըսէ թէ Պոնտոս՝ որ հիմա կը լեցվի այնչափ նիւթով՝ վերջապէս պիտի լեցվի. և այն անդունդ ծովը լիճ պիտի դառնայ:

Սակայն այս դիպուածն երկար ժամանակի կը կարօտի, վասն զանազան պատճառաց։ Պատմիչներուն նայելով չորս հազար տարիի մօտ է քանի որ Ստամպօլու բերանը բացված է։

Հիները կըսեն թէ Փինէուին առջին հրաբուխներ կային. ըստ որում արգոնաւորդք Թրակիայի թագաւորէն լսեցին, թէ գիանեան ժայռերէն հուր կելլէր (269)։ Ասով դիւրին բացվեցաւ սև ծովուն բերանը։

## Գ. ԽՈՐՈՒԹԻՒՆ։

8. Դիոդորոս հին պատմիչ կը հաստատէ թէ անդունդ խորութիւն սև ծովուն՝ գետերուն բերածնիւթով լեցված ըլլալով առջի խորութիւնը չունի։ Անոր համար գետերուն վազած կողմը աւելի ցածնալով շատ տեղ աւազակոյտ եղած է. ինչպէս Դունային և Տնէբէր գետերուն կողմն այնչափ ծանծաղ տեղեր կան, որ շատ անգամ նաւերը վտանգի մէջ կիյնին. մանաւանդ երբոր ջրին ընթացքն ալ այն կողմը կըլլայ։

9. Ահա այս պատճառաւ Խօլիւ տէնիզին լեցվեցաւ նիւթով, ուր մնած նաւը չի կրնար ելլել (228)։ Նաև ազախու ծովուն արևելեան կողմն շատ ծանծաղ է նոյն պատճառին համար։

Ուստի սև ծովուն հարաւային կողմը, ուր որ մեծ գետեր չիկան՝ աւելի խոր է։ Նոյնպէս հիւսիսային կողմը սարերուն առջին առաւել խոր է։ Շատ տեղ, մանաւանդ հարաւային կողմը ծովուն տակն ապառաժ քարոտ է։

Սակայն սև ծովուն աւելի խոր տեղն է Սինապու և Խրիմի միջոցը. ուր երկու կողմէն ծովը սրխմըված է։ Ընդհանրապէս բարձր տեղերուն և սարերուն առջին ծովը խորունկ կըլլայ. իսկ ցած տեղերուն առջևի ծովն ալ ծանծաղ կըլլայ։ Պաթումի կողմը տեղ մի կայ այնչափ խորունկ որ տակը չի կայ կըսեն. կը կարծըվի թէ ասկէց հաղորդութիւն ունի

սեւ ծով Կասպից ծովուն հետ, որ է անհիմն։

10. Իսկ հիւսիսային եւրոպայի կողմն աւազով եւ տղմով լեցուն ըլլալով այնչափ ապառաժ չի կայ. այլ շատ տեղ ցամաք լեզուներ եւ ծածուկ կղզիներ կան, որ կըսուին Մանճաուրլար (230)։

11. Արեւելեան դին Փարշի կողմն՝ դիմացէն ալ աւազ գալով հետզհետէ կը ցածնայ ջուրը. ուստի գետին բերանը լայնալով վեր կերթայ. անոր համար շէնքերը քանի կերթայ վեր կը շինեն. ինչպէս ստուգեցինք (154)։

Պիւֆֆոն բնաբանը այսպէս կը հաստատէ, թէ գետերը միշտ աւազ եւ հող բերելով սեւ ծով, գետերուն ջուրն ալ կը նուազի. զի լեռները իջնելով կը ցածնան, ուսկից որ այն ջրերը կուգան. ապա երկար ժամանակով սեւ ծովը կը ցածնայ, լեռներն ալ վար կիջնին։

Այս պատճառաւ սեւ ծովուն մէջ մեծամեծ ձկներ չի կան. թէպէտ շատ տեսակ ձկներ կելլեն. ինչպէս Սահանաձուկն, Քէօթէկ, Գարակէօզ, Գըլըն, Գոն, Քէֆալ, Իսկիւմրի, Մէզիտ, Խյամսի աւատ, Թիրսի, եւ այլն։

Դ. ԴԻՐՔ ԵՒ ՁԵՒ։

12. Այսպիսի պատճառներէն կը հետեւի թէ այս ծովուն դիրքն ու ձեւը միշտ միակերպ չէ եղած. վասն զի հին ատենը աւելի լեցուն եւ մեծ էր սեւ ծով. ձեւն ալ հիմակուան պէս չէր. ինչպէս Ղենիկու լեռներէն կիմացուի, որ ջրով ծածկած էին։

Հիները լարած աղեղի նմանցուցին սեւ ծովը. կարելի է թէ հին ատենն այն ձեւն էր, հիմա տարբեր է. զի Ինճէ սարը խրիմի Այա սարին դէմն ըլլալով ձեւը կաւրէ. ուր երկու կողմէն կիսով չափ նեղցած է ծովը։

13. Սեւ ծովի հիմակուան ձեւն աւելի վիշապի նմանութիւն ունի. գլուխը մեծ, որ է միջոց Ամասրայի՝ Գունայի, եւ Փօաօզի. Ստամպօլու նեղուցն է բերան

վիշտայինն. իսկ Պուռղազի ծոցը քիթի նման երկայն կը վերջանայ: Նաեւ մեռած ծովն է՝ ականջ ձեւա-ցած: Մէջքը նեղցած՝ է միջոց Ինճէ և Այա սա-րերուն: Իսկ վարի մասը Անատոլէն կերկըննայ մինչև Փարշ. Միօն գետն ալ բարակ պոչ ձեւացած է (154):
Նոյնպէս ազախու ծովը մաշկաթեւի նման բաց-ված է վիշտային վրայ, մինչև Տօնաւիս գետը կը վեր-ջանայ (188):

## Ե. ԶԱՓ.

14. Սեւ ծովուն ճիշդ չափը մինչև հիմա չէ կրցած որոշելու ոչ միայն գետերուն և ծոցերուն պատճա-ռաւ, այլև շատ տեղ կայ որ ոչ նաւերը կրնան մօ-տենալ, և ոչ նաւավարները կրնան երթալ, ինչպէս Ապազայի կողմն է: Ասոր ոչ սակաւ դժուարութիւ այսչափ կրցանք որոշելու: Բայց որովհետև դիրքը արևմուտքէն դէպ 'ի արևելք պառկած է շիտակ, անանկ որ եթէ գիծ մի ձգենք Պուռղազէն դէպ 'ի արևելք՝ շիտակ Փաշ կը հասնի. և այս շիտակ գը-ծով երկայնութիւնը իբր 1200 տաճկական մղոն կըլ-լայ. և գլխուն լայնութիւնը Պապա պուռնիէն մին-չև Օզու իբր 600 մղոն: Իսկ մէջքին լայնութիւնը Անատոլէն մինչև Խրիմ. կամ ճիշդ նայելով Քերեմ-պէէն մինչև Այա՝ 220 մղոն: Իսկ պոչին միջական լայնութիւնը Սէօնէէէն մինչև դիմաց Խօրի 110 մը-ղոն, որ դէպ 'ի արևելք երթալով կը նեղնայ, ու Փարշին գետը կը վերջանայ:
15. Սակայն շրջապատը ճիշդ չափելը դժուար է վասն ելումնւտ տեղերուն. շատ գօգեր կան դիմացի կողմն որ նաւ չի կրնար մօտենալ, ինչպէս ըսինք. և շատ ծոցեր ալ կան որ նաւի համբայ չեն: Ըստ նաւա-վարներուն համբայքին չափով Աստամպօլէն մինչև Տրա-պիզոն 909 տաճկական մղոն է. անկէ մինչև Քազ-լըթ պօղազի 716. անկէ մինչև Պռունա 720. անկէ ալ մինչև Ստամպօլ 516: Իսկ այսպէս բովանդակ սև ծովուն շրջապատը կըլլայ 2861 մղոն տաճկական

(273): Իսկ ազախու ծովուն շրջապատը տես իր տեղը (188):

Պոնտոսի աշխարհագրական լայնութիւնն կըսկըսի իբր 40°. 20′ աստիճանէն, և կը հասնի մօտ 47°. իսկ երկայնութիւնն կըսկըսի 24°. 30′ աստիճանէն, կը հասնի մինչև 39°. 50′:

## Դ. ԸՆԹԱՑՔ ՋՈՒՐՑ:

16. Սև ծովուն անհաւասար խորութեններէն, մեծամեծ սարերէն, և գետերէն կը հետևի որ ջրին ընթացքը ամէն տեղ միակերպ չըլլայ. երբեմն ներս, երբեմն դուրս կը վազէ. տեղ կայ դէպ 'ի արևելք, տեղ ալ կայ դէպ 'ի արևմուտք կը վազէ. զորօրինակ Յօռօզ սարին առաջ դէպ 'ի արևելք. բայց՝ դէպ 'ի հիւսիս կը վազէ: Իսկ Ազախու ծովուն բերանը շատ անգամ դէպ 'ի հարաւ կը վազէ. և ինչպէս որ հովը փոխուի՝ ջուրն ալ կը փոխուի. որպէս ստուգեցինք (188):

Մանաւանդ ծովուն տակը լեռներ ձորեր ըլլալով, և ծովուն գոգերն ու սարերը պէսպէս ըլլալով, ջրերը տեղ տեղ կը վազեն, տեղ տեղ ալ անշարժ են:

17. Ասկէց կը պատճառի յորձանք (Ագընտի) սև ծովուն. որ տեղ տեղ գետի նման սաստիկ կը վազէ մանաւանդ երբ երկու կողմի ցամաքը մօտ են իրարու: Շատ անգամ Ինճէին քով դէպ 'ի արևելք կը վազէ. իսկ Յասօն սարին առաջ ընդհակառակն կըլլայ, ինչպէս փորձեցինք:

Սակայն ընդհանրապէս հարաւային կողմի ջուրը դէպ 'ի արևելք կը վազէ. և հիւսիսային ջուրը դէպ 'ի արևմուտք: Ուստի կանոն չունի. հովին բռնութեններէն և գետերուն առատութեններէն կը փոփոխի: Անոր համար արևելեան կողմն եկող նաւերը ցամաքին մօտ կանցնին. իսկ արևմուտք գնացողները բացէն կերթան:

18. Եւ որովհետև Ստամպօլու բերանը դէպ 'ի հիւսիս բացված է, միշտ սև ծով ներս կը վազէ բա-

նութք . որ ոչ միայն գետերուն ջրերէն կը պատճառուի , այլեւ անհաւասարութենէ միջերկրական ծովուն ըստ աշխարհագրաց . ուր տեղ տեղ աւելի ցած ըլլալով սեւ ծովուն յորձանքը պատճառած է : Սեւ աշխարհագրական կարծիքը կը հաստատէ թէ սեւ ծով Ճերմակ ծովէն բարձր է : Բայց որովհետեւ օդն որ պարզի՝ արեւելեան եւ հիւսիսային հովերը փչելով ջուրը ազատ կը մղեն նեղուցէն ներս , աւստի սաստիկ յորձանք կըլլայ Ստամպօլ : Բայց գետերն ալ առատանալով աւելի կը բարձրանայ ծովն ու կը սաստկացընէ յորձանքը . անոր համար Նօռօզ սարին առաջ՝ երբոր գետերը կառատանան՝ ջուրը փոխվելով դէպ 'ի արեւմուտք կը վազէ :

Սակայն յայտնի է թէ սեւ ծովու գետերուն ջուրը մէկ տեղ բերելով՝ այնչափ շատ կըլլայ որ չորս նեղուց ըլլար հազիւ կը բաւէր պարպելու , թէ որ արեգակին տաքութեամբ գոլորշի ըլլալով վեր չելլեր . Տես Ճեմար. 202 :

19. Իսկ կրկնայորձանքը կը պատճառի ծովուն տակի լեռներէն եւ նեղ տեղերէն . երբ ծովուն երեսի ջուրը դէպ 'ի արեւմուտք կը վազէ , տակի ջուրն ընդհակառակն կըլլայ՝ դէպ 'ի արեւելք կը վազէ : Աւտի շատ տեղ այս երկու յորձանքով կը վազէ ջուրը նման նեղուցին Ստամպօլու :

20. Այս պատճառաւ՝ շատ տեղ ալ ծովուն մէջ գծեր եւ շաւիղներ կան , որ Գանոյ կըսվին . ուր ջուրը կերպ կերպ կը քալէ . երբեմն առաջ ետեւ կերթայ . երբեմն դուրս ներս կըվազէ . տեղ տեղ ալ անշարժ կայ :

Եւ այս շարժումն անկանոն ըլլալով՝ ամէն ամիս միակերպ չի կրնար ըլլալ . եւ ամէն տեղ մի եւ նոյն կարգ չի մնար : Մանաւանդ երբոր ալէկոծութեամբ տարասփելի ալիքները խառնվելով ամէն բան տակնուվրա կընեն՝ ինչպէս անձամբ փորձեցինք : Սակայն սեւ ծովուն մէջ երեւելի մակընթացութիւն չի տեսանք :

21. Ինչպէս ըսինք՝ Պոնտոսի մէջ յիսուն միջակ գետ և տասուիրեք երևելի մեծ գետեր կը վազեն. չորսը հարաւային կողմէն չորսը արևելեան կողմէն. չորսը հիւսիսային, մէկն ալ արևմտեան կողմէն:

Հարաւային կողմէն սկսեալ Փէնէևէն ա. գետն է Սագարիա մեծ. որ Գաղատիայի լեռներէն կելլէ, և խոտորնակի պտըտելով Փռիւգիայի կողմէն կուգայ Բէֆկէնի ծովը կը վազէ. որուն մէջ նաւ կը մտնէ (46): Այս գետին մօտ մեծ քարաշէն կամուրջ կայ. կերևնայ թէ գետը ճամբան փոխելով ցամաք մնացեր է. որ կըսուի Սանկըր քէօփրիւսի:

բ. Պարթէն գետ. որուն բերանն է նաւահանգիստ, և տասը մղոն ներս նաւ կերթայ (52):

գ. Գըզըլ ըրմագ կամ Ալիս գետ հռչակաւոր, որ կելլէ փոքր Հայաստանէն և Սեբաստիոյ կողմէն անցնելով Ճէնիկու ծովը կը թափի (78):

դ. Չարշամպա սույու, կամ Իրիս գետ լայն, որ կելլէ Հայաստանէն, և Ամասիայի մէջէն անցնելով կերթայ Լիմոպոնտոս. բերանն է իբր նաւահանգիստ, բայց ծանծաղ (81):

ե. Ճորոխ կամ Փիւսոն՝ կարնոյ կողմէն կուգայ՝ դէպ ՚ի Բաբերդ խոտորելով արևելք կը դառնայ և Աճանեէի մօտ Լազիստանու ծովը կըվազէ (149):

զ. Ֆաշ գետ՝ եգերացոց աշխարհէն կելլէ, և շըրջելով վրաստան կուգայ Փաշէին առաջը նաւահանգիստ կընէ ծովը կը վազէ (154):

է. Չօխուռ ըրմաղը՝ երևելի գետ որ Ապազայի լեռներէն կուգայ, և ապազայի ծովը կը վազէ (176):

ը. Կուպան՝ երևելի մեծ գետ՝ Չէրքէզի կողմէն Էլպուռուս լեռնէն կելլէ կովկասէն անցնելով Աչուբերդին քով երկուս կը բաժնըւի, Անափայի մօտ ծոց ձևացնելով, Դուզլուդաշ կը վազէ (185):

թ. Տօն կամ Տանայիս՝ գետ մեծ՝ Մոսկովատանէն կելլէ շատ տեղ պտըտելով և վեց գետի հետ խառնըվելով Ազախու ծովը կերթայ (197):

Ժ. Տնեէբէր. թր. Օզու կամ Բորէ սույ՝ Սաքսու-
նիայէն կելլէ կերթայ Օզուին առջին չորս մղոն լայ-
նութեամբ Լիման ծովակը կը ձեւացնէ, և Օզուի
բերնէն ծովը կը վազէ. ուր մեծամեծ նաւեր կը մըտ-
նեն (233):

ԺԱ. Պոկ կամ Ակսու ըստ հն. Իպանիս, որ ներ-
սէն կուգայ կըվազէ օզուի Լիման ծովակը (234):

ԺԲ. Տնեստէր կամ Թուրլա գետ մեծ՝ Լեհաստանէն
կելլէ Աքքիրմանու ծոցը կը վազէ (239):

ԺԳ. Դանուպ կամ Դունա աշխարհին մեծ գետ՝
Զվիցցերիոյ լեռներէն կելլէ և շատ պտըտելով կու-
գայ Սավա գետին հետ կը խառնըւի, և Վիէննայի
առջեւէն անցնելով կերթայ Պուլղարիա, և Պուճաղ-
թաթար հինգ բերանով սև ծով կը վազէ (242):

## Ը. ՍԱՐ ԵՒ ՔԻԹ՝

22. Թէպէտ սև ծովուն սարը կամ քիթը պա-
կաս չէ ամէն կողմ, սակայն ապահով ծոցը քիչ է.
վասն զի շատը շիտակ ծովը մտած ըլլալով, ապահով
նաւահանգիստ չունին: Նաև որ մէկ կողմը ծռած
ըլլալով մէկ հովը կը կտրեն. ուրիշ հով անպակաս
ալէկոծութիւն կը հանէ. մանաւանդ արևմտեան
հովը:

Սար, կամ ըստ պարսից Սէր, այսինքն գլուխ ասե-
լով կիմանանք մեծամեծ լեռներն որ ծովը մտած են
և ոմանք գոգ ունին. ինչպէս է Եօռօզ սար Տրապի-
զոնի, և Քէրէմբէ սար: Իսկ քիթն՝ որ ըստ յն.
կըսվի Ակրա, է լեռան ծայր, որ նոյնպէս ծովը կը
վերջանայ ծուռ կամ շիտակ:

23. Ըրզ՝ Փէնէռէն ելլելով Ա. քիթն արևելեան
կողմանն է Գարապուռուն, որ դէպ 'ի արևելք է ծռած:
Բ. Քէֆքէն սար դէպ 'ի արևմուտք: Գ. Պապա պուռնի
արևմուտք ծռած: Դ. Քէլէլճէ սար հիւսիս դար-
ձած: Ե. Ամասրա գլուխ դէպ 'ի արևելք: Զ. Քէ-
րէմբէ սար շիտակ: Է. Իսթէֆան պուռնի շիտակ: Ը.
Ինճէ պուռնու դէպ 'ի հիւսիս: Թ. Սինոպի սար

դէպ 'ի արեւելս : Ժ. Զարիշակա պուրուն դէպ 'ի ա-
րեւելս : ԺԱ. Ինճէ պուրուն շիտակ : ԺԲ. Աքսամ
սար դէպ 'ի արեւելս . որուն մասն է Աճա պուրուն :
ԺԳ. Կարապուրունն շիտակ : ԺԴ. Աշտօղ սար դէպ 'ի
հիւսիս արեւելս : ԺԵ. Արմէնէ պուրուն դէպ 'ի հիւ-
սիս : ԺԶ. Պաֆրայ քիթ դէպ 'ի հիւսիս : ԺԷ. Աթօֆօ
պուրուն դէպ 'ի հարաւ : ԺԸ. Սօղուճակ պուրուն դէպ
'ի հարաւ : ԺԹ. Թաւզլըթ պուրուն դէպ 'ի հարաւ :
Ի. Ճէռլէյիթա և Աքէնխանլըմանը դէպ 'ի հարաւ . որ կը
ձեւացնեն Պէֆֆէի ծոցն իրարու դէմ ըլլալով : ԻԱ.
Մէնէնոյ քիթ Սուտաղի դէպ 'ի հարաւ : ԻԲ. Սայա
սար դէպ 'ի արեւելս : ԻԳ. Փէլէնկ պուրուն դէպ 'ի
արեւմուտք : ԻԴ. Օջէյլան պուրուն դէպ 'ի հարաւ :
ԻԵ. Փօտօղ կամ Իսէ պօղ պուրունաւն դէպ 'ի արեւմուտք :
ԻԶ. Պուլ պուրունաւն դէպ 'ի արեւմուտք : ԻԷ. Պալապան
պուրուն դէպ 'ի հարաւ : ԻԸ. Խըրքէլէք պուրուն դէպ 'ի
հարաւ : ԻԹ. Հարամէ պուրուն դէպ 'ի հարաւ : Լ.
Ռապըլ պուրուն դէպ 'ի արեւելս : ԼԱ. Սէնչէրէ սար
դէպ 'ի հարաւ : ԼԲ. Սօրէօք, և Պուլըն պուրուն վարա-
նայի : ԼԳ. Իռմնէ պուրուն դէպ 'ի արեւելս : ԼԴ. Սալ-
թան պուրուն դէպ 'ի արեւելս : ԼԵ. Ինօրա պուրուն դէպ
'ի հարաւ : ԼԶ. Սալաքըր պուրուն դէպ 'ի հիւսիս : ԼԷ.
Կարապուրունն դէպ 'ի հիւսիս . որ է դիմացն ամրայն
կողմն զարդապուտնանց (42) :

## Թ. ՆԱՒԱՀԱՆԳԻՍՏ .

24. Աս ծովուն մէջ շատ տեղ կայ, որ նաւահան-
գիստ կամ լիման կըսուի . բայց ձմեռելու տեղը քիչ
է . զի ֆենեռւեն օգնել մինչեւ Էրեկլի չի կայ լաւ
նաւահանգիստ : Ամաստրայի նաւահանգիստն լաւ է,
բայց այնչափ ապահով չէ :

Աքլիմանին նաւահանգիստն իբր բնական դուռ
ունենալով Ինճէ սարը, ամենէն ապահով է . թէպէտ
շատ ընդարձակ չէ : Իսկ Սինոպին նաւահանգիստն
ընդարձակ և պատուական ըլլալով հին ատենէն 'ի

վեր անուանի է և նաւ շինելու տեղ ունի հռոմէյե-ցւոցմէն շինուած (73)։

Նմանապէս Անքոնայի նաւահանգիստը մեծ գործ ունենալով իրեք տեղ ապահովապէս նաւ կըկենայ. նոյնպէս Փլադամնայի և Մանֆրեդոնէին նաւահանգիստները մեծ գործ ունենալով շատ ապահով են։ Հին ատենը Տրապիզոնին նաւահանգիստը երբոր շինուած էր, աւելի ապահով էր. բայց հիմա աւրած է (105)։

Արևելեան կողմն սև ծովուն նաւահանգիստը պակաս ըլլալով, նաև ծածկած քարաքներ կային հին ատենը. ինչպէս Պաթում, Փաշ, և այլն. թէպէտ հիմա Փաշի գետին բերանը ծանծաղ ըլլալով նաւ ներս չի կրնայ մտնել։ Նոյնպէս և այլ կողմերը. ուր թէպէտ նաւ կենալու տեղը շատ է, բայց ապահով չեն։ Ասպաղայի կողմը Սօխումի, Պուճունտայի, և Կէլէնճիկի նաւահանգիստներն շատ աղէկ են։ Հիւսիսային կողմը Պոնտոսի ապահով նաւահանգիստ աւելի կայ Եւրոպիոյ տեղերուն համար. ինչպէս Պալըգլաւա, Սևաստապոլ. և այլն։ Մեռած ծովն անցնելէն ետև Օզուի և Ագերմանի նաւահանգիստները, նաև հիմա Օտեսայի նաւահանգիստը՝ աւելի ապահով են։

Դունայի բերանը վտանգաւոր և ծանծաղ տեղերը պակաս չեն. բայց գետէն ներս լաւ նաւահանգիստներ են։ Իսկ Պալապանէն անդին, Կէլէզրէ՝ Պալճըգ՝ Սոտա և Պուրղազ՝ շատ ապահով են։ Նաև մինչև Ստամպօլ նաւ կենալու տեղեր կան, որ ընդամենայն քառասուն նաւահանգիստ կըլլան. ինչպէս իւրաքանչիւրն իր տեղը կը պատմենք։

Ժ. ՀՈՂՄՈՒՆՔ։

25. Գլխաւոր տիրող հովերը պոնտոսի՝ են արևելեան և արևմտեան. առջինը այնչափ վնաս չի բերեր. բայց եթէ չափազանց ըլլալով սաստիկ խռովէ ծովը։ Իսկ արևմտեան հովը շատ վտանգաւոր է, և աւելի խռովելով մեծ ալէկոծութիւն կը հանէ։

Երբեմն երբեմն հիւսիսային հողմն ալ ալեկոծու-թիւն կը հանէ. մանաւանդ երբ է արեւմտեան հիւ-սիս (Կարաեել) ։ Նոյնպէս հարաւային հովը. մա-նաւանդ ձմռուան մօտ յանկարծ խռովելով ծովը մեծ ալեկոծութիւն կը հանէ, թէպէտ շատ չի տեւէ. Իսկ որովհետեւ ձմռան աւելի արեւմտեան եւ հիւսի-սային հովը կը տիրէ՝ սեւ ծով կըլլայ աննաւարկելի. եւ երբեմն հարիւրաւոր միղոն կը սառի. ինչպէս եղաւ Միհրդատին եւ Կոստանդինոս թագաւորին ատենը. եւ շատ անգամ ալ պատահած է. մանաւանդ հիւսի-սի կողմն. որուն վրայ ասանկ կըսէ Ովիդիոս բանաս-տեղծ.

* Ծով սառնամած ձուլեալ պաղի,
Ձուկն 'ի յանդունդ բանտեալ գերի,
Յարկածածուկ 'ի ջուր լուղի ॥ ։
Պոնտ. Գ. 1.

26. Աւստի այս ծովն ունի պարբերական հովեր. որ մեծ ալեկոծութիւններ կը հանեն, գրեթէ ամէն տարի միակերպ ։ Զորօրինակ՝ Ա. Հիւսիւմ Փօրթընա-սը 'ի 25 փետր. որ է պառավուցուրտ ։ Բ. Մարտ փօ-գօուլէ որ է գարնանամուտ ։ Գ. Չայըր Փօրթընասը 'ի 15 ապր. որ է անկատեղ ։ Դ. Խտրէլէզ 'ի 23 ապր ։ Ե. Չարք ... 'ի 9 յունիսի, որ է արեւադարձ ։ Զ. Մէրսէնէ գօրաս 'ի 10 սեպտ. որ է աշնանամուտ ։ Է. Պալըգ ... 'ի 25 սեպտ ։ Ը. Պոզուշ ... 'ի վերջ սեպտ ։ Թ. Պուլըթ Փօրթընասը 'ի 2 հոկ ։ Ժ. Պօզ գաթըլը 'ի 18 հոկ ։ ԺԱ. Պաալը 'ի 26 հոկ ։ ԺԲ. Խաչ ... , երբ Բազուկ համաստեղութիւնն կե-րեւի 'ի 18 նոյ ։ ԺԳ. Խոտրաք ... ընթռնաղ 'ի 23 նոյ ։ ԺԴ. Աքրանքէմ ... 'ի 9 դեկ. որ է արեւադարձ (Գարագըշ) ։

Ասոնք են հաստատ հովերն, որ նոյն ատեններն պա-տահելով ալեկոծութիւն կը հանեն. թէպէտ ռա-միկները այսպիսի բնական բաներով որոշեր են հովե-րուն ժամանակը. որպէս զի զգուշանալով ծով չելլեն նաւերը ։ Իսկ նաւավարները հովին ելլելը ամպերէն կիմանան, որ բեռնաւորած եւ պղտոր կերեւնան նոյն

եզերքին վրայ ։ Այնպէս երբոր Թռչուն կիջնի նաւուն մէջ՝ նշան է թէ օդը պիտի աւրի, որ կենդանին ապահով տեղ կը փընտռէ. անոր համար նաւավարներն աղէկ չեն սեպեր ։

## ԺԱ. ՏԷՐՈՒԹԻՒՆ ։

27. Պոնտոսի թագաւորութիւնը շատ հին է. առջի տիրող ազգը Արքենաքոիա կըսուէր. որ կը նշանակէ առաջին գլուխ ։ Ըստ Դիոդորոսի ասոնք սեւ ծովուն բերանը կը տիրէին 2355 տարի առաջ. կերեւնայ թէ անկէ առաջ կարգաւորեալ թագաւոր չէկար ։

Այս տէրութիւն քառասուներկու տարի տեւեց. որուն յաջորդեց Սպարտաքոս. որ եղաւ ա՛ թագաւոր Պոնտոսի ։ Ասոր տէրութիւնն ութ հարիւր տարի տեւեց մինչեւ մեծն Կոստանդիանոս. ինչպէս այն ժամանակուան կորած ստակներուն գրերէն և թուերէն կիմացուի ։

28. Սակայն այս տէրութիւն Միհրդատէն առաջ աւրած ըլլալով 170. տարի անթագաւոր մնաց. իսկ մեծն Միհրդատ, որ ըստ Պոլիբիոսի, էր բնիկ պոնտացի կամ սինոպցի՝ թագաւորական ցեղէ յաջորդութեամբ եկած, եղաւ քեռայր Տիգրան թագաւորին Հայոց, և երկրորդ արքային. նաև ինքնագլուխ թագաւոր Պոնտոսի ։

Հին պատմիչները կըսեն թէ երբոր թագաւոր եղաւ տասուերկու տարուան էր. յիսունըմէկ տարի թագաւորեց. քսանուերկու լեզու գիտէր. որ միշտ յաղթող ըլլալով այնչափ մեծցուց և փառաւորեց Պոնտոսի տէրութիւնն իր երեւելի գործքերով, մինչեւ Վոսփորոսին, կամ Սամփոլու նեղուցին ալ տիրելով խառնեց մեծ տէրութիւն ըրաւ ։ Զարմանալի նաւեր և հազարաւոր մեքենաներ հնարեր էր. նաւերուն մէջէն մեքենայով աշտարակ և թռուցիկ կամուրջ կը նետէր բերդերուն և պարիսպներուն վրայ. այն կամուրջներուն մէջէն զէնքով մարդիկ զօրք կելլէին կը ծեծկըռէին ։

Պոնտոսի տէրութեան տիրելու համար Հռոմայե-
ցիք վարպետութեամբ և Միհրդատայ որդւոյն Փառ-
նակայ մատնութեամբն պիտի բռնէին անպարտելի
քաջը. ուստի ինքնիրեն թոյն առաւ. բայց թոյնը չի
ներգործելով, սրով մեռաւ. Թէպէտ Խորենացին
կըսէ թէ Պիղատոսի հայրն սպանեց զինքը, թերևս
Միհրդատին կամքովը, յամի աշխարհի 3941։

Արծաթ դրամին մէկ կողմը տպած է իր դէմքը
փառաւոր կորիձ անմօրուք. մէկալ կողմը եղնիկ
(Կէյիկ). առաջը լուսին. ետին եռանկիւն գիրն
Տեյա. Թագաւոր Միհրդատ, գրած է յունարէն։

29. Անոր որդին նստաւ իր տեղը Սինոպ. դրամին
մէկ կողմն է դէմքը. մէկալ կողմը Ապողոն չա-
տուած՝ յոյն գրով իր անունը գրած։ Այս Միհր-
դատի թոռն Ագրիպպինոս առաւ տէրութիւնն, որ
կը պարծէր թէ անոր ցեղէն եմ. բայց Պոնտացիք
չընդունելով մեռուցին։ Տես տախտակ ա̄։

Թագաւորանիստ քաղաքը կըսուէր Ամիսոս. որ
Սորաքոնի անունը չի կար։ Ոմանք կը յիշեն Եւպա-
տորիա քաղաք Միհրդատէն շինած, զի առաջ Մի-
հրդատ Եւպատոր կըսուէր, որ հօրամօրն կամ դի-
ցազուն ըսել է. յոյները տուին այս անունը Միհր-
դատին, որոնք կայսերաց ալ այս մականունը կու-
տային. ուստի իր անունն այս քաղաքին դնելով ըրաւ
թագաւորական քաղաք, և խառնեց Ամիսոս քաղա-
քին հետ. որ պիտի ըլլայ Սամսոնի քով (80). Թէ-
պէտ ոմանք Ղրիմի կողմը կը դնեն. կարելի է թէ
համալ շինեց Պաղչէսէրային մէջ Ղրիմէն առած տուր-
քովն. ինչպէս կըսեն (218)։ Յետոյ այս տէրութիւն
երկուս բաժնըւեցաւ, Եւրոպական և Ասիական։
Եւրոպական մայրաքաղաքն էր Փանտիգաբէ, թե-
րևս Ղրիմի կողմն էր (186). և ասիականն էր Ֆանա-
գօր, որ կերևնայ թէ հին Ամիսոս քաղաքին տեղը
շիներ էին։ Հնախօսները կըսեն թէ այս քաղաքին
նիստն էր արևելից կողմանէ նեղուցին. բնակիչնե-
րը Միհրդատէն ետև ազատ կոչուեցան Պոլեմոնէն։

## ԺԲ. ՆՇԱՆ։

30. Այն ատենը պատմական թագաւորները զա-նազան նշաններ ունէին. ինչպէս հին սակեներէն որոշեցինք։ Նոյնք հասարակօրէն իրենց նշանին մէկ կողմը կուսակերպ պատկերը կը դնէին, մէկալ կող-մը ծովու նշաններ, նաւ, երկաթ, և այլն։ Օրի-օրինակ Հերակլիայի տէրութեան դրամին վրան էր Պո-սիդոն չաստուած ծովու՝ ձեռքը դելֆին ձուկն (49)։
Նոյնպէս Տրապիզոնի տէրութեան սակին մէկ կողմն է Ապողոն չաստուածին գլուխը. մէկալ կող-մը նաւի երկաթ (105)։ Սօրօմաց պատմական թագա-ւորին սակուն վրայ պատկ կայ յոյն գրով. իսկ մեծին Միհրդատայ դրամին մէկ կողմն է իր դէմքը. մէ-կալ կողմը եղնիկ, լուսին։ Նոր որդւոյն սակին մէկ կողմն է իր դէմքը. մէկալ կողմը Ապողոն չաս-տուած, ինչպէս ըսինք։

31. Իսկ կոմնենոս թագաւորներուն նշանները և դրամները ուրիշ կերպ էին. վասնզի Աղեքսիոս Կոմ-նենոսին նշանն էր բոլորակ մէջը լատինի գիր L. S. մէջտեղը խաչ կախված։ Յոհաննէս Վատացաթոսին՝ նոյնպէս բոլորակ՝ վրան թագ փետրազարդ, մէջը կա-մու գլուխ՝ բերնին տակը աշխարհ խոտաւէտ, գըլ-խուն վրայ աստղ, և անոր վրան թագ խաչով։ Իսկ Յոհաննէս Ստեփաննոսին նշանն էր բոլորակ՝ վրան թագ փետրազարդ, մէջը մէկ գլխով արծիւ աշխար-հիս վրայ կեցած. բերանը խաչ, մէկ դին աստղ, մէ-կալ դին լուսին։

## ԺԳ. ԲԱԺԱՆՈՒՄՆ։

32. Այն ժամանակը երկուս կը բաժնըւէր Սե-ծով. ասիական և եւրոպական. յետոյ Սկիւթացի թաթարաց ատենը զանազան մասն եղաւ. Պոնտոս ուրիշ տէրութիւն էր. Ապազա, Խրիմ, և Թիրակիա

ուրիշ առանձին տէրութիւն եղան։ Հիմա նաւավարները կերպ կերպ կը բաժնեն սև ծովը՝ երևելի տեղերէն չափ դնելով։ Ոմանք ալ սարերը կամ քթերը սահման դնելով կորոշեն։ Բայց մենք որովհետև սև ծովուն ամէն քաղաքները՝ գօտերը, և սարերը պիտի նշանենք. նաև Ազախու ծովուն վրան ալ պիտի գըրենք, պէտք եղաւ որ գլխաւոր սարերէն և մեծ քաղաքներէն սկսելով սահման դնենք, և բաժնենք այսպէս։

33. Առաջին մասն սև ծովու կըսկըսի Անատօլ գավառէն կամ Փէնէաէն, և կը հասնի Սինոբ, կամ Սինապ։ Երկրորդ մասն է սինապէն մինչև Իօռօզ, կամ Տրապիզոն։ Երրորդ մասն է տրապիզոնէն մինչև Փարշ։ Չորրորդ մասն է Փարշէն մինչև Թագ-լըթ պօղազի։ Հինգերորդ մասն է Թագըլըթէն մինչև Քէֆէ՝ հանդերձ Ազախու ծովով։ Վեցերորդ մասն է քէֆէէն մինչև Դունա։ Եօթներորդ մասն է դունայէն մինչև Փէնէա, կամ մինչև Բուլէկի գավառը։ Այս երևելի տեղերուն աշխարհագրական լայնութիւններն և երկայնութիւններն կը նշանենք նոր դրութեամբ։

Եւ այսպէս կարգաւ կըսկըսինք սև ծովուն պատմութիւնն կամ շրջագրութիւնն ամէն քաղաք հին և նոր, և ամէն նաւահանգիստ, գետ, և սարեր հանդերձ հին բերդերով, կըստորագրենք հիմնական անուններովն՝ թէ այս աշխարհագրութեան մէջ, և թէ աշխարհացուցին վրայ համառօտ՝ տաճկի անուններով, ինչպէս որ կը տեսնէք։ Բայց պէտք է գիտնալ, թէ աշխարհացուցին վրայի մղոններն են աշխարհագրական. զի ամէն մէկ աստիճան վաթսուն մղոն է. և աշխարհագրական մղոնը տաճկի մղոնէն մեծ է, ինչպէս կերևնայ. մենք տաճկական մղոնով կը բացատրենք տեղերուն հեռաւորութիւնը (14-15)։ Նաև քթերը և գետերը որոշ և յայտնի ըլլալու համար, համեմատութիւնը չենք պահեր քիչ մի մեծ կը քաշենք աշխարհացուցին վրա։

Արդ՝ նախ դնենք կարգաւ պոնտոսի թագաւորաց անուններն ա̅ տախտակին վրա. որոնք առաջ կը

նստէին Եւրոպայի կողմն Վօսփօրոսի. և ապա նստան Ասիայի կողմն Սինոպ քաղաք։ Երկրորդ դնենք Կոմնենոս Թագաւորաց անունները, որոնք կը նստէին Տրապիզոն։ Երրորդ դնենք Օրխանոսին ըրած շըր-ջագրութիւնն, որ պոնտոսի ամէն տեղերը նշաներ է. և սկսեալ Ստամպօլու նեղուցէն կը հասնի Տրա-պիզոն, անկէ Դիոսկուրիա քաղաքն ապաղայի. ան-կէ Թագլրիթի բերանը, և անկէ Ստամպօլ։ Սակայն շատ տեղեր կը յիշէ, որ հիմա նշանը չի կայ. շատ տեղերուն և ազգերուն անունները ալ փոխւեր են. Մենք որչափ որ գտանք որոշեցինք տեղերուն քովն՝ հանդերձ Թուանշանով։ Տես Գ̃. տախտակ։

## Ա. ՑԱՒՑԱԿ.

### Թագաւորք Պոնտոսի և Բոսփորոսի:

Սպարտակոս Ա. յամի Հռովմայ իբր 309 թագաւորեց 7 տարի:
Սելևկիոս թագաւորեց 4 տարի:
Սպարտակոս Բ. թագաւորեց 20 տարի:
Սաթիրոս թագաւորեց 14 տարի:
Լևկոն թագաւորեց 40 տարի:
Սպարտակոս Գ. թագաւորեց 5 տարի:
Պերիզադ Ա, որուն ոսկին կայ, թագաւորեց 38 տարի:
Եւմելոս թագաւորեց 5 տարի:
Սպարտակոս Դ. թագաւորեց 20 տարի:
Անկէց ետև 170 տարի առանց թագաւորի մնաց:

Յետոյ

Պերիզադ Բ. թագաւորութիւնը տվաւ Միհրդատին:
Մեծն Միհրդատ թագաւոր եղաւ Բոսփորոսի յամի Հռովմայ 639 յառաջ քան զՔս 115 տարի, թագաւորեց 52 տարի: Տեսանք ոսկի և արծաթ դրամները:
Փառնակ որդին Միհրդատայ՝ 63 տարի քնէ առաջ՝ թագաւորեց 15 տարի:
Ասանդր՝ 48 տարի քնէ առաջ թագաւորեց 33 տարի. կայ ոսկին:
Ագրիպոնիոս 14 տարի քնէ առաջ թագաւորեց:
Պոլեմոն Ա 12 տարի քնէ առաջ թագաւորեց. կայ ոսկին. և յունարէն գրուած մի դրամն ասոր վրայ:
Սորոմադ Ա. կայ ոսկին յոյն գրով և վրան պսակ:
Ռեսքուպորիս Ա. կայ ոսկին:
Պոլեմոն Բ յամի Տն 38 թագաւորեց 26 տարի. կայ դրամն:
Միհրդատ Բ յամի Տն 42 որ է առաջինին ցեղէն, որ մեռուցին:

Կոտիս Ա. յամի տեառն 49. կայ ոսկին ։
Ռեսքուպորիս Ա. յամի 83. կայ ոսկին իր դեմքովը ։
Սաւրոմատ Ա. կայ ոսկին կտրած յամի Հռ. 870 ։
Կոտիս Բ. կայ ոսկին կտրած յամի Հռ. 884 ։
Ռեմետալքէս յամի տն 132 ։
Եւպատոր. կայ ոսկին կտրած յամի Հռ. 910 ։
Սաւրոմատ Բ. կայ ոսկին կտրած յամի Հռ. 934 ։
Ռեսքուպորիս Բ. կայ ոսկին կտրած յամի Հռ. 968 ։
Կոտիս Գ. կայ արծաթը կտրած յամի Հռ. 986 ։
Ինինդիմէոս. կայ արծաթ դրամը կտրած յամի Հռ. 988 ։
Ռեսքուպորիս Գ. կայ դրամը կտրած յամի Հռ. 995 ։
Կէիրանէս. կայ դրամը կտրած յամի Հռ. 1029 ։
Կոտորսէս. կայ դրամը կտրած յամի Հռ. 1050 ։
Սաւրոմատ Գ ։
Սաւրոմատ Դ ։
Ռեսքուպորիս Դ. կայ դրամը կտրած յամի Հռ. 1073 ։
Սաւրոմատ Ե. կայ դրամը ։

Այս թագաւորին ժամանակը մեծն Կոստանդիանոս եկաւ Ստամպօլ շինեց, զօրացուց, և աթոռը հոն փոխադրելով թագաւորական քաղաք ըրաւ ։ Ասոր անկէ ետև Վոսփորոսեան պոնտոսի թագաւորութիւնը վերցաւ, և Սաւրոմատ եղաւ վերջինը. միայն Ստամպօլ նստօղ կայսերքը կը տիրէին ամէն տեղաց պոնտոսի մինչև Կոմնենոսներուն ժամանակը. որ յամի տն 1063. Իսահակ Կոմնենոս թագաւոր եղաւ Տրապիզոնի. իսկ Յովհաննէս Պերփեաուժենին ատենը երբոր Կոնծաւ տրապիզոնցին թագաւոր եղաւ լազիստանու՝ անկէ ետև ինքնագլուխ եղան. և Մէհմէտին օրը կայսրը ընկեցան պոնտոսի Կոմնենոս թագաւորները (109) ։

## Գ. ՑԱԽՑԱԿ.

### Կոմնենոս Ընտանւոյն Տրապիզոնի :

Յամի Քն

1063. Իսահակ կոմնենոս, և Մանուէլ:
1119. Իսահակ, Յոհաննէս, և Աղեքսիոս:
1144. Յոհաննէս, և Իսահակ կայսր:
1182. Մանուէլ Պերփիւռուժէն:
1183. Աղեքսիոս:
1186. Անդրոնիկոս, և Նիկոփորոս:
1195. Իսահակ Անկելոս:
1204. Աղեքսիոս, և Մանուէլ:
1205. Մինաս, և Աղեքսիոս:
1240. Աղեքսիոս մեղաս կոմնենոս:
1247. Յոհաննէս:
1257. Նիկողայոս:
1280. Անդրիանոս, և Միքայէլ:
1295. Յոհաննէս, և Միքայէլ Վասիլէոս:
1321. Աղեքսիոս:
1335. Վասիլէոս:
1339. Միքայէլ:
1385. Աղեքսիոս:
1395. Մանուէլ, և Վասիլ:
1407. Անդրոնիկոս:
1436. Աղեքսիոս:
1456. Յոհաննէս:
1460. Դաւիթ վերջին թագաւոր. որ բռնեց Սուլ. Մէհէմմէտ և մեռացուց (111):

# ՇՐՋԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՊՈՆՏՈՍԻ

34. [redacted]ՆԱԽՕՍՆԵՐԸ կը գրեն թէ Ադամանդեւոյ կինը Թեսալիոյ թագուհին նախանձելով խորթ զաւակացը՝ կուռքէն պատգամ հանել տալու, որ ուխտ երթան Պոնտոս կողքիսաց աշխարհը. ուր է Ապազա կամ Մինկրէլ (152). որոնց թագաւորն էր Այեղաս. թէ որ չերթան՝ գետինը կը չորնայ, բան չի բուսնիր կըսէր պատգամը։ Ասոնք Քրիստոսի կողմէն ելած 3055 տարի առաջ՝ հասան մարմառա ծովը. ուր Հելլէս անուամբ քոյրը ծովն ընկաւ խեղդըվեցաւ, և ծովը Հելլեսպոնտոս կոչվեցաւ. այսինքն Հելլեսի ծով. որ է Կելիպոլուի բերանը։

35. Իսկ Փրիքսոս եղբայրը հասաւ ստամբօլու նեղուցը, և տասներկու կարգ տաճար մի շինեց Նօռօղ բերդին մէջ (38)։ Ապա Փէնէքէն ելաւ հասաւ անցաւ Կողքիս. և գնաց Հերմեսի կառատունը խոյ մի զոհ ըրաւ. որուն մաշկերը ոսկիով պատեց ու կախեց կառատանը մէջ, որ կոչվեցաւ Ոսկէգեղմն (152)։

36. Բայց յունաստանի՝ Պեղիաս թագաւորին եղբօրորդին Յասոն քաջ երիտասարդը տասնըմէկ տարիէն ետև ուզեց երթալ այն ոսկեգեղմն առնել Պեղիասին խորհրդովը. ուստի Արգոն անուամբ ճարտարապետին անանկ մեծ և փառաւոր նաւ մի շինել տուաւ, որ չէր տեսված. և կոչեցաւ Արգոնաւ։ Շատ տեղէ կտրիճներ հոն գնացին Յասոնի ընկեր ըլլալու համար. յիսունըչորս հոգի միայն առաւ հետը ու ծով մտաւ. հասան Կողքիսոն. որոնց գլխաւորն

էր քաղքն Հերակլէս։ Տես Ճեմ. 685։ Երդ՝ հին նաւերուն ձեւին նայելով և ջրին ընթացքը դիտելով յայտնի կերեւնայ թէ ասոնք, և առջի գնացողները Փէնէրէն որ ելան՝ ասիայի կողմէն սկսան առաջ երթալ։ Ահա մենք ալ այս ընթացքով առաջ երթալով կըսկըսինք պատմել շրջապատը սև ծովուն։

Ասոր այժմեան բնակիչներն են՝ Ա Հոռոմ. Բ Հայ. Գ Տաճիկ. Դ Խաղտիք, կամ Լազք. Ե Վրացի. Զ Մկրէլ, կամ Կողքիսացիք. Է Աբազա. Ը Չէրքէզ. Թ Ղրիմի Թաթար. Ժ Նօղայի. ԺԱ Խազախ. ԺԲ Մոսկով. ԺԳ Պուճաղ Թաթար. ԺԴ Պուլղար. ԺԵ Հրէայ։

## Ա. ՄԱՍՆ ՍԵՒ ԾՈՎՈՒ։

37. Սեւ ծովուն առջի մասն ասիայի կողմէն կըսկըսի, որուն ծայրն է Անատօլ Փէնէրին. սակայն առջի բերդը կը սեպուի Պօղազ հիսար, կամ Անատօլ գավաղի նեղուցին մէջ. ուր առաջ մեծամեծ բարտի (Գավագ) ծառեր ըլլալով Գավագ ըսվեցաւ. և է իբր սահմանագլուխ սև ծովուն, և Բիւզանդիային. որ շինեց Սուլ. Մուրատ 1623 ին։

38. Լեռանը վրայ կայ հին բերդ կռապաշտութեանէ մնացած Հօրուս կամ Հօռօզ. որ հին ատենը կըվէր Հիէրօս. այսինքն սրբազան. ուր կար Դիոսի տաճարն, որ Արիան և հայր հողմոց կըսէին։ Այս կռատուն Փրիքսոս շինեց և տասներկու կռոց պաշտօնի տեղ ըրաւ. երբոր Ապաղայէն դարձաւ շնորհակալութեան զոհ ըրաւ հոն (35)։

Ինչպէս Արգոնաւորդք հոն պաշտօն մատուցին թէ՛ երթալը և թէ դառնալը։ Անկէ ետև սովորութիւն եղաւ, որ՝ սև ծովէն եկող գնացողները հոն զոհ կընէին. ինչպէս կը պատմեն Հերոդոտոս և Կիկերոն։ Այս բերդին հնութիւնը դրքէն և շէնքէն յայտնի է. տեղ տեղ հին քարեր տեսանք։ Պատին վրա խաչեր ալ կերևնան, որ կոստանդիանոսի ատենը դրած են։

Հին ժամանակը Բիւզանդացիք այս տեղէն մինչև դիմաց շղթայ (Զէնճիր) կապեցին, որ թշնամինե-րուն նաւերը ներս չի մտնեն : Այս լեռան մօտն է Յուշէ տաղի. ուր կայ մեծ գերեզման Հսկայի՝ ուխտա-տեղի տաճկաց : Կ՚ըսուի թէ հոս հին ատենը կռատուն կար. որ նաւերը սև ծովէն տեսնելով երկրպագու-թիւն կընէին. ինչպէս գրեթէ սև ծովու ամէն բարձր լեռներուն վրա ուխտատեղիք տեսանք : Ալէմ տաղին վրան ալ կերևնայ հին աւերակ. կարելի է, թէ Մալթեփէին վրան ալ ըլլար ուխտատեղի. վասն զի սև ծովէն գալով նախ որոշեցինք Գանտալա տա-ղին, ապա Մալթեփէ, և Ալէմ տաղին. հուսկ յետոյ Յուշէ տաղին :

39. Սև ծովուն բերանը շատ երևելի կռատուն-ներ կային առաջ. զի Պոնտոսի դուռը Պոսփորոն չաս-տուածին ձեռքն է կըսէին, բայլիքները ինքը կըպա-հէ, և Վիզաս որդին այս քաղաքս շիներ է. փոխանակ ըսելու թէ Վիզաս իշխանը նախ և առաջ շինեց Բիւ-զանդիոն կամ Ստամպօլ. ուր կար տաճար Պոսիդո-նի, իբր պահպանին ծովու. ինչպէս կը պատմէ Դիո-դորոս : Անորհամար երբոր Միհրդատ Բիւթանիայի վրան գնաց՝ նախ պաշտօն ըրաւ. և երկու ձերմակ ձի ծովը նետեց 'ի պատիւ Պոսիդոնի : Տես ձեմ. 631 :

40. Այս բերդէն ետև կուգայ երկրորդ բերդ՝ Ֆիլ պուռնու Սուլ. Մուստաֆայէն շինած : Յետոյ երրորդ բերդ՝ Փօյրազ լիմանի : Վերջը կուգայ չորրորդ բերդ՝ Անատօլ Ֆէնէրի. որ է զօրաւոր բերդ նեղու-ցին ծայրը, կամ սև ծովուն բերանը : Նոյնպէս եւ-րոպայի կողմն ալ կան այսպիսի բերդեր դիմացէ դի-մաց (271) :

Այս նեղուցս կըսուի Վօսփօրոս. այսինքն անցք կովու. զի Ինաքայ աղջիկը կովու կերպարանք փոխուելով ան-ցաւ ասկէց դիմացէ դիմաց 3400. կամ 3600 տարի ա-ռաջ ըստ Եւսեբիոսի : Նախնիք հասարակօրէն այս նեղուցը կը կոչեն Վօսփօրոս Թրակիոյ. և Ազախու նեղուցը՝ Վօսփօրոս Կիմերիան :

41. Արդ՝ ասիական Փէնէրէն ելլելով իրեք մղոն

անդին կուգայ Սուէճա հինգերորդ բերդ. որ է վեր-ջի բերդ նեղուցին հաստատ. ուր կան բնակութիւնք տաճկաց, և գետ Սուէճա անուամբ, որ կուգայ Սուլ. Սիւլէյման քէօշկիւէն. որ է նեղուցին կողմը։

Պուրտուիէրէզ գետը մօտ է հոս. որուն բերանը փոքր նաւեր կրնան կենալ։ Արրիանոս այս տեղս տասնըն-մէկ մղոն հեռու կը դնէ վերջի բերդէն։ Արևելքէն գալով հոս կերևնայ իբր բերան նեղուցին. ասկէց երբեմն նաւերը խաբվելով կիյնին Շիլէ։

42. ԿԱՐԱՊՈՒՌՈՒՆ. պօնտոսի ասիական մասին առջի քիթն է. որուն դիմացն եւրոպայի կողմն ալ կայ Կարապուռուն. ուսկից կըսկըսի աւազուտն։ Այս քիթ տասնըութ մղոն հեռու է Փէնէռէն. որ չունի ծոց և նաւահանգիստ. ոմանք հոս Մէլէնա գայօ կանուանեն. և ասկէց կըսկըսի Աքչէ գումլար ա-սիական աւազուտն, որ է դեղնագոյն աւազ ծովուն եզերքը՝ նման եւրոպայի կողմի դեղին աւազուտին. բայց անոր չափ լայն ընդարձակ չէ (267). որ եօթը մասն կորոշի երկայն, և կը հասնի մինչև Շիլէ. ինչպէս տեսանք։

43. ՇԻԼԷ. ըստ յն. ԽԷԼԷ. այսինքն պըռ-կունք՝ տասնըութ մղոն աստին Տրապիզոնի կողմն է, որ է աւան՝ երսունըմէկ մղոն հեռու Փէնէռէն. ուր կան յոյն և տաճիկ։ Ունի նաւահանգիստ. շատ ան-գամ նաւերը մոլորելով կուգան հոս կիյնին կը խոր-տակին. ուր մօտ է Պօշկաչա քիթ և բերդ։

Աղվա կամ Աքօվա գետն հոս մօտ է դէպ ՚ի արևելք։ Արրիանոս Կարապուռունէն վար կը յիշէ Արտանէս գետն. ուր փոքր նաւեր կրնան կենալ կըսէ. որուն մօտն էր Ափրոդիտեայ տաճարը. ուր հին ատենը կըպաշտէին այս կուռքը։ Այս կողմի լեռները ցած ըլլալով գեղեցիկ կերևնայ դիրքը. նոյնպէս ծովը ծանծաղ է. ուր երևելի բան չի տեսանք։

44. ԿԷՐՓԷ. ըստ յն. Կալբէ. այսինքն փոքրիկ շիւղ. վաթսուն մղոն հեռու է Շիլէէն. ունի խա-նութ, և գետը վերն է։ Նաւահանգիստն անյարմար է ձմեռուան. թէպէտ ամառը նաւ կը կենայ։ Ար-րիանոս հոս կը յիշէ Ռոյէ գետը։

45. ԱՐԷՓԿԷՆ. ըստ յն. Գոռքէյաոս. այսինքն քարոտ. չորս մղոն առջևն ըլլալով հարիւր մղոն հեռու է Փէնէռէն. ունի սար, և ծոցն է նաւահանգիստ երկու մղոն լայն. բայց անյաջող է, և տարին առաջը քարեր կան. անոր համար Արէփկէն ըսուեցաւ. գեղը մէկ ժամ վերն է։ Արէփկէնու վրան կեցնի Գոմոռոս երևելի լեռն՝ որ ունի երեք գլուխ. և է նշան նաւավարաց. որով կիմանան նեղուցին մօտ ըլլալը։ Ծովեզերքէն երեք մղոն բացը փոքր կղզի մի կայ սեղանաձև. շրջապատն է երեք մղոն մանր ծառերով լեցուն։ Ուր կայ հին բերդ և եկեղեցի. նաև իննըսունըինը ջրհոր, ըստ որում պատմեցին. ասկէց կերևնայ թէ հոս առաջ շատ բնակութիւն կար. նաև հոս էր Ապաղոն չաստուածին կռատունն՝ ըստ Արր'։ Տես. տախ. Ա։

46. ՏԷՆԻԶ ՔԷՕՅԻ. երսուն մղոն հեռու է. ուր կայ բնակութիւն. բայց երկիրը ցած ըլլալով երբեմն ջուր կը կոխէ։ Կ՚ըսուի թէ Տէնիզ թագաւորն հոս պալատ կամ ամարանոց շիներ էր հին ատենը, և անոր անուամբը կը յիշվի (50)։

Սագարիա, կամ Զագարի. և ըստ յն. Զագարիոս. (Թերևս 'ի ձայնէ Զաքարիա, որ է սրընթաց կամ գրոհ տուող. Սուրըլըձի), է գետ մեծ. որ կելլէ Գաղատիայի լեռներէն. և խոտորնակի պտըտելով ընդ Փռիւգիա, և ընդ Բիւթանիա կուգայ Տէնիզ քէօյին մօտ Պոնտոս կը թափի։ Հին ստակը կամ դրամը գտան. վրան գրած՝ ΣΑΓΑΡΙΣ. որ ըստ հնախօսից է անուն Սանկարիտ օրիորդին։ Այս գետին մէջ չափաւոր նաւեր կը մտնեն, ինչպէս կը վկայէ նաև Ստրաբոն. որուն քով հին ժամանակը տաճար կար Մ՚օրն աստուածոց. և մեծ ուխտատեղի էր կռապաշտից։ Հոս ալրեց Մ՚իհրդատ հռոմայեցոց բանակը. ուր մօտ է Գորտաւ կամ Գորտապատին փոքր գետն. ըստ հն. Մ՚էլէն։

Սագարիայի գետին մօտ վերը մեծ քարաշէն կամուրջ մի կայ. որ կըսուի Պաշքոփ քէօփրիւսի (21)։ Այլ-տողները պատմեցին մեզ, թէ Տէրվիշ մի կամուրջին տեղն անիծելով՝ գետը ճամբան փոխեր, ցամաք

մնացեր է կամուրջը. և այս ոստանաւորն ընելով գետն է նետվեր:

Սէյլէ նավէրդ քէօփրիւսինդէն 40 ախարըն սու սէնի,
Եաթմա Բէյթի քէօյլէնուէն 40 տոլան ենէյին սէնի:

47. ԱԳՃԷՇԱՐ աւան, հեռու է Երէֆկէնէն վաթսունըչորս մղոն, ուր կայ փոքր գետ, և բնակութիւն: Կ'ըսուի թէ առաջ երևելի շէնքեր կային հոս. որով քաղաքն հեռուէն ձերմակ կերևնար. անոր համար ըսվեցաւ Աքճէ շէհէր:

48. ԱԼԱՊԼԻ. այսինքն ծովագնաց, է չափաւոր գետ ութսունևերկու մղոն հեռու Երէֆկէնէն. ըռունի նաւահանգիստ. մօտը բնակութիւն և գեղեր կան: Միհրդատ ալէկոծութեամբ եկաւ այս գետին բերանը պատսպարեցաւ: Արրիանոս Սագառիոյէն ետև Հիպոս գետ կը դնէ. որ կուգայ Պրուսայի կողմէն. որ է Հիպոս լեռան տակը:

Պապաստաղ՝ ասդին ըլլալով՝ է պապա սարին մէկ թևը. ուր ամառը նաւ կը կենայ. թէպէտ վտանգաւոր է:

49. ԷՐԷԿԼԻ, կամ Էրէղլի. և ըստ մեզ Արաքլիա, է անուանի քաղաք, և նաւահանգիստ սև ծովուն վրայ շինած, որ հին ատենը կըսվէր Հերաքլիա պոնտոսի. և յունաց ատենը Բոնթէրաքլի ըսվեցաւ. որ է աղաւաղութիւն Պոնտոս հերաքլիայի. դրամին վրա գրած է ΗΡΑΚΛΕΙΑΣ ΕΝ ΠΟΝΤΩ. որ է ՀԵՐԱՔԼԻԱՑԻ 'Ի ՊՈՆՏՈՍ Առաջ շատ երևելի մայրաքաղաք էր. որ հեռու է ալապլիէն տասնըութ մղոն, և Փէնէքէն երկուհարիւր: Անոր սար Պապաս պուռնի, վրան ուխտատեղի տաճկաց. և մեծ ջրանցք գետնին տակը լճի նման. նաև հին բերդ մեծագործ: Այս բերդս հին քաղաքին մնացորդներէն շինած է. որպէս յայտ է մեծամեծ քարերէն, որ քառակուսի աշտարակներով պարըսպած էր յունաց ժամանակը: Պարսպին մէջ ամէն կողմը կերևնան սիւներ, քարէ շէնքեր հանդերձ մակագրութեամբ: Ճամիի մի քով դրան վրա մէրմէռ քարեր կան այսպիսի գրով. Ρ. Β. Α. ΤΡΑΙΑΝ ... ΤΟΚΡΑΤΩΡΙ. որ է ՀՌՈՄԱՅԵՑԻՈՑ ԹԱԳԱՒՈՐԻ ՕԳՈՍՏՈՍԻ ՏՐԱՅԻԱՆՈՍԻ ԻՆՔՆԱԿԱԼԻ. որ է մնացորդ հին շէնքի:

Ցամաքին կողմը հին դուռ մի կայ մեծամեծ մէր-մէռներով շինած․ ուր հին շէնքեր ալ կան հին քա-ղաքին ։ Ստրաբոն շատ կը գովէ այս նաւահանգիս-տը․ սակայն Փինիկեցիներուն շինած ամբարտակը հի-մա աւրած ըլլալով շատ ապահով չէ ։

Այս ամբարտակ հին ամբարտակին հիմանը վրա շինած կերևնայ, որ էր հիւսիսային հովին դէմ․ զի Թերակղզին լայնաբաց ըլլալով նաւահանգիստն ա-պահով չէր կրնար ըլլալ․ բայց ամբարտակը հարիւր կանգունէն աւելի կերթայ ծովը ։ Այս տէրութեան դրամին մէկ կողմը գրած է Պոսիդոն չաստուած ծո-վու․ աջ ձեռքը դլֆին, և ձախը եռաժանին (Փեմ․ 631)․ որով կերևնայ թէ Էրէկլեցիք ծովուն վրա շատ զօրաւոր էին․ մինչ զի նաւեր ղրկեցին յօգնու-թիւն Պտղոմէոսին, որ յաջորդեց մեծին Աղէքսան-դրի․ որոնց մէջ զարմանալի մեծ նաւ մի կար իրեք հազար նաւավարով․ նաև քառասուն նաւ շինեցին բիւ-զանդացոց դէմ ելան ։ Միհրդատ Կիոս կղզին բը-նակիչները հոս քշեց ։

Կերևնայ թէ քաջն Հերակլէս շիներ է այս գեղե-ցիկ քաղաքն երեքհազար տարի առաջ, և իւր անու-նը դրեր է ասոր․ ուր սոսկալի փապար մի կայ 250 քայլ խորունկ․ բանաստեղծները կըսեն թէ Հե-րակլէս անկէ իջաւ դժոխքը․ ինչպէս դրամներուն վրա կերևնայ պատկերքը․ և հոն կը պաշտէին Հե-րակլեսի արձանն՝ ըստ Պաւզանիոսի․ ուստի երբոր Կոթթաս առաւ այս քաղաքը՝ գտաւ Հերակլեսի ար-ձանը զուտ ոսկիէ թափած ։ Այս քաղաքին առա-տութիւնն իմացնելու համար՝ հին ատենը ստակ կըռա-բեցին՝ վրան առատութեան եղջիւր տպած (Փեմ․ ծան․ 617)․ նաև բժշկութեան չաստուածն ալ տպե-ցին․ որովհետև բժշկական խոտեր շատ կան հոն ։

50․ Հերակլիա առաջ ինքնագլուխ հասարակա-պետութիւն էր․ բայց Կղէարք հերակլացին Աթէնք գնացեր էր Պղատոնի փիլիսոփայութիւնը սորվե-լու․ հասարակապետութիւնը զինքը ետ կանչեց՝ որ դայ ժողովուրդը խաղաղացնէ․ որոնք նոր օրէնք կու-զէին․ որ եկաւ ժողովուրդին կամքը կատարելէն ե-

տե զօրացաւ՝ Թագաւոր նստաւ ․ այլ Երկոտասանե֊րորդ տարին զինքն սպաննեցին սպանդարամետական տօնին ․ ատոր յաջորդեց որդին Տիմօթէ, և ․ տասնը֊հինգ տարի Թագաւորեց ․ իր տեղը նստաւ եղբայրը Սաթիրոս ․ անկէ անցաւ տէրութիւնն եղբօրորդւոյն ․ որ աղէկութեանը համար Բարերար կոչվեցաւ ․ որուն յաջորդեց Տէնիզ եղբայրն, որ երսուն տարի Թագաւորելով մեծցուց տէրութիւնը ․ յետոյ Ամաստրիս կնիկը տիրեց ․ վերջը երկու որդիքն անգթութեամբ մայրերնին սպաննեցին ․ Լուսիմագոս ալ վրէժ խնդրելով զանոնք սպաննեց, և Հերակլեա ազատ քաղաք Թողուց եօթանասուն հինգ տարի Թագաւորութիւն ըլլալէն ետև ։

Յետոյ Միհրդատի պաշտպանութեան տակն եղան, բայց հռոմայեցւոց հետն ալ դաշինք ըրին, և այն պղնձէ տախտակի վրա գրեցին կապիտոլեան Դիոսի տաճարին մէջ ։ Սակայն յետոյ Լուկուղոս զրկեց Կոթթաս Հերակլեա ․ որ մատնութեամբ առաւ յափշտակեց և չարաչար քանդեց այս երևելի քաղաքը ․ որոնք յետոյ հաւաքուած մի զրկեցին հոն ․ կէսը շինեցին, կէսն ալ դաշտ ըրին ․ ինչպէս որ կերևնայ ․ յետոյ յունաց անցաւ ․ վերջը Տրապիզոնի կայսերք տիրեցին ․ անոնցմէ ալ Ճինովլիզներն առին ․ և ապա Սուլ․ Մէհէմմէտ առաւ տիրեց ։ Լեռները հին շէնեքեր շատ կան ․ ժամանակ չեղաւ քննելու ։

Քրիստոնէութե ժամանակն ալ շատ ծաղկած էր Էրէկլեա ․ ուր գնաց և լուսաւորեց Անդրէաս առաքեալն ․ նաև ձեռնադրեց Լուսաքէոս եպիսկոպոսն ու զրկեց Սամիզոլ ։ Ասկէց կանոն եղաւ ․ որ երբ Սամսօլու եպիսկոպոս պիտի ձեռնադրուէր, նախ Էրէկլեայի մետրապօլիտը կը դնէր ձեռքը վրան ։ Այս քաղաքէն էր Հերակղիտէս փիլիսոփան, որ աշակերտեցաւ Արիստոտելի ․ նաև Թէոդորոս Ստրատեղատ փառաւոր իշխանն, որ նահատակեց Լիկինոս ․ Ուր կայ եկեղեցի յունաց և դպրոց ։ Այս կողմէս գետ կանցնի, որ կըսվի Օկյնէ ։ Լուկ Լիգոս գետին վրա շինած էր հին քաղաքը ․ և կոռոզանէ դաշտերն Էրէկլեայի կըսէ Պլինիոս ։ Էրէկլեայի աշ֊

խարհագրական լայնութիւնն է 41°. 5'.
Երկայնութիւնն է . . . . . 29°. 40':

51. ՊՈՒԼԻՄԼԻ սար, քառորդհինգ մղոն տարլին է. որ շիտակ ծովն երկնցած ըլլալով չունի նաւահանգիստ. ուր մօտ է Զինիզ պուռնի, և Կիւզելճէ հիսար. որ ունի հին բերդ և եկեղեցի: Ըստ ոմանց այս տեղս առաջ Սելէոս կըսուէր. ուր կայ Ռիլէոս գետ: Հիներուն այս կողմն կը յիշեն Սանդարակա նաւահանգիստը:

52. ՊԱՐԹԻՆ քաղաք, կմ Բարթէնոս. այսինքն կոյս, տասնըութ մղոն հեռու է. ուր կայ բնակութիւն յն. և տճ: Ունի մեծ գետ Պարթէն. որուն գոգն է խոր խըր նաւահանգիստ. ուսկից ներս կը մտնեն նաւերը, և տասը մղոն կերթան. որուն բերանը քար մի կայ: Քսենոփոնին տասն հազար զօրքն այս գետէն վախցան անցնելու. որուն ջուրը ծաղկալից դաշտին մէջէն կանցնի, որ Կոյս կըսուէր. զի Անահիտ չաստուածուհին հոն կը պաշտէին: Տես Ձեռ. 654:

Այս գետին պատկերքը դրամին վրայ տպած կայ. որ կը ձևացնէ մանուկ մի պառկած արմունկին վրայ. որ քարին կռթըներ է, ուսկից կը բղխի նոյն ջուրը, և աջ ձեռքն ունի ջրային եղէգն: Խորենացին Պարթէնիոս կանուանէ այս գետն, և գաւառն Ոնորիա. որուն մայրաքաղաքն էր Կլոդիուպոլիս. որ է Պաստամպոլի (62):

53. ԱՄԱՍՐԱ, կամ ըստ հն. Ամաստրիս քաղաք՝ տասնըութ մղոն հեռու է Պարթինէն. ունի Թերակզզի, կամ սար գլխու նման. երկու գոգը երկու նաւահանգիստ կան. արևմտեան կողմն երկու տեղ նաւ կրնայ կենալ. մօտէն կանցնի Սիթա գետ:

Ամաստրայի դիրքը շատ աղէկ չէ. սակայն երկիրը բարեբեր է. հին քաղաքին տեղը շինած է հին շէնքին մնացորդէն: Առաջ չորս գեղ էին Սեզամ՝ Զիթոր՝ Կրոմնա՝ և Տիոս. յետոյ Ամաստրիս անուամբ պարսիկ թագուհի մի միացընելով քաղաք շինեց և ժողովրդով լեցուց: Արիանոսի ատենը շատ երևելի քաղաք էր, և պատուական նաւահանգիստ. հիմա տեղ տեղ աւազ լեցուն է գետերէն. իսկ մէկ նաւա

հանգստէն մէկալը վեց հարիւր ոտնաչափ է ։

Ամաստրացոց կտրած ստըկին մէկ կողմն է կուռք բաղդի․ աջ ձեռքը նաւի ղեկ, և ձախը եղջիւր առատութեան (Ճեմ․ ծան․ 661)․ նաև Պոսիդոն ծովու չաստուածն ալ տպած են ։ Ամաստրացիք գրեթէ ամէն կուռքի անուամբ ստակ կտրած են․ նաև Հոմերոսին պատկերն ալ կայ դրամոց վրա․ ուր ծընած էր ։ Երկրին բարեբեր ըլլալն իմացընելու համար Բագոս չաստուածը գինիի՝ ստըկի վրա տպեցին (Ճեմ․ 643)․ և բժշկական խոտեր շատ ըլլալուն համար հոն՝ Ասկղեպիոս կուռքն ալ տպեցին, քովը օձ ։ Տես Ճեմ․ 667 ։

54․ Աղեքսանդրէն ետև Միհրդատ տիրեց․ յետոյ Տրապիզոնի թագաւորները, և Ճինիվիզները․ որոնցմէ առաւ Սուլ․ Մէհէմմէտ․ որ մեծ մասն ժողովուրդին տարաւ Ստամպօլ ։ Բնակիչներն են բարեսիրտ և անուշլեզու․ շատը ճախարագործ (Չըխըրըխճի) են ։ Ամաստրա շատ հին շէնքի մնացորդներ կան․ ծովէն վեր ծառին տակը քարաշէն մեծ պատուանդան կայ եօթն ոտնաչափ․ մէկ կողմը գրած է լատին գրերով ԹԱԳԱՒՈՐ ՎԻԳԻՌՍ ԳՕՋՉԻԱՆՈՍ ԲԱՐԵՍԷՐ ՎԽՐԱԿԱՑՈՒԻ ։ Միւս կողմերը կան իրեք պսակ փորած և մէկ դրօշակ․ տեղացիք կըսեն թէ ասոր վրա ձիաւոր արձան կար առաջ․ քովը կայ եկեղեցնայ աւերակ ։

55․ Իսկ դաշտին մէջ մէրմէր սիւներ վերնախարըսխով կեցած կան․ արևմտեան դին աղիւսակերտ շէնք մի կայ Ճինիվիզէն մնացած լայն՝ յիսունըչորս քայլ, և երկայն՝ հարիւր քառասունըչորս ։ Հիւսիսային դին մէրմէռէ սրահ մի կայ տասնըութ ոտնաչափ բարձր․ սիւներուն տեղերը կան, որ չորս կողմն աշխարհիս կը նայէր․ առջևէն փոքր գետ կանցնի ։ Քիչ մի հեռուն մեծ սիւն կայ քսանըմէկ ոտնաչափ երկայն, և իրեք ոտնաչափ հաստ կորնթեան ձևով․ և ուրիշ սիւներ ալ կան ։ Իսկ լեռան վրա մեծ քակուած շէնք մի կայ չորս սիւն մնացեր է, և սրահը կայ․ պատն է յիսունըհինգ ոտնաչափ բարձր․ շէնքին երկայնութիւնը կայ վաթսուն ոտնաչափ ։ Սուր պատնէշ

մի կայ հարիւր յիսուն ոտնաչափ երկայն. և սրահ մի ծառերով գոցված։ Նաև հարիւր քայլ անդին լեռան վրայ մեծ աւերակ մի կայ, և մեծ գերեզման քսաներչորս ոտն" բարձր, երսուն ոտն" երկայն, և տասնըութը լայն։ Մեծ դրան մի ձախ դին յունարէն գրած էր, և աջ դին լատիներէն այսպէս.

O . NACIAN .
O . HOV XXX .
LEG . IONIS II .
SA . LAC VETE . RANAE GALLI
U . SIBI FE . CIT
. . . . . .

Այս բան կրճատ ըլլալով չթարգմանեցինք. նմանապէս յունարէն գիրն օրինակելու ժամանակ չունեցանք։ Ներդը թերակղզին բերանն է. ուր մինչև հիմա ձինիվիզին շէնքերը կան. թէպէտ անշուք մնացեր են։ Այս քաղաքին աշխարհագրական լայնութիւն է . . . . 41°. 26'. 3"։
Երկայնութիւնն է 31°. 4'. 45"։

56. ՏԻԼԻՔԼԻ ՉԻԼԷ, ինը մղոն հեռու է ամաստրայէն. ունի նաւահանգիստ անյաջող, փոքրիկ գետ, նաև Զաքրաս քիթ։ Որրխանոս հոս կը յիշէ Արիթացի յոյն ժողովուրդ։

57. ԽԻՔՔԻ ԻՕՆԻՒ, ինը մղոն հեռու վերինէն. ծովուն մօտ է բնակութիւնը. բայց նաւահանգիստը փոքր է, և միայն ամառը նաւ կըկենայ։ Իւր մօտ է Տելլիքլի թաշ. ուսկից կանցնի գետ։

58. ԿԻԹՐՕՋ կամ Կիտօրոն աւան, տասնըութ մըղոն հեռու է. ունի նաւահանգիստ բաւական. բերանը փոքր կղզի մի կայ. ուր նաւ կըշինեն, և շատ գերան տախտակ կելլէ։ Ծովուն քով երկու հին բերդ կայ. մէկն արևելեան կողմն է, մէկալը արևմտեան։ Նաև չորս մղոն հեռու է Սալ տէրէսին. ուսկից կուգայ լաստափայտ։

59. ԳԻԱՐԱՂԱՃ, տասնըութ մղոն հեռու է. ուր կան խանութք և գետ. բայց գետը վերն ըլլալով անշուք տեղ է։ Այս կողմն շատ ծառնոց կայ. և բա

լոր լեռները կանանչ տեսանք ։ Արրիանոս հոս կը գտնէ Աթինա քաղաք, և Լազիացի հին ժողովուրդ ։

60. ՔԷՐԷՄԲԷ, ըստ յն. Քարամպիս Ա՛կրա, այսինքն Սար Կարամբիոյ, երեսունըվեց մղոն հեռու է վերինէն. որ է մեծ և բարձր սար դէպ 'ի հիւսիս երկնցած Խրիմի դէմ, և զանազան լեռներով կապված ։ Շատ վտանգաւոր տեղ է նաւերուն՝ այս կողմն նաւահանգիստ չըլլալուն համար. ուր տարտափելի հով և ալէկոծութիւն կըլլայ ։ Այս սար քիթրօզէն կըսկըսի երկըննալ դէպ 'ի ծովը. և միայն արևմտեան կողմը նաւ կրնայ կենալ դժուարութեամբ ։

Հին տանը աւան և բնակութիւն կար ։ Պլինիոս կըսէ թէ կռունկները այս սարէն կանցնին դիմաց՝ աւելի մօտ ըլլալուն համար. և գրեթէ ամէն թռչուն այս կողմերէն կանցնին Խրիմ, և շատ անգամ նաւերուն մէջ կիջնին ։

61. ԶԱՌԳԱՆԱ, կամ Զէրղանա, յն. Զէֆիւրիոն. տասնըութ մղոն հեռու է վերինէն. որ բերան ըլլալով կրնայ նաւն երկաթ ձգել. և ունի փոքրիկ գետ. ուրիշ երևելի բան չի կայ ։

62. ԻՆԷՊՕԼԻ, կամ Նէօբօլի. այսինքն Նոր քաղաք. տասներկու մղոն հեռու է վերինէն. և է ծովեզերք Գատտամպօլուին. Թէպէտ չունի նաւահանգիստ. բայց Քերեմպէի ծոցն ըլլալով՝ նաւ կրնայ կենալ ամառը. ուր մենք դժուարութիւն քաշեցինք արևելեան հովէն ։ Այս քաղաք փոքր է. բայց բարեկարգ. յունաց թաղն է արևելեան կողմն. ունին երկու եկեղեցի. տեսանք նաև հին վանք լեռան վրա. օրն որ գայ՝ ուխտ կերթան, և պատարագ կընեն ։ Իսկ արևելեան կողմն է աւերակ հին բերդին. ուր տեսանք քթին վրա մնացորդ հին աղբիւրի և ջրանցք ։

63. Արևմտեան կողմն կէս ժամ հեռուն է Պօյրան գետն. ուր կայ բերդի մնացորդ, և անդրուն տակը մեծ խոռոչներ և փոսեր. իսկ գետն է ծովուն կողմը ։

Տեղացիք պատմեցին թէ Պօյար պէկ կը նստէր եղեր հոն Ձինիվիղին տանը. որուն անուամբ Պօյրան ըսվեցաւ այս գետն ։ Երեք ժամ վերն է Պօղչէօյ.

ուր կերևնան քարէ սիւներ, և ծակ քարեր նաւ կա-
պելու համար ։ Տեղացիք աւանդութեամբ պատմե-
ցին, թէ Սուամպօլու բերանը չի բացված՝ ծովը հոն
կը հասնէր. և նաւերը հոն կը կապէին եղեր (4)։
Ինէպօլիէն մինչև Իսթէֆան յիսուն մղոն է. հին ա-
տենը շատ գեղեցիկ տեղ կը պատմեն այս կողմերս։
Ինէպօլուի արևմտեան կողմէն փոքր գետ կանցնի։

64. ԱՎՐԻՆՆԵԻ, ինը մղոն հեռու է Ինէպօլիէն. չունի նաւահանգիստ. միայն մէկ քանի տուն և խանութ կան։ Տներուն վրան տափակ քարերով ծածկած են. երևելի բան չի տեսանք։

65. ԱՊԱՆԱ, կամ ըստ հն. Աբոնէ, ինը մղոն հեռու է վերինէն. հին ատենը չափաւոր քաղաք էր. հիմա անշուք տեղ է, որ կըսուէր Աբոնոտեիքոս։ Ապանայի արևելեան կողմէն կանցնի Իգինետիս գետ ըստ Արր". և կոչուանէ փոքրիկ քաղաքն Իգինետիս։

66. ԿԻՆՕԼԻ, տասներկու մղոն առջին է. հին անունը կըսուէր Կինօլիս. որուն հին աւերակները կերևնան. ունի փոքր նաւահանգիստ։ Նոյնպէս ինը մղոն հեռու է Զաքալ կէյլէն. որ է անշուք տեղ։ Նաւերն այս ծոցին մէջ՝ մինչև Ալիման շատ վտանգ կը քաշեն։

67. ԱՅԱՆՏՕՆ, ինը մղոն հեռու է վերինէն. ուր կայ հին եկեղեցի յանուն սրբոյն Անտոնի, և բնակութիւնք. ամառը միայն նաւ կը կենայ հոս։

68. ԻՍԹԷՖԱՆ տասներկու մղոն հեռու է. ունի սար կամ քիթ, որ դէպ 'ի հիւսիս ըլլալով նաւահանգիստն ապահով չէ. Թէպէտ նաւ կրնայ կենալ ամառը։ Ուր տեսանք հին բերդ և եկեղեցի յունաց մեծ։ Այս բերդ կռապաշտութեան ատենին ալ Ստեֆանէ կըսուէր, որ շինողին անունը պիտի ըլլայ։ Տես տախ. Գ։

69. ԱՅԱՆՃԸԳ, ինը մղոն հեռու է. չունի նաւահանգիստ. կան բնակութիւնք. և տներն անշուք շինած են։ Իսթէֆանին և Ինճէին մէջ Բոստամի գետ, կամ տեղ կը յիշէ Արր"։

70. ԿԷԳԷԼԻԴ, ինը մղոն առջին է. որ է բերան փոքր գետի. կան բնակութիւնք յն. և տճ. երևելի

քան չի կայ. ուր երբեմն նաւ կը կենայ ամառը :

71. ԻՆՃԷ ՊՈՒՌՈՒՆ, ըստ յն. Լէփթէ ագրա. այսինքն բարակ քիթ. տասնըերկու մղոն հեռու՝ երկայն բարակ սար է. սարին վրայ խոտալից և շատ զուարճալի է. ծովէն շատ բարձր ըլլալով գեղեցիկ կերևնայ. որ ծովուն մէջ երկննալով դէպ 'ի Աջա սարը՝ քիթ թէ կը բարևէ խրիմի կղզին, որպէս մէջք ձևանալով սև ծովուն : Այս քիթը տասնըմէկ մղոն դառնալով դէպ 'ի արևելք, կուգայ Աղլիմանին բերանը :

72. ԱՂԼԻՄԱՆ, ըստ յն. Ալմիրօս լիմէնօս կամ Լիմն. այսինքն աղի նաւահանգիստ, ինչէ սարին գոգն է. բերնին լայնութիւնը քիչ ըլլալով ներսն է պատուական նաւահանգիստ ձմերելու. որ մինչև տասներհինգ նաւ կառնէ. ուր չի կայ բնակութիւն : Պոմպոնիոս Մէլա առաջ քաղաք եր կըսէ. բայց Պլինիոսի ատենը չի կար. ուստի ուրիշները Սինապու գեղը կը համարին Աղլիման :

Արդ՝ Իսթէֆանէն մինչև Սինապ է 50. մղոն, և Ինէպօլիէն 100. իսկ Ֆէնէրէն 480. որ հասարակօրէն 500 կը սեպեն : Ահա ո̃ Սամն սև ծովու կատարեցինք, և հասանք Սինապ. որ ըստ նախնեաց կըսվի Սինոբ, կամ Սինոպ :

# Բ. ԱՓԱՄՆ ՍԵՒ ԾՈՎՈՒ

73. ՍԻՆՈՊ, կամ Սինոպ, ինը մղոն հեռու է Աղ-ըլիմանէն. որ հին ատենէն 'ի վեր հռչակաւոր մայրաքաղաք է Պոնտոսի. որուն գաւառն առաջ կըսվէր Պափլագոնիա. ունի պատուական նաւահանգիստ արեւելեան ծոցին մէջ. նաեւ գործարան նաւուց հռոմայեցոց ժամանակէն մնացած. ուր մեծամեծ նաւեր կը շինվին Օսմանեան տէրութեան: Պօլիբիոս և Ստրաբոն կըսեն թէ Սինոպ երկու լաւ նաւահանգիստ կայ, և շատ անուանի քաղաք է. որ մէկը պիտի ըլլայ Աղլիմանի նաւահանգիստը: Հին պատմիչներէն ոմանք կըսեն թէ այս քաղաքը շինեց Սինոպի անուամբ աղջիկն, որ ըստ Ապողոնիոսի էր դուստր Ասոպոսի, որ Յաւէրժահարսն ձայնեցին. ինչպէս կը բերէ նաեւ Վալերիոս, թէ Յասոն կամ Արգոնաւորդք երբոր հասան Կերէմպէ՝ տեսան Սինոպու քաղաքն, որ շինած էր.

* Սօտ քերէին առ բարձրաբերձ Կարամբեայ,
Ուրփէր 'ի ծով ստուէր մեծին Սինոպայ ։
Վալեր. գլ. Է. 109.

Ասկէց կը հետեւի թէ Սինոպ շատ առաջ շինած էր. որուն շուքը ծովուն վրայ կերեւնար: Իսկ ոմանք աւելի հաւանականութեամբ կը հաստատեն թէ Արգոնաւորդաց ընկերներէն Աւտոլիկոս շինեց այս քաղաքը. որուն արձանը կը պաշտէին Սինոպացիք. ուստի երբոր հռոմայեցիք տիրեցին, ծովուն քով տեսան արձան մի գեղեցիկ երիտասարդի և հաստատեցին թէ էր Աւտոլիկոսի արձանը, վերուցին Հռոմ տարին ըստ Պլուտարքոսի: Սակայն կերեւնայ թէ նախ ալըդտի քաղաք շինած էր. Աւտոլիկոս բերդը շինեց յունաց կերպով. և յետոյ Միլէզիացիք ձերմակ ծովուն կողմէն հասուած եկան. տեսնելով տեղւոյն գեղեցկութիւնը և բնակչաց տկարութիւնը՝ իրենք բնակե.

ցան՝ քաղաքը շինեցին մեծցուցին , և բնակիչները կարգաւորեցին · որոնք այնչափ ծաղկեցան և բազմացան , որ հաստուած ղրկեցին Կիրեսուն և Տրապիզոն (105)։ Սուտի Մելեքիացիք հիմնադիր համարեցան Սինոպու · որ Միհրդատին վախուն շատ ամրցուցին այս բերդն , որ պոնտոսի թագաւորութիւնը հաստատելով Սինոպ ըրաւ թագաւորական քաղաք · բայց յետոյ հռոմայեցոց անցաւ ։ Մեծն և այլք կը հաստատեն , թէ Սինոպ էր տեղի ծննդեան Միհրդատայ և մայրաքաղաք թագաւորութեան նախնեաց նորա ։ Հին ատենը սինոպցիք շատ զօրաւոր ըլլալով մեծ պատերազմեր ըրեր են · իրենց գլխաւոր կուռքն էր Պլուտոնի արձանը · նոյն էր կըսեն Սերապիս չաստուածին կուռքն , որ եգիպտացիք կը պաշտէին ։

Սինոպցիք բերդին մէջ մեծ և փառաւոր կռատուն շիներ էին՝ որուն մէջ կը պաշտէին այս կուռքն , որ ըստ Տակիտոսի՝ Պտղոմէոս թագաւորն եգիպտոսի՝ Սկտրոդեմիս Սինոպու թագաւորին սիրտը շահելով՝ այս արձանը եգիպտոս տարաւ ։ Այս բանին համար իրեք տարի ետևէն եղաւ՝ շատ մեծ ընծաներ և դեսպաններ ղրկեց Սինոպ · մինչև ժողովուրդը խաբելով ձայն հանեցին , թէ կուռքն ինքնիրեն թըռաւ տաճարին մէջէն գնաց նաւը , և իրեք օրւան մէջ հասաւ Եգիպտոս · որուն համար մեծաշէն տաճար շինեցաւ Եգիպտոս ։ Այս կուռքը շատ անուանի ըլլալով քուրմերն ալ գիտնական մարդիկ էին ։ Հերակլիտէս պոնտացի փիլիսոփան այս կուռքին մէկ պատգամը կը բերէ · որ Երրորդութեան վկայութիւն կը բերեն ։ Πρωτα Θεός , μετέπειτα λόγος, καὶ πνεῦμα σὺν αὐτοῖς ... Σύμφυτα δὴ τρία πάντα, καὶ εἰς ἓν ἔοντα · * Նախ աստուած , ապա բան , և հոգի ընդ նոսին ... երեքեան ամենևին համաբունք և միանականք ‖ ։

74 · Սինոպ կտրած հին դրամին մէկ կողմը կայ բազ գլուխ · կերևնայ թէ Աւտոլիկոսինն է · մէկալ կողմն է եզջիւր առատութեան · որ երկրին բարեբեր ըլլալն իմացընելու համար տպած են այսպէս (Ճեմ. ծան. 617) ։ Սուրբ հին սուտ դատարկեցաւ · վրան կայ Պը-

ղուտան չաստուած Ձոխութեան․ զի անատենը շատ հարուստ է եղեր Սինոպ, որ կողինքի վրայ կէս ընկած կերեւնայ (Ղեմ․ ծան․ 636)։ Այս ուրիշ դրամի վրայ կայ ձուկն, որ նշան է թէ հոն ձկան առատութիւն է մինչեւ հիմա։

Հռոմայեցոց ժամանակը կտրած դրամներուն վրայ կայ․ C. J. AU. SINOPE. այսինքն ՀԱՑՈՒԱԾ ՅՈՒԼԻԱԿԱՆ՝ ՕԳՈՍՏԱԿԱՆ ՍԻՆՈՊ։ Ուրիշ դրամի վրայ կայ․ C. J. F. SINOPES․ այսինքն ՀԱՑՈՒԱԾԻ ՅՈՒԼԻԱԿԱՆԻ ԵՐՋԱՆԿԻ ՍԻՆՈՊԱՑ։ Ասոն զի Կայսերք հռոմայու իրենց հաւատարիմը կը համարէին Սինոպու բնակիչը։

Ստրաբոնի ժամանակը շատ գեղեցիկ էր բերդը․ բայց հին բերդը քակուեր է, նորէն շիներ են յունաց ժամանակը՝ հին բերդին քակուածներէն․ ոմանք կըսեն թէ Ճենովիզները շինեցին։ Բայց Նաւաքիոսի Սինոպ շինուեցաւ Նորելիա մարգարէին ժամանակը 625 տարի Քրիստոսէն առաջ․ կերեւնայ թէ երկրորդ շինութիւնն է բերդին։ Ներսի շատ տեղ բերդին պատերուն վրայ տեսանք քարերուն հետ հիւսած՝ մարդու արձան, կենդանեաց գլուխ, զարդեր, սիւներ․ նաեւ այլազգաց գերեզմանատունը պատուանդան, խարիսխ, և սեան կտորներ կան․ որ են մնացորդ հին սրահին և ձեմարանին․ որ կը պատմէ Ստրաբոն։ Այս մերմեր զարդերուն մէջ յունարէն գրուածներ ալ կան․ բայց հնար չեղաւ օրինակելու։ Աշտարակի պատին մէջ շատ հին բաներ կան․ ուր մերմեր կիսարձան մի կայ, դէմքն աւրած․ բայց վիզն ու մազերը կերեւնան։ Ծովուն կողմը մերմեր արձան մի կայ կողինքի վրայ ընկած, ձեռքը աման․ ոտքերն դին մերկ կին մի կայ նստած՝ ձեռքն ունի աման․ հեռուէն ալ տղայ մի փոքէն ջուր կը հանէ․ նաեւ Կնկանը քով կիտաքոլը սեղան կայ եղնիկի իրեք ոտաց վրայ կեցած։ Անդին կայ աւերակ հին պատի․ որ էր կռատուն։

Այս բերդին դիրքն է հիւսիսակողմն․ ունի ներքնաբերդ հարաւային կողմն․ մէկ դրան վրայ յունարէն գիր կայ, և երկու առիւծ Ճենովիզներէն մնացած․ որ երկու պատնէշի վրայ կեցած են ամբողջ․ բերդին շրջապատն է երկու մղոնէն աւելի․ և պարանոցին

վրա շինած ըլլալով՝ մէկ կողմը կը հասնի արեւմտեան ծովեզերքը , և մէկալ կողմն է արեւելեան ծոցը . ուր է նաւահանգիստ և նաւատեղի մեծ ։ Ներքին աւազանին վրայ ըլլալով այլազգները պատմեցին մեզ , թէ առաջ աւազով գոցված էր . ետքը կախարդութեամբ դիւանք բացին , ու աւազը Աղլիման տարին . որ է առասպել ։

75 . Պօզթէփէ , կըսվի թերակղզին Սինապու . ըստ հն . Ἀκραία . որ եկած է յունական բառէս Ἀκρω-τήρι . այսինքն գլուխ կամ սար ։ Այս սարին սկիզբն է նեղ պարանոց . որուն լայնք է ութ հարիւր քայլ մէկ ծոցէն մէկալ ծոցը ։ Տես աշխարհացուցին վրա ։ Ոմանք կըսեն թէ այս պարանոց առաջ բաց ըլլալով՝ ցամաքէն կամուրջ շինած էր բերդն անցնելու . ուսկից փոքր նաւեր մէկ ծոցէն մէկալը կանցնէին ։ Այս թերակղզիին շրջապատը տասնըութ մղոն կը դնեն . բայց բերդին ծայրէն առնելով այնչափ չի կայ ։ Թերակղզիին վրա տեսանք երեւելի ուխտատեղի , կամ վանատուն այլազգաց . ուր կայ գերեզման , և լաւ ջուր . որ կըսեն Ἁγία πηγὴ Θεοτόκου ։ Մօտը կայ եռանկիւնաձև աւերակ . մէկ անկիւնն է դէպ 'ի Աղլիման . մէկը դէպ 'ի բերդը . մէկալը դէպ 'ի նաւահանգիստը . կերեւնայ թէ մատուռ էր ։ Հռոմայեցոց գերեզմաններն ամբողջ կեցած են . ուսկից շատ անգամ հին քարեր և ստակներ կելլեն . մեր օրը փորեցին՝ քանի մի ոսկին գտան Միհրդատին ։ Հռոմայեցիք իրենց գանձը , և մեհենական գրեանքը բերդին մէջ կը պահէին ։ Խորենացին կը պատմէ , թէ Ափրիկանոս յերրորդ դարուն Սինապու կռատանը մեհենական գրքերէն հանեց հայոց թագաւորներուն պատմութիւնն , որ քուրմերը գրեր էին՝ երբոր Սինապու կը տիրէին Միհրդատ և այլք ։ Նաև այն գըրեանքը յետոյ Պոնտոսէն Ուռհայ տարեր էին . որպէս տեսեր էր Խորենացին ։

Ստրաբոն շատ կը գովէ Սինապու լեռներն , ու պարտէզները . և մինչև հիմա ծառերով զարդարած տեսանք չորս դին . Ստամպօլ կերթան այս կողմէն մեծամեծ նաւերուն փայտերը ։ Հոս կայ կարմիր ըն-

տիր կայ, որ բարակ ամաններ կը շինեն. ոմանք կը-սեն թէ կանանչ կաւ ալ կայ Սինապու լեռներուն, որ Սինօփլ բառը կանանչ մեկնելով՝ ըսին թէ ասկէց ե-լած է Սինոպ անունս։ Կան նաև ձիթենիք. ուսկից ձէթ կը շինեն։ Ծովուն քովերը ափսինթի նման խո-տեր բուսած են. որ հիները ափսինթ պոնտոսի կան-ուանէին։ Կան ուրիշ բժշկական խոտեր Սինապու լեռներուն վրայ։ Քրիստոնեայք բերդէն դուրս կը բնակին. և մինչև հիմա յոյները քաջ և խորոտ են։ Հայերը շատ քիչ են, և ունին եկեղեցի։ Երբոր Եւրոպացիք Ստամպօլ առին, Սինապ եղաւ գլխաւոր քաղաք Տրապիզոնի կայսերաց։ Յետոյ առին Օսմանցիք. բայց Իսմայիլ պէկն ինքնագլուխ կը տիրէր Սի-նապ 1461ին. իսկ Յաթիր պէկին Սինապու տարուէ տարի տուրք կուտային Տրապիզոնի կայսերքը. և ան-կէ մինչև ցայժմ Օսմանցին կը տիրէ։

Սինապէն շատ երեւելի մարդիկ ելած են. ուր ծնած էր Դիոգինէս փիլիսոփան 340. տարի Քրիստո-սէն առաջ. որ Յունական փիլիսոփաներուն աղանդէն ըլլալով, որոնք աղքատ կապրէին, ինքն ալ շուն կամ շնական ըսուեցաւ. որ անուանի իմաստասիրաց մէկն է, թէպէտ կեանքն էր ողորմելի և կարասաբը-նակ։ Այս փիլիսոփային գերեզմանին քարը գտնը-ւեցաւ. որ է հին մէրմէր. վերը նստեցուցեր են շուն մի, և տակը կայ յունարէն գիր այսպէս.



(Հ). ԽՕՍԵԱ՛Ց ՈՒՐԵՄՆ ՇՈՒՆԴ ԶՈ՛ՅՐ ԳԵՐԵԶՄԱՆ ՊԱՀՊԱՆԵՍ ԱՅԴՉԱՓ ԶԳՈՒՇՈՒԹԵԱՄԲ.

(Պ). ՕՇԱՆ.

(Հ). ԻՍԿ Ո՛Վ ԻՑԷ ԱՅՐԴ ԶՈՐ ԴՈՒ ՇՈՒՆ ԱՆՈՒԱՆԵՍ.

(Պ). ԴԻՈԳԻՆԷՍ.

(Հ). ՈՒՍՏԻ՞ ԷՐ ԱՐԴԵՕՔ ՆԱ.

(Պ). 'Ի ՍԻՆՈԲԱՑ. ԵՒ ՆԱ ԻՆՔՆ Է, ՈՐ ԵՐԲԵՄՆ ԲՆԱԿԻՐ 'Ի ԿԱՐԱՄԻ, ԵՒ ԱՅԺՄ ԱՍՏԵՂՔ ԵՆ ՆՈՐԱ ԲՆԱԿԱՐԱՆ:

Այս քաղաքէն էր սուրբ Փոկաս հայրապետ սքանչելագործ, որ քարոզեց նաև Ամասիա և Ամիսոն. ուստի եղաւ եպիսկոպոս Սինոպու, և հոն կատարեցաւ Տրայիանոսի օրը: Ոմանք կըսեն թէ Անդրէաս առաքեալ Հէրէկլիա, և բոլոր այս կողմերս քարոզելով լուսաւորեց. սակայն Կաթողիկեայ Թղթէն կերեւնայ թէ Պետրոս առաքեալ Անտիոք նստելէն ետև եկաւ Գաղատիա, և բոլոր Պոնտոսի քաղաքները լուսաւորեց. որոնց յետոյ թուղթ գրեց՝ * 'Ի սփիւռս պոնտացւոց ||: Սինոպու սարին առաջը մղոն մը հեռու փոքր կղզի կայ ապառաժ. որ այլազգը կանուանէ Պօզչէկէ. որուն մէջէն նաւ կանցնի. վրան բան չի տեսանք: Սինոպու աշխարհագրական լայնութիւնն է . . . . . . . 41°. 22'.
Երկայնութիւնն է 32°. 50':

76. ՍԵՐՁԷ, ըստ Ս.րր". Պաֆրալու, հին քաղաք տասնըութ մղոն հեռու է Սինոպէն. ունի լաւ նաւահանգիստ բաւական քան նաւուց. շատ առատ տեղ է. ուր կայ հին բերդ, և գետ:

77. ՉԱՅԱՂՁԻ, ինը մղոն սաղին է. և մօտն է Կէօլ, կամ Ֆընտըգ սուլէ. որ են գետի բերաններ. ուր տեսանք քիթ Պոտողուլուխ պառանի. առջին նաւ կըրնայ կենալ իբր նաւահանգիստ: Հիները այս տեղս կանուանեն Զագորա:

78. ԳԸԶԸԼ ԸՐՄԱԳ, կամ ըստ հն. Ալիս գետ հռչակաւոր հին ատենը. ինը մղոն հեռու է վերինէն. որ է կարմրադոյն և երագընթաց. փոքր հայաստանէն կելլէ Սեբաստիոյ կողմէն կանցնի կուգայ Նիկսար. և անկէ հիւսիս խոտորելով կը վազէ պոնտոս. բերանը շատ լայն չէ. զի երբեմն բուռն գալով աւազ կը լեցնի. ուր երկայն ցամաք լեզու կայ դէպ 'ի արևելք: Խորենացին կըսէ թէ Ալիս

կէս և Ալիս 'ի Մեքսաստիոյ եւանկէն ; և ոլորեալ անկանի 'ի ծովն պոնտոս ։ Ապպիանոս կը պատմէ թէ Միհրդատ այս գետին քով պատերազմեցաւ, և մեծ յաղթութիւն ըրաւ Հռոմայեցոց դէմ. յետոյ հանդիսաւոր զոհ ըրաւ այս կերպով. բարձր լեռան վրայ շատ փայտ շարեցին. և առջի փայտերը թագաւորն ու մեծամեծները բերին. անոր քով ուրիշ փայտակոյտմ' ալ բարձրացուցին, որ վեր ելլելով կը նեղնար։ Առջի փայտակուտին վրայ դրին մեղր, գինի, կաթն, եղ, և խունկ, որ ընծայեցին կուռքին։ Երկրորդին վրան ալ շատ կերակուրներ լեցուցին, ու կրակ տվին այրեցին. որ հարիւր մղոն հեռուէն բոցը կերևնար. ահա այսպէս կատարեց հեթանոսական տօնախմբութիւնն։ Այս գետին մօտ կը դնեն Ափոոս աւանն, որ հին քաղաքի աւերակին վրայ շինած էր. նաև հոն էր աթենացոց հատուածը։ Կ'ըսուի թէ այս գետէն մինչև Սամսոն կըսվէր Ամիսոս. զի այս տեղս աւելի կը յարմարի Սամսոնի (80)։ Խորենացին կը յիշէ նաև Գերմանիկուպօլիս հին մայրաքաղաք Ալիս գետին վրայ շինած, որ հիմա տեղը չի կայ։

Այս գետէն անդին է Ջանիկ փաշանի. ուսկից կըսկըսի երկայն ծառնոցն, որ Չաքթէ կըսվի։ Ասկէց մինչև Չարշամպայի քիթն է ծոց Սամսոնի, և մինչև Ունեէ կըսվի Յեօղադրոս։

79. ԿՈՒԽՄՃՈՒՂԱՋ, իննսուն մղոն հեռու է Ալերջէէն, և է ընդարձակ նաւահանգիստ ապահով. թէպէտ տեղ տեղ ծանծաղ է. որ ըստ հն. կըսվէր Ափոն նաւահանգիստ. ուր կայ հին բաղնիք և խանութ. չորս բոլորը ծառնոց է, ուրիշ բան չի տեսնուիք։ Ասկէց վերն է Պաֆրա. ուսկից կըսկըսի Դէնիկ. ըստ մեզ Ալէնի. որ է ընդարձակ դաշտ և կը հասնի մինչև Պաթլամա բերդ (91)։

80. ՍԱՄՍՈՆ, ըստ հն. Ամիսոս, տասնըութ մղոն հեռու է վերինէն. որ է բարեկից քաղաք, ունի հին բերդ և հին շէնքեր. նաւահանգիստն է ընդարձակ. ուր կայ քիթ, բայց առաջը բաց ըլլալով անյաջող է. երևելի վաճառականութեան տեղ ըլլալով ամէն ազգ պակաս չէ. կան նաև հայեր։ Ալեքսանդրի ժամա-

նակը Ամիսոն ազատ քաղաք էր. Ինչպէս յայտնի է կտրած ստակներէն. յետոյ Միհրդատ տիրեց, և Թագաւորական տեղ շինեց Իրիս գետին քով ըստ Յոհ. կաթողիկոսին : Ապպիանոս կը պատմէ, թէ Միհրդատ շինեց Եւպատորիա Ամիսոսի մօտ, և ըրաւ իրեն արքունիք. ուստի երևելի տեղ էր անատենը : Հոս բերին Պոմպէոսի՝ Միհրդատին մարմինը. բայց Պոմպէոս չուզեց տեսնել, որ ծաղր ըրած չըլլայ. այլ շուտով ղրկեց Սինոպ, որ մեծ պատուով թաղեն :

Իրեք մղոն ասդին է Տէկէքէօփ լեռը. ուր գտան մեր օրը մեծ հող արծաթի հանքի Ճինիվիզէն մնացած. հանքը տեսանք կարմրագոյն և ծանր. փորձեցին, որ ոսկի ալ կար մէջը : Ութը մղոն ասդին է Լէպլէ լեռը բարձր. վրան կայ առողջարար ջուր. այս լեռն է նշան Խրիմէն եկող նաւերուն :

81. ՉԱՐՇԱՆԳԱ, գետ երևելի մեծ և զօրաւոր. ըստ հն. Իրիս կամ Իրիս. այսինքն կամար. և ըստ ոմանց Լիւկոս. բերանը ծովուն խառնըրվելով կը լայննայ իբր նաւահանգիստ. թէպէտ ծանծաղ է : Այս գետ կելլէ հայաստանէն, և Ամասիայի մէջէն անցնելով կը վազէ Ելինոպոնտոս: Քիլթն է արևելեան կողմն. որ կըսուի Չարշամպա, կամ Չալիէ դուանի, նաև Աղաճ պաշի. որովհետև այս գետէն կըսկըսի երկայն ծառանոցը, և երեսուն մղոն երթալով կը հասնի Թերմէի նաւահանգիստը : Այս գետին մէջէն կելլեն մեծամեծ ձկներ. որուն վրայ շինած է վերը Ամասիա քաղաքն, որ էր անուանի մայրաքաղաք Ելինոպոնտոս գաւառին :

Միհրդատ այս քաղաքն ընդարձակ պարըսպելով կոչեց Տիեզերասահման. շատ երևելի շէնքեր շինեց արևելեան կողմն Իրիս գետին. իսկ թագաւորական պալատը հիւսիսային կողմը շինեց : Լեռան վրա, հին բերդ կայ. նաև տեղ տեղ քարէ փորած խուցեր կան. կերևնայ թէ քուրմերու տեղեր են. հիմա Տէրվիշներ կը բնակին : Քաղաքը ջուր բերելու համար իրեք մղոն տեղ ապառաժ լեռը կտրեր են սոսկալի աշխատանքով : Այս քաղաքին դրամը

դրամ, որ գրած է ΑΜΑΣΙΑΣ ΜΗΤΡΟΠ. ΠΟΝΤ. ΑΜΑΣΕΑΣ ΜΗΤ. ΠΡΩΤ. ΠΟΝΤ. այսինքն ԱՄԱՍԻԱՑԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ՊՈՆՏՈՍԻ. ԱՄԱՍԵԱՑԻ ՄԱՅՐ. ԱՌԱՋ. ՊՈՆՏ.

Այս քաղաքէն էր Ստրաբոն անուանի հնախօսը. նաև սուրբ Վասիլէոսն Ամասիայի եպիսկոպոսն էր. որ նահատակեցաւ 319ին. նմանապէս անկեց էր սուրբ Թէոդորոս զօրավարն, որ այրեց Ռհէա չաստուածուհւոյն կռատունն, որ կը պաշտէին ամասիացիք. անոր համար Պոպղիոս դատաւորն ողջ ողջ զինքն այրելով նահատակեց:

82. ԶԱՐՇԱՆԴԱ աւան, գետին բերնէն չորս ժամ վերն է. ուսկից կանցնի նոյն գետը. Այս տեղ շատ գեղեցիկ է, դաշտերով, և պարտէզներով զարդարած. ուր շատ տուն կայ մեր ազգէն. ունին եկեղեցի: Կըսեն թէ հոս առաջ լիճ էր. յետոյ գետը ճամբայ բանալով ծովն է վազեր. ուստի ֆերմաններուն մէջ կը գրեն Ճէնիւ կէօլ: Այս աւան շատ ժամանակ չէ որ շէնցաւ. և ամէն ազգաց շէնքեր շինվեցան:

Խոսաղունլը աւան մօտ է Զարշանդայի. բնակիչներն են հայ հռոմէական եկած. և ամէնքը զինուոր գրված են որդւոց որդի. և ունին զօրապետ հայ իշխան, որ զիրենք կը կառավարէ. մարդէ ահ չունին. միայն Տէրէպէկիին հետ պատերազմ կերթան. և զօրաւոր մարդիկ են (144):

83. ԹԷՐՄԷ. ըստ յն. Թէրմէ. այսինքն ինքնաբուղխ տաք ջուր. վաթսունըչորս մղոն հեռու է Սամսոնէն. ունի գետեր, և գլխաւորն է Թէրմոտոն անուանի գետ հին ատենը. ուր հիմա նաւ չի մտնէր աւազով լեցուն ըլլալուն համար, ինչպէս փորձեցինք, թէպէտ լայն է. նաւահանգիստն է ընդարձակ և ապահով. քիթը կըսվի Ճինա պուռնու, որ արևմտեան [illegible]ը կը կտրէ: Գետը վերն ըլլալով ամէն շաբթու հոս վաճառ կըլլայ: Արրիանոս հոս Հերակլեան նաւահանգիստ կը կոչէ:

Թերմէ հին ժամանակը շատ անուանի տեղ էր. իշխանն էր դիւցազն, որ կըսվէր Սոլիմոս. որուն դրամը գտնըվեցաւ. մէկ կողմն էր իր անունը ΣΟΛΙΜΟΣ. մէկալ կողմը ΤΕΡΜΗΣΣΕΩΝ. ԹԷՐՄԻՍԷՈՆ: Թէպէտ

մենք հոս երևելի բան չի տեսանք · սակայն հին ա-
տենը շատ անուանի էր Ամազոնի կանանց համար ·
որոնց գլխաւոր քաղաքն էր Թերմէի գետին քով · որ
կըսվէր Թեմիսկիոր · և գետն էր Թերմոդոն · որ ո-
մանք Ամասոն կանուանեն ։

Ամազոնք էին պատերազմող քաջ կանայք · որ ըստ
հին պատմիչներուն՝ ինքնագլուխ տէրութիւն եղան
Թերմէի մօտ, և սև ծովուն եզերքէն մինչև Փարշ
տիրեցին ։ Ասոնց սկիզբն էր Սկիւթացոցմէ · որոնց-
մէ երկու կտրիճ արքայորդիք Իլին և Սկողոպիտ
աքսորվեցան մինչև Թերմէ · ուր ապա բազմացան ·
բայց անհանդարտ ազգ ըլլալով քովի ազգերը Թշնամա-
ցան իրենց հետ, մեծ պատերազմ բացին, և շատը բռնե-
ցին գերի ըրին · Մնացածները ժողվեցան բոլոր տէրու-
թիւը յանձնեցին կնիկներուն՝ իրենք Թշնամեաց դէմ
պատերազմ գնացին · իսկ կնիկները մեծամտելով սկսան
անկէ ետև անարգել էրիկմարդիկ · և յետոյ Թշնամա-
նալով կռուեցան ամենուն դէմ ։ Երկու Թագուհի
ունէին · մէկը զօրքը կըռնայէր, մէկալը կառավարու-
թիւնը · վերջի Թագուհիներն եղան Անտիոբ և Օ-
րիդիէ ։

Այս կանայք բոլոր զօրական ըլլալով չունէին
էրիկմարդ · երբոր ուզէին քովի ազգերէն օտար մարդ
կառնէին · և երբ մանչ կը ծնէին կամ կըսպանէ-
ին, և կամ անկար կընէին՝ որ չի կրնան պատե-
րազմիլ · և երբ աղջիկ կը ծնէին աջակողմի ծիծը կը
կտրէին, կամ կերէին · որպէս զի դիւրութեամբ ա-
ղեղը նետեն · և անոր զօրութիւնը Թևին երթալով
աջ ձեռքերնին շատ ուժով կըլլար · ահա այս պատճա-
ռաւ Ամազոն ըսվեցան, որ միաստինք կամ անծիծ ըսել
է ։ Զգեստնին մինչև ծունկն էր · ձախ Թևերնին և
կուրծքերնին բաց էր · աղջիկները կը սնուցանէին ձիու
կաթով և մանանայով ։ որ շատ ուժով կըլլային ։ Հի-
պոկրատ կըսէ թէ, օրէնք ունէին, որ աղջիկները չէին
կրնար կարգըլվիլ, մինչև որ իրենց Թշնամիներէն ի-
րեք մարդ չըսպանէին ։ Ասոնք Տրոյայի պատերազմին
ատենը օգնութիւն գնացին Պրիամոս Թագաւորին ·
և վրէժխնդրութեան համար կողոպտեցին Աթէնքը

2750. տարի առաջ ըստ Եւսեբիոսի. Նաև կոխեցին Ասիա, և երեցին երևելի կռատունը. որոնց գլուխը կամ Թագուհին կըսվէր Թալեստրիս։ Կըսեն թէ Եփեսոս քաղաքը, և Արտեմեայ տաճարը անոնք շինեցին. Նաև կուռքը զարդարած էր ստեամբք. որուն ընծայ կընէին կտրածները։ Հերոդոտոս կը պատմէ թէ յոյները յաղթելով Ամազոնից գերի բըռնեցին ու իրենց նաւերը լեցուցին, որ տանին. և շատ կը զարմանային անոնց քաջութեան և կրակոտութեանը վրայ. բայց հովը տարաւ զանոնք Պաղայի կողմը ձգեց. երբոր յոյները շփոթած էին կնիկները զամէնքն սպաննեցին. և դուրս ելածնուն պէս որչափ ձի գտան հեծան սկսան պատերազմիլ տեղացոց հետ. որոնք տեսան որ չըլլար, քիչ մի տեղ տվին իրենց ու այնպէս միացան, և խաղաղեցան (182)։ Անկէ ետև սկսան էրկան հետ նստիլ. և հասկըցան, որ տուն տեղ ըլլալը աղէկ բան է։ Ըստ ոմանց եղան Ամազունիք Նաև Ափրիկէի կողմը։ Տես Հմտ. Ա. Գ. 284։

Թէպէտ ոմանք սուտ կը համարին այս պատմութիւնը. բայց շատերը կը հաստատեն. ինչպէս մենք ալ տեսանք այս կողմերս քաջ կնիկմարդիկ (95)։ Ովիդիոս այսպէս կը բերէ.

* Դու Թերմոդոնեան իգածողով խմբին ծանօթ.
Եւ դու Փասիս արանց երբեմն յունաց կարօտ։
Ովիդ. Պոնտ. Դ։

84. ԻՒՆԵԷ. ըստ յն. Ինէօ քաղաք տասնըութ մըղոն հեռու է Թերմէհէն. ծովեզերքն է լուսնաձև գեղեցիկ. հարաւային կողմը մեծ նաւեր կը շինեն. ութհարիւր տուն հոռոմ, և քառսուն տուն հայ կայ, ունին եկեղեցի. այլազգը շատ է. և երևելի շէնք է Փաշային պալատը։ Կէս ժամ հեռու հարաւային կողմն է բարձր լեռան փոքրիկ և սուր. վրան կայ անառիկ բերդ չորս պարսպով շրջապատած. լեռան գլուխն է վերջի պատը. ամէն շրջապատ ունի դուռն. վերջի շրջապատն երկու դուռ ունի. մէջը կայ եօթը ջրհորք (Սառնիճ)։ Այս բերդն է Ճինովիզէն մնա-

ցած. որ ծառերը գոցելով աներևոյթ եղած էր. տեղացի Տէրէպէկլիները գտան նորոգեցին։ Արևե-լեան կողմն է գետն, որ Փաֆագոնիա կըսէ Արրիանոս։ Իսկ նաւահանգիստը անյաջող է ծանծաղ ըլլալուն համար։ Արևմտեան քթին վրա տեսանք սուրբ Նի-կողայոսի եկեղեցին յունաց քարաշէն բոլորակ՝ հին ժամանակէն մնացած. որ ուխտատեղի է քրիստոնէից։ Այս Գաւառ կըսվի Պոլեմոնեան պոնտոս. որ հին ատենը երևելի նահանգ էր. և Պոլէմոն Թագա-ւորին անուամբն այսպէս կոչվեցաւ. վասն զի ըստ Ստ-րաբոնի՝ Պոլէմոն և իր Թագուհին Պիւթոդորիս այս կողմս կը տիրէին մինչև Տրապիզոն, և մինչև Կողքիս կամ Փասը։

85. ՓԱՇԱ, տասնըութ մղոն հեռու է Ունեէէն. ունի լաւ նաւահանգիստ ձմերելու. որ է գետին բե-րանը. իրեք մղոն բացը փոքր կղզի կայ ապառաժ. որ կըսվի Պոռուշ ադասի։ Փաձային գետն է անուանի. որ հին ատենը Սիտոծա կըսվէր։ Ուր կը դնեն Պո-լամոն գետ. և կար հին քաղաք. այս գետ պզտի նա-ւեր կընան մտնել. հոն մօտ են ինքնաբուղխ տաք ջուր, բաղնիք, և հին եկեղեցի. որ կերևնայ թէ հին Պոլէմոն քաղաքին մնացորդն են. որպէս կը յի-շեն հիները, որ շինած էր գետին քով։ Վերջի ա-տեններս Փաձային մօտ փորեցին հին բերդ մի գը-տան, և պատին մէջ խորանի նման շէնքեր կան։ Իսկ ինը մղոն ասդին ցամաքէն հեռու ապառաժին վրա կայ հին բերդ, և մէջն եկեղեցի. որ կըսվի Այա գալէսի։ Կայ նաև ուրիշ հին բերդ արևելեան դին։

86. ԵԱՍՕՆ, ըստ հն. Եասոնի պռունիկ, տասնըութ մղոն հեռու է վէրինէն. ունի նաւ կենալու տեղ. թէպէտ առաջը քարոտ է։ Այս անունը Յասոնէն առած է, որ Արգոնաւորդներով հոս հանդիպեցաւ (36)։ Քթին տակը տեսանք հին վանք, կամ մեծ եկեղեցի Աստուածածնայ. նոյնպէս լեռան վրա հին բերդ Իսօրեան գալէսի։ Այս կողմս շատ լորամարգի կըլլայ. զի Ղրիմէն ասդին անցնելով կը հոգնին կիյ-նին. երբեմն ծովն հանդարտ գտնելով՝ զգուշութե՛ կիջնին մէկ թևով ծովուն վրա կը կըթընին հոգնու-

թիւն. կառնուն. և նորէն կըսկըսին երթալ (60)։

87. ՄՕՆԱ, ինը մղոն է Յասօնէն. որ ունի առանձին քիթ, և լաւ նաւահանգիստ. ուր իրեք տեղ նաւ կը կենայ ապահով, և շատ նաւեր կրնան ձմերել հոն. բայց գեղը վերն է. ունի խանութներ և աղբիւր։ Մօնայի քթին տակը տեսանք հին բերդ Կալէճիկ. նաև Պուճագ գալէ։ Արրիանոս ասդին կը դնէ Մելանթիոս, այսինքն Կարատէրէ։

88. ԲԻՐՂԷՆԳԻ աւանանոյն գոգին մէջն է Մօնայէն ասդին. ուր Արրիանոս կը յիշէ Կոտիորա քաղաք. որ Սինոպցիք հաստուած ղրկելով շինցուցեր էին. հոն հանգստացաւ Քսէնոփոն, ուր կար նաւահանգիստ. որ պիտի ըլլայ Մօնայի մօտ այս ծոցին մէջ։

89. ՊՕԶԹԷՓԷ, չորս մղոն ասդին է. ունի սար և լաւ նաւահանգիստ. լեռան վրայ հին եկեղեցի կայ սուրբ Գէորգայ. քովէն կանցնի գետ Պուճագ փէրէտ. ըստ Արր. Փարմատենոս։

90. ՕՐՏՈՒ, քսաներչորս մղոն հեռու է Մօնայէն. չունի լաւ նաւահանգիստ. ծովուն քով կայ հին բերդ-ապառաժին վրայ անառիկ, որ կըսվի Պօղազ գալէ. որուն առաջը ծովուն մէջ մեծ թնդանօթ մի ձգեր են։ Առաջ հոս բնակութիւն չի կար. մեր օրը ձեռամբ Մահտեսի Աւետիք տրապիզոնցի իշխանին՝ բնակութիւն շինվեցաւ ամենայն ազգաց։ Օրտուին լեռանը վրայ հին բերդին աւերակը կերևնայ. ուր երկաթ դուռ կայ, որ շատ սանդուխով վար կիջնի մինչև գետը։

Օրտուէն մինչև Պօլանձըր փազարի քսաներչորս մղոն է, ուր կան խանութք։ Այվասիլ քիթ մօտն է. որ ունի փոքր ծոց. ամառը կրնայ նաւ կենալ։

91. ՊԱԹԼԱՄԱ բերդ հին, այվասիլէն ասդին է. տակէն բարակ ջուր կանցնի։ Ասկէց ասդին դէպ 'ի Տրապիզոն սոխակ (Պիւլպիւլ) չանցնիր։ Ահա հոս է սահմանագլուխը Տրապիզոն նահանգին, որ կը հասնի մինչև Քէմէր (140)։ Ասկէ կըսկըսի Պոնտոս կապադովկիոյ. ուր մինչև Փլադանա ապահով նաւահանգիստ չըլլալով նաւերը շատ կը վտանգին արևմտեան հովէն. երբեմն մինչև Ապաղա տանի կը

ձգէ. ինչպէս զնեղ տարաւ Եղիկիա ձգեց սաստիկ ալէկոծութեամբ:

92. ՔԻՐԷՍՈՒՆ քաղաք, քառասունըվեց մղոն հեռու է Օրտուէն. ըստ հն. Քէրասուս, այսինքն Քիրէզ. որ ըստ Արր". Նախ Միլեսացիք շինեցին. որոնց տուրք կու տային քերէսունցիք. յետոյ Փառնաս որդին Միհրդատայ բերդը շինեց, կամ նորոգեց՝ Փառնակեա կոչվեցաւ. որ շինած է ծովուն մօտ բլուրին վրայ երկու ապառաժի միջոց: Ապառաժին վրայ հին բերդ կայ քանդված. որ Տրապիզոնի թագաւորները շինեցեր են:

Հին ատենը շատ վաճառականութիւն չի կար հոս, ինչպէս կերևնայ դրամէն. որուն վրայ Այծեմարդ մի կայ կախած. աջ ձեռքը ճրագ, ձախ ձեռքը հովիւի գաւազան. և միւս դին Մարկոսի Աւրելիոսի գլուխը. ուստի նշան է թէ փայտի, և ոչխարի առատութիւն կընէին: Քիրէզ պտուղն առաջ այս քաղաքը շատ ըլլալով Քիրէսուն կոչվեցաւ. որ ըստ Ամիանոսի հռոմայեցիք տիրեցին ետև Լուկուղոս տարաւ Հռոմ. և անկէ ետև Եւրոպա տարածուեցին քերէզի ծառն. և հարիւր քան տարիէն ետև Ինկիլթերա տարին:

Քիրէսուն երկու նաւահանգիստ ունի. մէկը արևելք Տէփրէֆաքոա լիմանի. մէկալը արևմուտք Իճա լիմանի. որ ձմեռն ապահով չեն: Իսկ սարին վրայ կայ լաւ բերդ հին. մէջը եկեղեցիներ կան: Քաղաքին մէջ շատ տուն, և խանութ կան. բնակիչներն են յն. հյ. և տճ. ընդ ամենայն հազար տուն կելլեն. ուր առաջ եպիսկոպոս կը նստէր. իսկ հայերը քառասուն տուն կան, ունին եկեղեցի ապառաժ քարէ փորած. և այս ապառաժին վրան է հին բերդը:

Այս եկեղեցին յունացմէ առին հարիւր տարի առաջ. և նուիրեցին սուրբ Սարգսին. որ առաջ էր Աստուածածնայ անուամբ. ծովուն քով կայ փոքր լիճ, ուսկից կելլէ Ագիդ կամ Հագըրդ և Այնիհուր քար. ունի շրջակայն լաւ պարտէզներ:

Քիրէսունի առջեւ, փոքրիկ կղզի Տէմիր գափուէն իրեք մղոն բացն է, որուն շրջապատն է իրեք մղոն.

վրան կայ վանք և եկեղեցի ։ Սրրիանոս այս կղզին կանուանէ Տոռէնծինիլս․ այսինքն արուէգ ։

93․ ՊՕՂԱԺԸԴ, իրեք մղոն ատղին է Պիրէուսնէն․ որ է լաւ նաւահանգիստ, և ունի փոքր քիթ․ նաւահանգիստն է իբր բերան, և իրեք նաւ կրնայ ձմերել ապահովապէս ։ Մօտ է հան Պէչիպուռնի, Պէշապ, և Նօլաղցի փաղարի․ որ փոքր աւաններ են․ երևելի բան չի կայ ։

94․ ՕՒՓՐԻ, ըստ հն․ Օէջիլա, տասնըութ մղոն հեռու է Պիրէուսնէն․ ունի նաւահանգիստ Պէչիպուռնիին տակը․ ուր հին բերդ կայ, և քաղէն ջուր կանցնի ։ Իսկ Նէգրիէ աւանը չորս մղոն ատղին է․ վերը ունի հին բերդ ։ Տոր վրան է Նաւհանօղ մատենին․ ուսկից շատ պղինձ կելլէ ։

95․ ԹՐԻՊՕԼԻ, ըստ հն․ Իոփճէօլի, տասնըութ մղոն հեռու է Օէփրէէն․ նաւահանգիստը փոքր ըլլալով քանի մի նաւ կրնայ ձմերել․ բայց բերանը քարոտ՝ և դժուար է մուտը ։ Պաղաքը ծովուն եզերքն ըլլալով գեղեցիկ երևցաւ մեզ․ բնակիչներն են․ յն․ հյ․ և տճ ։ Պաղաքին ծայրը Օէփրէի դէն տեսանք փոքր կղզի, որ կըսվի Պիլընտաշի․ մէջ տեղէն նաւ կրնայ անցնիլ ։ Պիլիսէ պուռնին մօտ է․ վրան կայ հին ժամ ։ Թրիպօլը իրեք քաղաք ըսել է․ որ իրեք մասն կը բաժնըվի, և իրեք բերդ ունի հընուց մնացած․ առջինը՝ Պալօրտաշ Կուլէ․ երկրորդ բերդն է սարին վրա ծովուն մէջ․ իսկ երրորդ բերդը Պերզոնա՝ իրեք ժամ վերն է․ որ է անառիկ ապառաժի վրա․ որուն մէջ քաջ կին մի Տէրիէրի Կըղի՝ վեց ամիս պատերազմեցաւ մեր օրը փաշային հետ, և մինչ անյաղթելի նման Ամազոնեաց (83) ։ Յետոյ դնաց փաշային հետ հաշտըվեցաւ քաջութեամբ ։ Այս ապառաժին վրա դուր է․ հին ատենէն մնացած ջրհոր (Սառնիճներ) կան ։ Այլազգն առնելու ատենը հոռոմները հոս սարիներով մնացեր են․ վարուցան ալ կղզիէն վրան ։ Նու այնչափ հոգնեցուցեր են Այլազգն, որ Պէթ ռամ անուն դրեր են իրենց․ որ եղեր է Պերզոնա ։ Սրրիանոսի ատենը իրեք մղոն ատղին կար Սոյէրա, այսինքն արծաթահանք․ ուր

մինչև հիմա անպակաս հանք կը գտնի։ Այս գաւառին կառավարիչն է Տէրմիշ գըզի քաջ տիկինը։ Արրիանոս Այիրային և Սեօրելէին մէջը կը դնէ հին բերդը Փիլոգալէ. որուն քովէն գետ կանցնէր։

96. ՀԱԼՔԱԼԱՎԱ ՓԱԶԱՐԻ, ինը մղոն անդին է. ուսկից կանցնի Խարշուտ գետ. վեց մղոն անդին է Սուլէզու աւանը. ուր կան բնակութիւնք և խանութք տաճկաց. իսկ ութ մղոն անդին է Շաուլի, Չաւուշլի, և տասը մղոն անդին Տիգկինէ փազարի։

Գարաղաշտան սոմնտոսի, Թրիպոլիէն աստին երկայն կերևնայ. բայց ծոց և նաւահանգիստ չունի. ուր ապառած տեղեր ըլլալով աւազակաց բնակարան է. բան չի տեսանք։

97. ՍԻՕՐԷԼԷ, ըստ Արր". Գօրալը բերդ, վեց մղոն անդին է հին ատենէն մնացած. ուր Իսչիւնձօղլի Ահմէտ փաշան քաղաք շինեւր էր. վերջը քանդեցին. ունի քիթ Սեօրէլէ դաղանի չորս մղոն անդին. ուր հիները կը դնեն Հերմոնասա. որ երկու քաղաք էր ըստ Ստրաբոնի։ Ասկէց կըսկըսի Խոռօգլի սարն երկննալ դէպ 'ի ծովը։

Աւանդութեամբ կը պատմեն, թէ այս կողմի ժողովուրդն էր Չըրը սէմիթխարէն. որ կըսվին Չէփնի. որոնք կռապաշտութենէ մնացած զարմանալի բաներ ունէին. տարին անգամ մի մեծ ուրախութեամբ այր և կանայք միատեղ խաղալով, և գիշերն ամէն լոյսը մարելով գարշելի բաներով կանցընէին, և հին կռապաշտներուն պէս առանց իրար ճանչնալու և առանց ազգակից և քոյր որոշելու կը խառնակէին գազանի նման։ Այս բանը հիմա վերցած է իրենց մէջէն. սակայն շատը նամազ չէյտեն. և արբեցութիւնն իբր օրինաւոր գործք համարելով շատ կարբենան։ Քեաթիպ չէլէպին կը պատմէ թէ՝ * Ազգ թուրքաց լազերուն հետ խառն կը բնակին, և լեզուն է թուրքերէն և պարսկերէն. որոնք են ըստ աղանդոյ պարսից ‖։ Անոր համար թէ լեզուներն տարբեր, և թէ սովորութիւններն շատ արտարոց տեսանք այս կողմի բնակիչներուն. որոնց սովորաբար մօրուքը կարճ, և ոտվընին բարակ է։

98. ՊԻՕՅՒՒՔ ԼԻՄԱՆ, վեց մղոն առջին է. ունի գետ և գեղեր. նաև հին բերդ Պուղա Գալէսի, որ ըստ յն. բանալի ըսել է։ Մօտ է հոն Չամլըգ և Փօլ աղբի փազարին. նաև Իսքէֆիէ փազարի. որ ունի գետ և խանութ։ Ասոնք փոքր տեղեր ըլլա-լով վաճառ կըլլայ. կերթան վաճառականներ այս կողմերէն։ Ետ տեսանք քիթ Զէյթուն պուռնի. ասոր վրան է հին բերդը։

99. ԽՕՌՕՋ ՊՈՒՌՆԻ, տասնըութ մղոն առջին է Կէօրէլէէն. և է մեծ սար Տրապիզոնի դէպ 'ի հիւ-սիս ծովը մտած Աղաղայի դէմ. որ հին ատենը Հեր-ըոն կամ Խէրսօն օռօ կըսվէր, այսինքն Արդազան լեռն. ուր կայ մեծ կուսատուն Աթենասայ, և գեղեցիկ պարտէզ։ Այս քիթ ապահով կընէ Աղշէգալէի և Փլադանայի նաւահանգիստներն արևմտեան հովէն, որ շատ վտանգաւոր է այս կողմերս. ծոցին մէջ այն երկու ապահով նաւահանգիստները կան. և փոքրիկ ինձիր լիմանի՝ քթին մօտ։ Արրիանոս Պրօտութէ նաւահանգիստ կը յիշէ այս կողմս։

100. ԱՂՃԷ ԳԱԼԷ, ինը մղոն առջին է. ունի նաւահանգիստ ապահով արևմտեան հովէն, և հին բերդ. որուն վրա արեան նշաններ կերևնան. զի առ-նըված ատենը շատ մարդ ջարդըվեր է, անոնց արիւնն է կըսեն։ Այս բերդ ծովուն մօտ քարերին վրա շի-նած ըլլալով՝ հեռուէն պատերը ճերմակ երևնալուն համար Աքճէ Գալէ ըսվեցաւ։ Կը պատմեն թէ Տրա-պիզոն առնըվելէն ետև այս բերդին բնակիչները եօ-թը տարի պատերազմեցան Օսմանցոց հետ, ետքը տվին բերդը. որուն քով տեսանք հին կարասներ հա-ղէն եղած. ուր առաջ բնակութիւն և այգիներ են եղած, հիմա արտ են. ունկից կելլէ լաւ թիւթիւն։

101. ՓԼԱՏԱՆԱ աւան, վեց մղոն առջին է Խօռօ-ղի ծոցին մէջ. որ կը նշանակէ բարտի (Գաւաք) ծառ. հին ատենը հոն կը պաշտէին այս ծառը. ո-մանք Փօլադխանէ կըսեն, այսինքն գործարան երկաթոյ։

Այս անուանի նաւահանգիստն ապահով և ընդար-ձակ ըլլալով՝ Փլադանա հին ատենէն 'ի վեր վաճա-ռատեղի է, դիրքը զուարճալի, երկիրը լաւ և պա-

բարտ. ուր շատ ձիթենի կայ, և ձէթն ընտիր է. ունի չորս հարիւր տուն, և վաթսունըչորս գեղ. յն. հյ. տճ. Ուր բաց 'ի քայքայած եկեղեցիներէն ուրիշ հնութիւն չի տեսանք։ Հոս կիրակի օրերը վաճառ (Պանայիր) կըլլայ. և մեծ առուտուր կըլլայ ամէն տեսակ ապրանաց։ Վերջի պատերազմիս ատենը մոսկովները նաւերով եկան փլադանա շատ զօրք հանեցին, որ առնուն Տրապիզոն. բայց պոնտացիք մեծ քաջութեամբ պաշարեցին, և բոլորը ջարդեցին։ Փլադանայէն աստին են Պալանիմա, Սէրէզ, և ուրիշ փոքր գեղերը։

Այս կողմերս շատ թութենի արտեր տեսանք, և ընտիր թութիւն կելլէ. որ կը տանին Ստամպօլ և Մոսկով։ Փլադանայէն վերն է Մաչգա, որ հարիւր յիսուն գեղեր են, ուր շատ մատուռներ կան աստին անդին. [illegible]ազգները հռոմերէն կը խօսին, և յոյներն են պղնձագործ. որոնք Սուլ. Մահմուտին օրը Կիւմիշխանայի տակը մտան. բայց Տէրէպէկին ինքնագըլուխ է, և ամէն դատաստան ինքը կը տեսնէ. ուսկից կելլէ ընտիր եղ, և պանիր. նաև քթան, և այլն։

102. ՏԷՎՐԷՆՑ, իրեք մղոն աստին ընդարձակ ծոց է, այլ չէ ապահով. ուր բարձր լեռան վրա տեսանք երկու ճերմակ սիւներ տնկած վրան չուանի նշան։ Աւանդութեամբ կը պատմեն թէ ծովը մինչև հոն ըլլալով առաջ նաւերը հոն կը կապեն եղեր. որ և կոչեցաւ Տէրվէնտ, այսինքն դռնափակ կամ կապան (5)։

103. ԱՅԱ ՍՕՖԻԱ, իրեք մղոն աստին զուարճալի բլուր է ծովուն քով, և բոլորտիքն են այլազգի տըներ. որ կըսվի Այա սօֆիա մահալլէսի։ Այս բլուրին չորս դին պարսպի մէջ առած է. թէպէտ հիմա շատ տեղը քակված է։ Երկայնութիւնը հարիւր քայլ չափեցինք։ Իսկ մէջ տեղն ուսելի դուռ ըլլալու համար բոլորտիքը մանր կամարներ շիներ են հաստատ քարաշէն, և վրան շիտկըցուցեր են։

Հոս այս շիտակ տեղն իբր կեդրոնի վրա կանգնած է՝ Այա սօֆիա եկեղեցին յունաց, մեծաշէն և պայծառ. որ Ալէքսիոս կոմնենոս նորոգեց. բայց բուն Յուստինիանոս կայսր շինեց կըսեն յանուն իմաստ

տութեանն աստուծոյ. ինչպէս զանգակատան խորանին կամարին մէջ Իմաստութիւնն աստուծոյ որդին միածին նստած կերևնայ:

Այս եկեղեցին այնչափ մեծագործ և ամուր շէնք է, որ տեղէ մի քար չէ ընկած, թէպէտ հոգ տանող չի կայ. ընդհանուր շէնքն է քառակուսի. իրեք կողմէն ալ կամարաւոր դաւիթներ ունի երկերկու մէրմէր սիւներու վրայ կայնած: Բայց արևմտեանն է կրկին դաւիթ. ուր է մեծ դուռն: Իսկ հարաւային դրան ճակատն ամենէն մեծագործ, և գեղեցիկ է. վրան զանազան քանդակներ կան՝ հրեշտակի, մարդու, և խաչի. նաև առիւծի գլուխներ. և վերն է կայսերական նշանն արծիւ: Եկեղեցին է յոնիական կարգով շինած՝ գրեթէ քառակուսի. խորանին տեղն ընդարձակ, գմբէթը բարձր և գեղեցիկ՝ չորս երևելի սեանց վրայ կեցած: Այս մէրմէր սիւները տասներկու կանգունէն աւելի են՝ ճերմակ, և տեղտեղ գունաւոր գեղեցիկ, չորսն ալ միակերպ: Յատակն ալ մէրմէր քարերով զանազան ձևեր ձևացուցած է. թէպէտ տեղտեղ աւրած է. և ուրիշ բան չի կայ մէջը. միայն Նամազի տեղ կայ հարաւային կողմն, որ առնըված ատենը ճամի ըրեր են:

Հիւսիսային կողմը եկեղեցիէն քիչ հեռու՝ կայ քառակուսի մատուռ հաստատ քարաշէն և պատկերազարդ. մէջը քառակուսի բաժնած է քառակուսի սիւներով և դռներով: Այնպէս հարաւային կողմը բլուրին ծայրը քառակուսի շէնք մի կայ քարաշէն. կերևնայ թէ պահապանի կամ ժամկոցի տեղ է:

104. Արևմտեան ծայրը բլուրին՝ քառակուսի զանգակատունը ամբողջ կեցած է բարձր և գեղեցիկ. որ երկու յարկ բաժնած է. առջի յարկն ելանք քարաշէն սանդուխով, որ է փոքր մատուռ սեղանով. իրեք քայլ կայ միջոցը. ամէն կողմը պատկերազարդ:

Զանգակատան բակին քով քայքայած տեղեր ըլլալով կերևնայ թէ հոն էր ուսումնարանը Տրապզոնցի Տիւքիկոս փիլիսոփային, որ Անանիա Շիրակացուն ատենը շատ ծաղկած էր յամի տեառն 661. թէպէտ Շիրակացին որ եկաւ՝ Տիւքիկոս Եւգի-

նէոսի վկայարանն էր. Թուի թէ յետոյ գնաց Այա-սօֆիա վասն զուարճալի տեղւոյն: Ուր ութը տարի կարգաց և փիլիսոփայ անուանեցաւ. Անանիա Շիրակացին. ինչպէս որ ինքը կը պատմէ. * Գնացի 'ի Կոստանդնուպօլիս.. ասացին ինձ ե՞ր յանձն առեր այնքան ճանապարհ աշխատիլ. և տիւքիկոս վարդապետն բիւզանդիոյ հուպ է առ մեզ 'ի ծովեզրն պոնտոսի, որ կոչի տրապիզոն լի իմաստութեամբ... ան-սպք բազում ճանապարհորդս եկեալ առ նա վասն հզաւր գիտութեան նորա: Այլև այժմ. [illegible] եղև մեզ փիլադր տարկաւագն հայրապետին կոստանդնուպօլսի և բազում մանկունս ածէր առ նա աշակերտութիւն... Իսկ երթեալ իմ գտի զնա 'ի վկայարան սրբոյն եզինեայ և պատմեցի... Ուրախեաց զիս որպէս զորդի իւր. և պարապեաց 'ի յիս զամենայն խորհուրդս իւր... և կեցի առ նմա զամն ութ, և ուսեալ հմուտ եղէ գրոց բազմաց, որք ոչ էին թարգմանեալ 'ի մեր լեզուս.. քանզի չիք ինչ գիրք որ առ նմա ոչ գտանէր: Ասաց թէ ես 'ի տրապիզոն քաղաքէ մանկութեամբ կացեալ 'ի դուռն յոհաննու զօրավարին.. և գտեալ զվարդապետ աթենայ իմաստասիրաց.. կացի առ նա յուսման ամս ոչ սակաւ և կատարեալ իմաստութեամբ դարձայ 'ի տեղիս ։

Արևելեան կողմէն կրակլոսի ընդարձակ հրապարակին ծայրը, որ կըսուի Պաղդօղ մէյտան. շատ զուարճալի տեղ է. քանի մի գմբէթաւոր հին շէնքեր կան տեղ տեղ մնացուցի նման. որ թէպէտ հաստատ շէնք են, բայց որոշ բանի չի կրցանք նմանցնելու: Երկու կողմէն պարտէզ ընելով հազար քայլ տեղ՝ քիչ մի նեղցած է. իսկ բուն հրապարակին երկայնութիւնը չորս հարիւր քայլ կայ. ուսկից ծովը կերևնայ: Ուր կայ թաղ տաճկաց և գապաղ մէյտանի Ճամին. որ Սիւլէյմանն պէկը շինել է կըսեն.

Արդ՝ փլադանայէն մինչև Տրապիզոն է 9. մղոն. Սինոպէն 453. իսկ Փէնէաէն 933. որ մինչև սահմանագլուխը Ռէմէր, կըլլայ հազար մղոն սատմկալէն (140): Սակայն մենք նաւավարի չափմամբ գըրինք Փէնէաէն մինչև Տրապիզոն 909. մղոն.

# Գ. ՄԱՍՆ ՍԵՒ ԾՈՎՈՒ

105. ՏՐԱՊԻԶՈՆ, է հին երեւելի մայրաքաղաք փոքր Ասիայի, և Կապադովկիոյ սեւ ծովուն վրայ շինած. որ Փլազանեայէն խիստ մղոն հեռու է։ Հին ժամանակը մեծ և բազմամարդ ըլլալով, ամէն տեղ հռչակաւոր էր, և վաճառականութեամբ ծաղկած. նաև կռատուններ էր ախտաւորեալ հեթանոսաց (112)։ Պլինիոսն և այլք կը հաստատեն թէ նախ Սինոպացւոց հասուած եկան այս քաղաքը շինեցին 2536. տարի առաջ՝ Եզեկիա Թագաւորին ատենը. ինչպէս կը պատմէ նաև Քսենոփոն. որ գնաց Տրապիզոն։ Սակայն Եւսեբիոս երեսուն տարի առաջ շինուեցաւ կըսէ, Յովսաթամ Թագաւորին օրը. Հռոմայի շինութենէն հինգ տարի առաջ։

Բերդը շինած է բլուրի վրայ երկայնաձև քառանկիւնի, որ ծովէն սկսեալ մինչև Պօղթէփէ լեռը կը հասնի հիւսիսէն դէպ 'ի հարաւ։ Այս հին բերդը սեղանի ձև ըլլալով ΤΡΑ'ΠΕΖΑ ԹՈՒԱ'ԲԻՋԱ, կամ ԹՈՒԱԲԻԶՈՆ կոչեցին։ Լաւ ՕՒԶԻՆԻՍ կըսէին. իսկ բնակիչները պոնտացիք էին։

Տրապիզոն կարած հին ստակներուն մէկ կողմը կայ Ապողոնին գլուխը. մէկալ կողմը նաւի գըլուխ և երկաթ այս խօսքով. ΤΡΑΠΕΖΟΥΝΤΙΩΝ, այսինքն ՏՐԱՊԻԶՈՆՑՈՑ։ Ասկէց յայտ է նախ՝ թէ անոր ատենը տրապիզոնցոց գլխաւոր կուռքն էր Ապողոն պաշտուած. երկրորդ՝ հին ատենը շատ վաճառականութիւն և շատ երթևեկութիւն կար նաւերու։

Աւանդութիւն է բնակչաց՝ թէ Յաբեթի ցեղէն Յաբէթ անուամբ մէկն եկեր առջի բերդը շիներ է. կարելի է թէ հայոց նահապետներէն, կամ Հայկայ որդիքներէն ըլլայ։ Մեր Խորենացին կը պատմէ թէ Վաղարշակ կարգի դրաւ Պոնտոս. և յետոյ երբոր Պոնտացիք գլուխ քաշեցին՝ Արշակ հայոց թագաւորը գնաց նորէն տիրեց, և սև Ծովուն քովեր

ձան կանգնեց յամի աշխարհի 3875։ Որ մի արձա-նին քովէն անցնելով նիզակը զարկաւ անանկ ուժով, որ նոյն քարին մէջ գամեց, որ յետոյ պոնտացիք կը պաշտէին՝ իբր գործ աստուածոց. բայց ժամանակէն ետև նորէն ապստամբեցան, և նոյն քարը ծովը ձգեցին։

Հին ժամանակը զանազան տէրութեանց տակն էր Տրապիզոն. յետոյ Միհրդատին ձեռքն որ անցաւ՝ թագաւոր ըլլալով կրկին Պոնտոսի՝ շատ ծաղկեցուց. անկէ ետև հռոմայեցոց անցաւ։ Ներոն Սեւերիանոս կայսր յաղթեց պարսից՝ Տրապիզոնին ալ տիրեց։ Ուստի Միհրդատէն ետև պոնտոսի թագաւորներն այնչափ չէին կրնար իշխել Տրապիզոնի. որովհետև հռոմայեցիք տարածվեր էին այս կողմերս։

Զոսիմոս կը պատմէ թէ Վալերիանոսի ատենը յամի տեառն 255. Գութարներն եկան պաշարեցին Տրապիզոն. որ թէև 'ի պահապաններէն տասը հա-զար զօրք օգնութիւն եկան. բայց իրենք անհոգ կե-նալով՝ թշնամիները գիշերանց բերդը մտան շատ մարդ ջարդեցին, և մեծագործ կռատունը լեցուն գանձով կողոպտեցին։ Մաքսիմիանոսի ատենն, որ տիրեց Կապադովկիոյ և Տրապիզոնի, շատ նահատակ-ներ եղան այս կողմերը Լուսիաս դատաւորին ձե-ռամբն. որ բռնեց Եւգինէոս Երևելին իր ընկերնե-րովը շատ տանջելէն ետև գլխատեց Տրապիզոնի մէջ (121)։ Ադրիանոս կայսր շատ բան շինեց Տրա-պիզոնի մէջ (120)։ Ադրիանոս տեսաւ հոն Ադրիա-նոսի արձանը. ինքն ալ ճերմակ քարէ արձան շինել տուաւ թագաւորին համար հանդերձ մակագրութ̄ե։ Փլաւիոս Յուլիոս Կոստանդին՝ թագաւոր կոչվեցաւ պոնտոսի, և Տրապիզոնի մէջ կուսանաց վանք շինել տուաւ, որ Սոփէֆլուխ կը կոչվէր. հիմա Ջամի է։

107. Իսկ Վաղենտիանոսի ատենը՝ Տրապիզոնի իշ-խանները անցան պարսից տէրութեան տակն, և շա-տը պարսիկ եղան։ Եւ Յուստինիանոսի ատենը՝ Բզա-դիոս պէկը Տրապիզոնի՝ գնաց Ստամպօլ քրիստոնեայ եղաւ, պատրիարգին թոռը կին առաւ, և թագա-ւոր պսակվեցաւ Լազիստանու։

108. Այս կայսր Յուստինիանոս շատ բան շինեց, նորոգելով Տրապիզոնի պարիսպը, ջրանցք շինեց, բերդին մէջ ջուր բերել տուաւ Պօղլըճապօյին կողմէն, և Պապախանայի դրնէն դուրս հանեց ջուրը։

109. Է Յովհաննէս կոմնենոս Պէրփիւրուժէն կայսեր ատենը Կաւրաս ապստամբելով յամի տեառն 1120 Տրապիզոն ստնակոխ եղաւ. մինչև որ Կոմնաւ Տրապիզոնցին թագաւոր եղաւ լազիստանու։ Անկէ ետև Տրապիզոն ինքնագլուխ թագաւոր կը նստէր։

110. Ալէքսիոս կոմնենոս յամի տեառն 1204. Ֆռէնկներն Ստամպօլ առնելէն ետև կայսր կոչուեցաւ Տրապիզոնի։ Ասղաւ որ վիշապ մի զարկաւ կըտրեն իր ձեռքով. յիշատակը մնալու համար պղնձէ վիշապ շինել տուաւ Օրթահիսարի աղբիւրին վրայ դրաւ, որ մինչև հիմա կայ և տեսանք։ Իսկ 1260ին Միքայէլ Պալէոլոկ կայսր՝ երբոր միացաւ լատինացոց հետ՝ Յովհաննէս կոմնենոս գլուխ քաշելով՝ ինքնակալ կայսր կոչեց զինքն Տրապիզոնի։

Ասանք որդոց որդի նստան մինչև Յովհաննէս կայսր։ Ասոր օրը Մինապու Շաթիր պէկը Տրապիզոնի վրան եկաւ. յետոյ հաշտութիւն ըրին՝ տարուէ տարի երկու հազար ոսկի տուրք տալով Օսմանցոց. զի անատենը Ստամպօլ առնուած էր։ Այս թագաւոր մեռաւ 1456ին։

111. Դաւիթ պզտի եղբայրը տեղը նստաւ չորս տարի։ Բայց Սուլթան Մէհէմմէտ 1461ին եկաւ երեսունեւերկու օր պաշարեց առաւ Տրապիզոն. և բռնեց Դաւիթ թագաւորն իր ընտանեօքն Ստամպօլ տարաւ. յետոյ դուրս ղրկեց մեռցուց. և այսպէս վերցաւ Կոմնենոսներուն թագաւորութիւնը 257 տարի տևելէն ետև։ Ասոնց ատենը շատ երևելի քաղաք էր երևելի մարդիկներով. անկէ ետև քանի գնաց անշքացաւ ամենայն կողմանց, և հին ազնուութիւնը վերցաւ։

112. Հին ատենը տասն հազար զօրքով Տրապիզոն գնաց Քսենոփոն, և ամիս մի կեցաւ Իքսիդիս գետին քով զոհ ընելու համար Դիոսի և Հերակլեսի. ուր խաղեր ալ կը խաղային յամի աշխարհի 3615։

Արրիանոս հոն տեսեր էր Ադրիանոսին արձանը, և տաճարը կուռոց (134)։

Այն բերդը կրկնապարիսպ էր, ինչպէս կը պատմէ Զօսիմոս. Հիմակուան բերդն անոր տեղը շիներ են, ըստ որում քարերէն և սիւներէն յայտնի է։ Այնչափ զօրաւոր էր որ մերձակայ ազգերը իրենց հարստութիւնը հոն կը պահէին։ Շատ տեղ ապառաժի վրայ շինուած է պարիսպը, և խրամները տեղ տեղ լայն և խոր են։ Բերդին շրջապատը մէկ ժամէն աւելի կը քշէ։

Երեք կը բաժնուի բերդը. Աշաղի հիսար, Օրթա-հիսար, Գուլլէ. ուր կը պահեն զէնքերը. առաջ հոն էր կայսերաց գահը. ետքը միջնաբերդը փոխեցին. ինչպէս տեսանք գահին տեղը։

113. Գուլլէ կամ Իչքալէլեր, է վերի գլուխը և ծայր բերդին, որ աւելի բարձր ըլլալով կըսուի Եօգարի հիսար. և Գօզթէփէ լեռան արևմտեան կողմէն կըսկըսի կը հասնի մինչև Միջնաբերդը. առաջին է ընդարձակ դաշտ, որ կըսուի Գուլլէդօյ։ Այս բերդին ծայրը նեղ կը վերջանայ. պատերը լայն են. և զարմանալի բազմապատոյտ ճամբաներով իրարու մէջ պարիսպներ են. և միջոցները խրամներ կան, ընդարձակ տեղ. ուր պարիսպներէն 'ի զատ ուրիշ բնակարան չի կայ. կերևնայ թէ ամրութեան համար այսպէս շիներ են։

Այս բազմապատոյտ խրամներուն մէջ փորած տեսանք. զի Եւրոպացիք տէրութեան հրամանաւ գանձ գտնելու համար փորեր են. բայց պարապ ելեր են։ Անկէ ետև կըսկըսի բնակութիւնը Գուլլէին. բայց վարը ներքնատան պէս զարհուրելի քարաշէն տեղեր կան, ինչպէս տեսանք. որով կերևնայ այս բերդին հնութիւնը. տեղ տեղ ալ պարապին մէջ խորանի նման բաներ կան. գրեթէ ամէն տան մէջ հին ատենէն մնացած շէնքեր, և պահարանի պէս տեղեր կան. մէրը աւրած, մէրը դեռ կան։ Ներսի ծայրն աւելի բարձր ըլլալով կրկին սանդուխով վեր ելանք. ուր է մեծ աշտարակ քառանկիւնի. ուսկից կը նետեն թընդանօթ. և առջևէն կանցնի Գուզզուն տէրէ։ Մա-

հապատները ներքնատանց մէջ կը խեղդեն. և գլուխնին բերդին դրան առաջը կը դնեն. ուր որ տեղ կայ շինած.

Այս բերդին մէջ քիչ բնակութիւն կայ. և շատը պահապան են բերդին, որ կըսվին Պէշլի. մի Սուլ. Մէհէմմէտին ժամանակէն դրված են, և օրն հինգտակ կառնուն. անոր համար ըսվեցան Պէշլի. որոնք Խրտբէլէզլէն մինչև Խասրըմ ամէն գիշեր պարիսպներուն վրայ պտըտելով կը կանչեն Եա՛հ փուր ալլահ. այսինքն Աստուած մէկ է: Ասոնք առաջ շատ ազատութիւն ունէին և շատավոր էին. հիմա այնչափ չեն: Ծերերը կը պատմեն թէ առաջ Ապագայի կողմէն գիշերանց աւազակներ կուգան կը կոխեն եղեր քաղաքը՝ խածապա նաւերով. Պէշլիներն իմացում տալով քաղաքացիք բերդը կը փախչէին կազատէին (139): Հոն է Պոսլըք համամ, նաև Իմարէթի համամ իմարէթին կողմը. որ է շատ երևելի հին շէնք ընդարձակ՝ զանազան խուցերով զատված, և մեծամեծ սիւներով և քարերով շինած՝ հանդերձ մեծ գմբէթով. կը կարծըվի թէ յունաց ատենէն մնացած է, և այլազգը ձեռք փոխեր բաղնիք շիներ է: Այս բերդին դրսի դուռն է հարաւային կողմն, որ կիջնի Պուզգուն տէրէն (118):

114. Օրթաքէօյ, այսինքն միջնաբերդ, որ անմիջապէս Եէրքընաբերդէն կըսկըսի. ուսկից պարսպով և դրնով զատ է. երկու բերդին մէջ տեղն ըլլալով դիրքը դուր է, և կը հասնի մինչև վարի բերդը. բայց կրկին պարսպով, և երկաթ դրներով զատ է. իսկ արևմտեան կողմն է Ծագանոս գարուսի. և արևելեան կողմը՝ Պաղարխանա գարուսի: Միջնաբերդին մէջ կան բաղնիքներ, երևելի պալատներ, և շատ անսեր խանութներ, նաև ճամիներ. կան որ քաղաքն առած ատենը շիներ են. կան ալ որ եկեղեցի էին առաջ. ինչպէս է Օրթահիսար ճամին, Եաւավուր համամին և այլն: Արևելեան կողմն է հին պալատը Փաշային. որ է ընդարձակ և բարեդիր, չորս կողմն են խուցերը. սակայն հնութիւն չի կայ: Իսկ հիմնական պալատն է մեծաշէն՝ միջնաբերդին

գիմացը կէյնի Իսմարէթի դրանը մօտ՝ վարի բերդէն ծայրը. որ էր պալատ բերդակալ իշխանին։

Օրդանէսար ճամբէ, մէջ տեղն է բերդին փառաւոր և մեծագործ շէնքը. որ էր յունաց եկեղեցի. և կրսվէր ΧΡΥΣΟΧΕΦΑΛΟΣ ΠΑΝΑΓΙΑ այսինքն ՈՍԿԵԳԼՈՒԽ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ. կերևնայ թէ Յուստինիանոսի ատենը շինած է, և Ալէքսիոս նորոգեր է. թէպէտ յիշատակարանը չի գտանք։ Տաճարին ընդհանուր ձևն է ահաւոր և մեծաշէն. աւագ խորանին տեղն է ընդարձակ և պայծառ՝ բոլոր մէրմէր քարերով պատած պատերը և յատակը. հարաւային կողմն է թագաւորին գահն աւանդատան կողմը. իսկ աւանդատունն է կամարաշէն գեղեցիկ հարաւային կողմը. որուն մօտն է Միհրապն փառաւոր։ Վերնատունն է քարաշէն մեծ. վերնայարկին չորս կողմը կամարներով սրահներ ձևացած են, և գրներով զատված են։ Եկեղեցնայ մէջ տեղն է բարձր գմբէթ զարմանալի. և բոլորտիքը վանդակաւոր վերնատուն ըլլալով վերնայարկէն ճամբայ ունի ելլելու. որ է մեծ կաթուղիկէ, և իբր երրորդ յարկ տաճարին. ուր վարպետութեամբ շինած լուսարաններ կան շրջանակն, որ կը լուսաւորեն վերէն վար։

Այս եկեղեցի իբր իրեք մասն կը բաժնուի. առջի մասն է խորանին տեղը հանդերձ աւանդատնով և գահով. ուր կան լուսարաններ արևելեան կողմն. հիւսիսային կողմն է քարաշէն նեղ սանդուղքն երկրորդ յարկն ելլելու։ Անկէ ետև կը յաջորդէ աւանդատան դրնէն բուն եկեղեցնայ մէջն լայն և ընդարձակ. որուն վրայ է մեծ գմբէթը. և հիւսիսային կողմն է մեծ դուռն. ներսն երկու կողմը երկու մեծամեծ սիւներ կան հին մէրմէր. կերևնայ թէ կուռատանը սիւներէն են. այս դրնէն դուրսն է գեղեցիկ գաւիթը։ Իսկ վերջի մասն է՝ արևմտեան կողմն տաճարին, և վրան է վերնատուն. որ է նոյն շարունակութիւն տաճարին սալայատակ. ուր է արևմտեան դուռը, ասկից լաւ կերևնայ բոլոր ընդարձակութիւն տաճարին. որուն երկայնութիւնը հարիւր յիսուն ոտնաչափ կայ, և լայնութիւնը յիսունէն աւելի է։

Վերնատունն է կանանց տեղ ընդարձակ և լայն. ունկից երկրորդ յարկը կերթայ. և երկու կողմէն եկեղեցնայ մէջ կը նայի. և անկէ երրորդ յարկը կելլէ։ Այնպէս մակաբերեցինք, թէ այս երկրորդ յարկը մեծամեծ տիկիններու տեղ է թագաւորական զարմէ. ուր դրներով զատ են իրարմէ. իսկ բուն վերնատունը ամէն հասարակ կանանց տեղն էր։

Աւագ խորանին կռնակը բարձր պատին վրայ տեսանք դրուած աւետման պատկեր Մօզաիքա մանր գունաւոր քարերով շինած ձախակողմն խորանին. աջակողմն ալ կար՝ խանգարեր է, բայց տեղը կերևնայ։ Եկեղեցնայ առջին է ընդարձակ հրապարակ քարայատակ. ուր կան բոլորտիքը խանութք, ուսումնարան, աղբիւր, շատրուան, և ջրհոր բարեջուր՝ հին ատենէն մնացած։ Աղբիւրն է արևելեան կողմն անձև շինած. որուն վրան է պղնձէ վիշապն, որ Ալեքսիոս կայսր դրեր է (110)։ Իսկ ջրհորն է հիւսիսային կողմն. որուն առաջը տեսանք միակտուր աւազան. որ էր գլուխ հին մեծ յոնիական սեան. որ հին շէնքերէն մնացած է, և ետքէն մէջը փորեր հոն դրեր են։

Արևելեան կողմն հրապարակին՝ տեսանք քառակուսի հին շէնք մերմերէ՝ սիւներու վրայ շինած. նոյնպէս Ճակատը մերմեր խաչազարդ. շէնքին կէսը հոն տան մէջ մնացեր է. կերևնայ թէ առաջ բոլոր հրապարակ էր մինչև փողոցը, և ժամատունը միւս կողմն էր։ Իսկ արևմտեան մասը շէնքին՝ հրապարակին վրայ է. ուր գտան ետքի ատենները մարմին նահատակի. թուի թէ հոն էր գերեզման մարտիրոսաց, և այն մարմին Եւգինեանցը պիտի ըլլայ (118)։ Ինչպէս կայ նաև արևելեան կողմն տաճարին՝ Օազանոսի դրան մօտ կամարաշէն մատուռ, ուր կերևնայ դագաղ. կըսեն թէ մէջը կայ նահատակի մարմին. բայց այլազգը պատուով կը պահէ թէ այս, և թէ սիւնազարդ շէնքին մէջինը։ Ուր դրեր են դագաղ, և վրան այլազգերէն գիր. որ հրապարակին մէջէն կարդացինք այսպէս. ՍՈՒԼԴԱՆ ՂԱԶԻ ՄՈՒՀԱՄՄԷՏ ԽԱՆ ԻԳՆԻ ՄԻՒՐԱՏ ԽԱՆ ՀԻՃ. 865։ Որ է Սուլ. Մէհէմ

մէտ. և այս գրուածը քաղաքն առած ատենը գրեր են 1461 ին։

Միջնաբերդը ներքնաբերդէն շատ մեծ է. և ձևն է իբր քառակուսի. ուր մեծամեծ տներուն մէջ կան մատուռներ, և քարաշէն տեղեր։ Զարմանալի շէնք է բաղնիքն, որուն մեծ մասը գետնին տակն է. կերևնայ, թէ հին ատենի բան է. այլազգը զատեր երկու բաղնիք ըրեր է. անոր համար կըսվի Չիֆթէ համամ։ Հոս մօտ է հիւսիսային դուռը միջնաբերդին, ուսկից կերթայ վարի բերդը։ Գրեթէ ամէն դռները բերդին՝ ջուխտ են և աշտարակներով պատսպարած են. նաև պարիսպները բարձր ըլլալով՝ աշտարակ ձևացած են։ Զաղանոսի դրան մօտը բանտ ըլլալուն համար ըսվեցաւ Զընտան գաբուսի. կերևնայ թէ առաջ տաճարին հրապարակը մինչև հոս կը հասնէր, որուն դուրսն է խոր խրամ։ Ահա այս դռնէն կըսկըսի մեծ կամուրջը և կը հասնի մինչև Իմարէթին դուռը, և Աղէքսիոսին աշտարակը։

Այս արևելեան և արևմտեան երկու խրամները շատ ամրութիւն տվեր են բերդին. ուստի արևմտեան կամուրջն իբր պարիսպ եղած է վարի բերդին. ուր միայն վարը դրան պէս միջոց կայ, ուսկից կանցնի գետակը։ Ըսուի թէ քաղաքն այս կողմէն առնըված է. և մեծ պատերազմն Պապագ մէյտանին մէջ եղած է. ուստի այս պարսպին դուրսը գերեզմաննոց է այլազգաց։ Հոս կը պատերազմէր նաև երևելի փաշան Մուր. Մէհէմմէտին՝ Զաղանոս անուամբ. որուն համար այս դուռը կոչվեցաւ Զաղանոս գաբուսի (118)։

115. Իսկ արևելեան դուռը միջնաբերդին նոյնպէս կրկին ըլլալով՝ դրսի դրանը վրան շինած է պահապանի տեղ. և նոյն դրանը շէմը դրած է հին շէնքերէն ելած սիւն մի, որ մաշած է. ճակատը կերևնայ յիշատակարանի տեղ. և այս երկու դրան միջոցը բարձր պարիսպներով ամըրցած է։ Ներսի դրանը քովն է բարձր կամար՝ հանդերձ դրան վրայով. այս կամարներուն վրայ շինած էր առաջ փառաւոր եկեղեցի յունաց, ուսկից ծով ցամաք կերևնայ։ Խորանին տեղը դեռ կեցած է արևելեան կողմն. և քարա-

չէին սանդուխով վեր կելլէն. ունի վարը բակ։

Այս աքանչելի քարաշէն եկեղեցի՝ զանազան խուցեր բաժնելով՝ հիմա դատաստանարան ըրեր են. ուր կը նստին այլազգ կարգադրողներ։ Պատպախանայի այս ներսի դրանը ձախ կողմն է դրսի կողմանէ՝ յիշատակարանը Յուստինիանոսի կայսեր. որ Պուռունըֆօր վերջի տողը չի կրցաւ կարդալու. նաև տեղ տեղ աւլաւ չի հանելով սխալ տպեց, անոր համար չի թարգմանեց։ Արդ ահա ամբողջ յիշատակարանը հանդերձ թարգմանութեամբ. որ է հազար իրեքհարիւր երսունըվեց տարուան գիր՝ ձերմակ քարի վրա փորած։

ΕΝ ΟΝΟΜΑΤΙ ΤΟΥ ΔΕΣΠΟΤΟΥ ῾ΗΜΩΝ
ΙΗΣΟΥ ΧΡΙΣΤΟΥ ΘΕΟΥ ΗΜΩΝ, ΑΥΤΟΚΡΑ
ΤΩΡ ΚΑΙΣΑΡ ΦΛΑΒΙΟΣ ΙΟΥΣΤΙΝΙΑΝΟΣ ΑΛΑ
ΜΑΝΙΚΟΣ ΓΟΤΘΙΚΟΣ ΦΡΑΓΚΙΚΟΣ ΓΕΡ
ΜΑΝΙΚΟΣ ΑΤΤΙΚΟΣ ΑΛΑΝΙΚΟΣ ΟΥΑΝ
ΔΑΛΙΚΟΣ ΑΦΡΙΚΟΣ ΕΥΣΕΒΗΣ ΕΥΤΥ
ΧΗΣ ΕΝΔΟΞΟΣ ΝΙΚΗΤΗΣ ΤΡΟΠΑΙ
ΟΥΧΟΣ ΑΕΙΣΕΒΑΣΤΟΣ ΑΥΓΟΥΣΤΟΣ
ΑΝΑΝΕΩΣΕΝ ΕΝ ΦΙΛΟΤΙΜΙΑ ΤΑ ΔΗ
ΜΟΣΙΑ ΚΤΙΣΜΑΤΑ ΤΗΣ ΠΟΛΕΩΣ
ΣΠΟΥΔΗ ΚΑΙ ΕΠΙΜΕΛΕΙΑ ΟΥΡΑΝΙΟΥ
ΤΟΥ ΘΕΟΦΙΛΕΣΤΑΤΟΥ ΕΠΙΣΚΟΠΟΥ
ΙΝΔ. Γ. ΕΤΟΥΣ ΤΠΓ.

ՅԱՆՈՒՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ ՄԵՐՈՅ, ԻՆՔՆԱԿԱԼ ԿԱՅՍՐ ՓԼԱՒԻՈՍ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ԱԼԱՄԱՆԱԿԱՆ, ԳԹԱԿԱՆ, ՓՐԱՆԿԱԿԱՆ, ԳԵՐՄԱՆԱԿԱՆ, ԱՏՏԻԿԵԱՆ, ԱԼԱՆԱԿԱՆ, ՎԱՆԴԱԼԱԿԱՆ, ԱՓՐԻԿԵԱՆ, ԲԱՐԵՊԱՇՏ, ԲԱՐԵԲԱՂԴ, ՓԱՌԱՒՈՐ, ՅԱՂԹՕՂ, ՅԱՂԹԱՆԱԿՕՂ, ՄՇՏԱՍԵԲԱՍՏՈՍ, ՕԳՈՍՏՈՍ, ՆՈՐՈԳԵԱՑ ՊԱՏՈՒԱՍԻՐՈՒԹԵԱՄԲ ԶՀՐԱՊԱՐԱԿԱԿԱՆ ՇԻՆՈՒԱԾՍ ՔԱՂԱՔԻՍ ՋԱՆԻՒՔ ԵՒ ՎԵՐԱԿԱՑՈՒԹԵԱՄԲ ՈՒՐԱՆԻՈՍԻ ԱՍՏՈՒԱԾԱՍԷՐ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ. ՚Ի Գ. ԸՆԴԻԿՏԻՈՆԻ. ՅԱՄԻ 483։

116. Սարի բերդը միջնաբերդէն զատուած է հաստատ պարիսպներով, և կրկին երկաթ դռներով. Նմանապէս միջնաբերդը ներքնաբերդէն զատուած է երկաթ դռնով. դրանը մօտ կայ կամար քարաշէն, որ կըսուի ՙՊէնէր ալթը։ Բերդ՝ վարի բերդը միջնաբերդին միանալու տեղը նեղցած է. իսկ Օղանոսի դռնէն մինչև արևմտեան պարիսպն է լայնութիւն վարի բերդին. որով միջնաբերդը արևմտեան կողմէն վարի բերդին մէջ մտած է. և դրսի թաղը կըսուի Տէրէ մահալլէսի, որ կը հասնի ծովը։

Ծովուն կողմէն վարի բերդին լայնութիւնը երեք հարիւր քայլ չափեցինք. որ է հիւսիսային կողմը. պարսպային լայնութիւնը տասուերկու քայլէն աւելի է տեղ տեղ. ուր կրկին քարաշէն ամրդուխով վեր ելանք։ Արևելեան ծայրը տեսանք պարսպին մէջ փոքրիկ մատուռ. ուր հիմա պատերազմական բաներ կը դնեն։ Այս պարիսպը կը շարունակի բերդէն դուրս երկու կողմէն, և կը հասնի ծովը. և անկէ կը շարունակէ նաւահանգստին շէնքը ծովուն մէջ մղոնի չափ երկու կողմէն։ Այս ահագին պարիսպը զատուած ըլլալով բերդին պատէն նեղ ճամբայ բացված է, և կըսուի Պուրճ. որ պարսպներէն բուրգ կամ աշտարակ ըսել է. անկէց կանցնի Սօլօղէն արուարձանը։ Հոս առաջ կար մեծ աշտարակ, որ կործանած է. ինչպէս կերևնան աւերակները, և ահագին հիմն արևելեան դին։

Այսպէս միւս ծայրէ պարիսպն ալ զատուած է բերդէն, և անանկ ծուռ հաստատ կեցած է. զի քարերն անանկ միացեր են իրարու հետ, որ իբր միակտուր եղած են։ Այս ամբարտակ կերևցնէ, թէ ուրիշ շէնք ալ կայ եղեր պարսպին ծայրը. ուր դրան կամ պատուհանի կամար կերևնայ բարձրէն. որուն մօտ է Սօլթղայեն դուռը։ Այս միջոցն է սև աւազուտ ընդարձակ՝ բերդին առաջն. ուր ձմեռը նաւ կը քաշեն. ասկից կանցնի Իշկելէպօզ գետակը. և հոն է մոլոզին դուռը. և Թնդանօթներ կան դրանն առաջը ծովուն դէմ հանդերձ պատնէշներով։

Սարի բերդը միջնաբերդէն շատ ընդարձակ է.

ուր կան շատ տներ, շուկաներ, խան, աղբիւրներ, ջամի, ուսումնարան, բաղնիք. նաև տներուն մէջ մատուռներ, և այլն: Ան ունի չորս դուռ. մէկը արևելքէն, մէկը արևմուտքէն, մէկը հիւսիսէն, մէկալը հարաւէն. բայց հարաւայինն է դուռ միջնաբերդին երթալու. իսկ արևմտեան դրան կողմն է ներքևարանն հնաշէն կամարակապ, և կրկնայարկ. վրան քարաշէն՝ իբր վանք է. տակն է կամարաշէն տեղ, երկու կողմէն հին մերմէր սիւներու վրա շինած հաստատուն. որ շատ բարձր պիտի ըլլայ. վասն զի մէջը հող լեցուցած է մինչև վերնախարիսխը սիւներուն, ուստի և հաստատ է գետնին. զի խորը շինած էր շէնքը, որ շատ հին կերևնայ. կարելի է, թէ հին ժամանակը քուրմերու տեղ էր, յետոյ ուրիշ բան շիներ են յունաց ժամանակը. զի որոշ բանի չի կրցանք նմանցնելու: Դրսի պատին վրա տեսանք հին գիր յունարէն, շատ տեղն աւրած. որ է 513 տարուան յիշատակարան յոյն կայսերաց: Այս շէնքին մօտ դէպ 'ի հիւսիս կայ քառանկիւնի աւերակ հանդերձ հրապարակաւ. որ կըսվի Մէջիտ ալանի:

Այս բերդին վերի ծայրն է հիմնակեան գեղեցկադիր պալատը փաշային. որուն մէկ կողմէն կանգնի դետակը, մէկալ կողմն է արևմտեան պարիսպը բերդին. իսկ հարաւային կողմն է Իմարէթի դուռը. ուր կան մեծամեծ ամբարտակներ, և աշտարակ, որ ամրութեան համար շինած են յունաց ժամանակը. նաև վրան եղելու ջամիայ կայ: Հոն մօտը տան մէջ տեսանք աւերակներ, և քայքայած տեղեր. որ է ներսի կողմն արևմտեան պարսպին. ուր բարձր ըլլալով բոլոր ծովու տեսքն է, և միջնաբերդին բարձրութեանը կը հաւասարի. ուսկից կըսկըսի մեծ կամուրջը Օսմանոսի դրան, և կը հասնի մինչև բերդին դուռը:

117. Ընդհանուր ձևը Տրապիզոնի բերդին կը նըմանի սիրամարգի. զի վարի բերդն աւելի ընդարձակ ըլլալով պոչին նման բացված է, և կը հասնի միջնաբերդը. որ արևմտեան կողմէն քիչ մի ներս քաշվե-

լով՝ մարմինին կը նմանի . իսկ ներքնաբերդն է նման պարանոցին . որ շեղ կը վերջանայ աշտարակն , որ է իբր գլուխ ։ Նաեւ դիրքը բերդին կերեւցնէ , թէ հին շէնք է , և տարածեալ ըլլալով մեծագործ կերեւնայ՝ գոլով երկու կողմէն խրամներ և հրապարակներ ։ Այլազգները Թոռաբէգեան բառը չգիտնալով Թոպղուր-ղօղեան սատուգաբանեցին բերդին անունը՝ յունաց զօրքն աւըրվելուն համար ։

118. Բերդին ներսի դռներն իրեք են . իսկ դըր-սինները վեց , կամ վեց ջուխտ են . որ ծովէն սկըս-եալ առաջին դուռն է Մոլող գաբուսի , որ է հիւսի-սակողմն ծովահայեաց . երկրորդ՝ Մօնըղա գաբուսի՝ ա-րեւմտեան կողմը . երրորդ՝ Օղլանու , կամ Օքնդան գաբուսի՝ նոյնպէս արեւմտեան կողմն . չորրորդ՝ Պօսլը գաբուսի՝ հարաւային կողմը . ուր ներքնաբերդը մըտ-նելու ուրիշ երկաթ դուռ կայ . դուրսն ալ լեցված փոքր դուռ կայ . որ բերդն առնըված ատենը անէծ-քով փակեր են՝ կըսեն . հինգերորդ՝ Պաղըխանա գա-բուսի՝ արեւելեան կողմն . վեցերորդ՝ Ախըր կամ Մօլ-խանէ գաբուսի՝ նոյնպէս արեւելեան կողմն ծովուն մօտ . դրանն առաջը քարաշէն կամուրջ կայ, տակէն գետա կը կանցնի , և վրան խանութներ կան ։

Եօթներորդ դուռ կը համարի Իմարէն գաբուսի հա-րաւային կողմը վարի բերդին . որ է երկրորդ դուռ Օղլանուին . քովը կայ մեծ քառակուսի աշտարակ , և բարձր են պարիսպները . այս աշտարակին դուրսն հարաւային կողմը կայ յունարէն յիշատակարան . որ բարձր ըլլալով այսչափ կրցանք կարդալ . ԱՅՍ ԱՇ-ՏԱՐԱԿ ԱԼԷՔՍԻՈՍ ԿՈՄՆԵՆՈՍ ՇԻՆԵՑ ։ Ասկէց մին-չև Օղլանու դուռն է ընդարձակ և խոր խրամ . վրան բարձր և մեծ կամուրջ . որ երկու կողմէն մին-չև կէսը քարաշէն է շատ հաստատ՝ իսկ մէջ տեղը փայտով շինած . որ պատերազմի ժամանակ կը վեր-ցընեն եղեր . ուստի այս կողմէն ապահով կը մնար բերդը . վի պարիսպը ոչ միայն է թանձր և հաստատ , այլև շատ բարձր է հոն՝ պատճառաւ խրամին ։ Այս կամուրջին տակէն կանցնի փոքր գետ , որ տեղացիք Իչկէլէպօզ կը կոչեն ։

Այս խորանին համեմատ լայն և խորունկ խորամ կայ Պապախանայի դրան առջին. վրան նոյնպէս մեծ և բարձր կամուրջ կայ հաստատ քարաշէն, մէջ տեղը փայտաշէն. վրայէն կանցնի ջուր. Յուստինիանոսի ջրանցքէն (108), և տակէն գետակը Պուղղուն տերէ. ուր կը բանին խաղախորդք (Պապախ): Հոս մօտ տեղը տան մէջ մատուռ ըլլալով ժամանակով մէջը գտան մարմինք սրբոց կըսեն. և իմացվելով այլազգին առաւ այլևայլ տեղեր դրաւ կը պատուէ (114): Կը կարծըվի, թէ են Տրապիզոնի նահատակներուն մարմինը. Եւգինէոսի, Մակարիոսի, Վաղերիոսի, Կանդիտոսի, և Ակիւղասայ:

Այս անուանի բերդին հին ատենի նշանն է նաւի երկաթ. Թուի թէ հին բնակիչները քարաշէն նաւահանգիստը շինելէն ետև այս նշանը դրին՝ շատ նաւեր հոն յաճախելուն համար (120). ուստի թէ բերդը և թէ բոլոր քաղաքը հին ատենէն 'ի վեր շատ փոփոխութիւններ տեսեր է. և շատ թագաւորներ շէնքեր շիներ և նորոգութիւններ ըրեր են. անոր համար մինչև ցայժմ հաստատուն է բերդը. և տներն են ամուր քարաշէն, թէպէտ շատ բարձր չեն, մանաւանդ քրիստոնէից. որոնք բերդին մէջ տուն չեն կրնար դնել և բնակիլ:

119. Իմարէթ, արևմտեան կողմն է բերդին՝ Պուլղէին դիմացը, և Օղանոսի երկրորդ դրանը մօտ. որ նոյն տեղին համար ըսվեցաւ Իմարէթ գաբուսի: Ուր կայ բլուր և վրան շինած է Իմարէթն, որ կը նշանակէ վանատուն, աղքատանոց, և ուսումնարան: Այս շինուած պարսպապատ՝ ունի երկու դուռ. մէջ տեղն է ձամին փառաւոր և մեծաշէն գմբէթաւոր. մէջը պայծառ և լուսաւոր. հիւսիսային կողմն է դուռը և գաւիթը գեղեցիկ մէրմէրաշէն՝ վրան գիր այլազգերէն գրած հին. 952. որ նորոգութեան թուականը պիտի ըլլայ:

Առջին է ընդարձակ հրապարակ մէջը շատրուան. իսկ չորս բոլորը խուցեր շինած են ուսանողաց համար. հարաւային կողմն է գերեզմանատուն. և արևելեան կողմն է մատուռն. որ է տանձին Թիւր-

պէ. ուր կայ Նշաւլուզ Սուլ. Սէլիմին մօրը գերեզ-
մանը. դրանը վրա կարդացինք այլազգերէն յիշատա-
կարանը գրեալ հիճ. 911: Ասոր անուամբ այս ճամին
կըսուի Խասէքիէ. ուր կար խոհարան և փուռն, ա-
ռաջ օրն երկու անգամ կերակուր և ապուր կեփէր
աղքատներուն, և մէտրէսէն կարդացօղ տղոցն հա-
մար, հիմա չէ կայ. որուն Մուխթէվէլլին կը դնէ
Պօլսլար աղասին: Մեզի երևցաւ թէ այս տեղս ա-
ռաջ էր վանք, թէպէտ յիշատակը չի գտանք. բայց
յոյնք պատմեցին, թէ առաջ էր եկեղեցի որբոյն
Յովհաննու, յետոյ ճամի ըրին. և իրեք հարիւր քսա-
նըչորս տարի առաջ վանատուն եղաւ Սուլթանին
հօրոյն համար: Պարսպէն դուրս հարաւային և ա-
րևմտեան կողմն է բոլոր պարտէզ, որ կը հասնի մին-
չև Պռապազ մէյտան, և մինչև Թօփանոցն, որ կըսուի
Խաճըրլը, և Պոստանճըպաշը մահալլէսի:

120. Հին նաւահանգիստն է հիւսիսակողմն բերդին.
որ հիները շատ մեծագործ կը պատմեն, ինչպէս որ
կերևնայ. զի խոր ծովուն մէջ տարապիտլի հիմ դրեր
են, և այնչափ տեղ ծովը ներս են առեր իբր լիճ. ո-
րուն լայնութիւնն ըստ լայնութեան բերդին իրեք
հարիւր քայլէն աւելի է. աւերակները պատի նման
իրեք կողմէն ծովուն մէջ կերևնան. բերանն է ա-
րևելեան կողմն՝ բաւական լայն նաւ մտնելու չափ.
երկայնութիւնը մղոն մի կայ. մէջը յիսունէն աւելի
նաւ կրնար կենալ ապահովապէս: Շատ երևելի գործք
է. կերևնայ թէ հին բնակիչներն են շիներ ահագին
աշխատանքով և գանձով Յուստինիանէն շատ առաջ:
Արրիանոս կը պատմէ, թէ նա աղաչեցի Ադրիա-
նոս կայսեր, որ շինեց այս նաւահանգիստը մեծամեծ
ամբարտակներով. բայց կերևնայ թէ Ադրիանոս նո-
րոգեց. որով շատ ծաղկած էր վաճառականութիւնը
Տրապիզոնի. ինչպէս յայտ է հին ստակներէն (105):
Արևմտեան կողմն՝ ծովուն մէջ կայ փոքր կղզի ջրին
հաւասար. որուն վրա նշան կը դնեն նաւերու հա-
մար. իսկ արևելեան կողմն մինչև Չէօմլէկճի նա-
ւահանգիստը տեղ տեղ բնական ապառաժներ կան
ծովեզերքը:

121. Սուրբ Յովհաննու եկեղեցին արեւելեան կողմն է ներքնաբերդին. դիմացը՝ և Փօղթէփէ լե-ռան արեւմտեան ծայրը։ Այս եկեղեցին շիներ է Յուստինիանոս կայսրն Յովհաննէս մարտիրոսին ան-ուամբն, ինչպէս կը պատմեն հիները. որ է մեծաշէն և ընդարձակ՝ վրան բարձր կաթուղիկէով. ուր կար մկրտարան, և վանատուն. ինչպէս տեսանք քակուած տեղերը, և դրան տեղը. թէպէտ քովերը տներ շի-ներ են։ Ուր կար ուսումնարան Տիւքիկոս փիլիսո-փային, և հոն գտաւ զինքը Անանիա շիրակացին. ինչպէս կը պատմէ (104)։ Աստի առաջ երեւելի տեղ էր հոս. բայց Սուլ. Մէհէմմէտ քաղաքն առնելէն ետև առջի ուրբաթն հոն վճարեց Նամազը, և ան-ուանեց Իսէնի Զինտանլը Ճամիսի. և նոյն թաղն ալ կոչ-ուեցաւ Իսէնի Զինտանլը մահալլէսի։ Հոս մօտ է՝ իբր Պուղղուն տէրէին վրայ՝ հին փոքրիկ եկեղեցին յու-նաց սուրբ Գէորգայ, որ կըսուի Խտրէլէզ. ունի ինք-նաբուղխ ջուր (Այազմա), ուխտատեղի քրիստոնէից և այլազգաց. օրն որ գայ՝ բոլոր քաղաքն հոն կը թափի։

122. Բերդին երկու կողմն ալ առուարձան (Սա-րըշ) կայ. և երկու հրապարակ։ Արեւմտեանն՝ է Գըապալ մէյտան մեծ (104). արեւելեանն է Աչըախօր մէյտան երկայն 278 քայլ, և լայն 180։ Հին ատենը ձիընթացի տեղ էին. նաև հիմա փաշաներն երբեմն կելլեն ձի կը խաղցընեն։ Այս գեղեցիկ հրապարա-կին չորս բոլորը տներ և խանութներ կան. արեւե-լեան կողմն է մեծ Ճամին և աղբիւր բարեջուր. իսկ հարաւային կողմն մէկ գծով են հայոց տները պր-ղալից պարտէզներով. անկէ վերն է Խնէքչէի թաղն, ուր առաջ Տէրվիշի բնակարան կար. որ է ոտք Փօղ-թէփէին.

Այս հրապարակին կեդրոնը՝ շինեց հաճի Ապ-տուլլահ փաշան մեր օրը՝ գեղեցիկ շատրուան չորս հին մրմէր սեանց վրայ. բայց վերջի պատերազմին Մոսկովն որ եկաւ թնդանօթ նետեց քաղաքին վրայ, այս շէնքն ընկաւ կործանեցաւ, տեղը մնաց անշուք։

Արեւմտեան առուարձանը երկու թաղ կայ Սէֆէր

և Ֆարօշ բնակութիւն տաճկաց, և յունաց. իսկ արևելեանը քաղաք կը կոչեն. որ է ընդարձակ և կարգաւորեալ քաղաք շուկաներով և խաներով. ուր կան բաղնիքներ և երևելի ջամիներ. շուկային մէջն է Չարշը ջամին մեծ, որ առաջ եկեղեցի էր. քովը կայ քառակուսի հին շէնք: Արուարձանայք բերդը չեն կրնար բնակիլ, հոս կը բնակին. նաև շատ այլազգներ ալ կը բնակին հոս, որ կըսկըսի բերդէն և կը հասնի մինչև Չէօմլէկճի թաղը, և մինչև Գօզթէփէ. իսկ միւս ծայրն է ծովեզերքը. ուր են բնակութիւնք յունաց և երեք գլխաւոր թաղ կան շատ հին ժամերով Գանիքեա, Աշէքի գայա, ուր կայ ապառաժ կամարաձև, Գուույլի ճէշմէ, ուր կայ աղի աղբիւր.

123. Հին ատենը ամէն օրուան մէյմէկ եկեղեցի շիներ էին յունաց մեծամեծները. ուստի 365 եկեղեցի կար միայն Տրապիզոնի մէջ: Բայց հիմա յունաց ձեռքը քսանըչորս եկեղեցի կայ. և գլխաւորներն են եօթն: Կան նաև վանքեր, հիւրանոցներ, և շատ աւերած փլած ժամեր: Շատ տներու մէջ մատուռներ կան. կըսեն թէ յոյն մեծամեծները իրարու վրայ գժտութիւն ունենալով, իրենց տներուն մէջ մատուռ կը շինէին, որ ժամ չերթան. և մինչև հիմա նոյն գժտութիւն կայ մէջերնին: Յունաց եպիսկոպոսը կը նստի Այ ղօռղօռ եկեղեցին՝ Գուուլլի ճէշմէ թաղն. որ է հին շէնք. ուր անմիջապէս ծովուն ապառաժին վրայ շինած է եպիսկոպոսարանը. և հոն է Կիւմիշխանէրուն վերջի թագաւորին գերեզմանը. և մօտ է իրենց մայր դպրատունը: Յունաց եպիսկոպոսը Տրապիզոնի՝ է Լազիգէս այսինքն վերհապետ որ միա չունէր. նոյնպէս Կոզքիստ եպիսկոպոսները: Իրիկուն առաւօտ ժամէն առաջ հայոց և յունաց ժամկոչները կոչնակ կը զարնեն, որ ժողովուրդը եկեղեցին երթան: Այլազգն ալ ունի մարդ որ շուկային մէջէն կանչելով կիմացնէ Նամազին մօտ ըլլալը, որ պատրաստուին:

Գլխաւոր եկեղեցիներուն անուանք եօթը թաղ բաժնըված է քաղաքը Ֆիրմաններուն մէջ. ա. Այ ղօռղօռ Խաղալլէսի. բ. Այ Եօրկի. գ. Խրիսթոս. դ. Այ Փե-

բեռոյ. Ե Այ Հաուէլ. Զ Փառօղ. Է Սօֆիա։ Իսկ Չէօմ-լէքճի և Այ Քիւրիզօ թաղերն են արևելեան վերջի ծայրն քաղաքին (132)։

Այվասիլի եկեղեցին է բարձր հաստատ չորս մեծամեծ մերմէր սեանց վրա կեցած. սիւներուն բարձրութիւնն ինը կանգուն կայ, և հաստութիւնը ինը թզաչափ. որ շինված է հազար իրեքհարիւր երսուններինը տարի առաջ՝ Յուստինիանոսի ժամանակը։ Այնանց դրան վրա կայ այս յիշատակարան.

ΑΥΤΟΚΡΑΤΩΡ ΚΑΙΣΑΡ ΦΛ. ΙΟΥΣΤΙΝΙΑΝΟΣ
ΕΥΣΕΒΗΣ ΝΙΚΗΤΗΣ ΤΡΟΠΑΙΟΥΧΟΣ
ΜΕΓΙΣΤΟΣ ΑΕΙΣΕΒΑΣΤΟΣ ΑΥΓΟΥΣΤΟΣ ΠΑΡΕΣΧΕΤΟ
ΙΝΔ. ΑΙΤΟΥΣ ΤΠ.

ԻՆՔՆԱԿԱԼ ԿԱՅՍՐ ՓԼ. ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ԲԱՐԵՊԱՇՏ ՅԱՂԹՈՂ ՅԱՂԹԱՆԱԿՈՂ ԱՄԵՆԱՄԵԾ ՄՇՏԱՍԵԲԱՍՏՈՍ ՕԳՈՍՏՈՍ ՇՆՈՐՀԵԱՑ. ԸՆԴԻԿՏԻՈՆ ՅԱՄԻ. 480։

124. Նոյն թաղին մէջն է սուրբ Աննայի եկեղեցին. հնաշէն բարձր, և խանգարած. դրանը վրա մեծ մերմէր քար կայ՝ վրան զանազան դէմք անսանք արած։ Երևնայ թէ այս քար կռատանց քարերէն է. վասն զի վրան որոշեցինք թևաւոր պատկեր կնիկմարդու և զանազան ուրուական դէմքեր, որ հեթանոսական բան կերևնան։ Այս տեղ է բարեդիր, որ ծովուն և բերդին դէմն ըլլալով կարելի է թէ հին ատենը կռատուն էր. ետքէն եկեղեցի շիներ են։

125. Աստուածածնայ վանքն է հարաւային ծայրը քաղաքին՝ անմիջապէս Պօզթէփէին տակը, և բարձր ըլլալով ամէն տեղէ կերևնայ իբր փոքրիկ բերդ. ուր մինչև ցայժմ կուսանք յունաց կը բնակին։ Այս եկեղեցին է Աստուածածնայ բոլոր ապառաժ քարէ փորած. մէջն ինքնաբուղխ անուշ ջուր, և դուրսը գաւիթ նոյն լեռնէն փորած. վրան լեռ ըլլալով եկեղեցին խոնաւ է։ Վանքին պատերը բերդի նման հաստատ են, և ապառաժին վրա պարիսպները հաստա-

տած են. մէջը զանազան խուցեր և ներքնատան պէս ճգնարաններ. կան աղքատ կերպով շինած. Հարաւային կողմը Պօղթէփէ լեռը բնական պարիսպ եղած է վանքին. իսկ հիւսիսային կողմը տեսանք Ալէքսիոս կայսեր գահին տեղը բարձր և պարսպապատ. որ ամառը երբեմն հոն կը նստէր եղեր. մայրն ալ վանքին էր մնացած: Եկեղեցւոյ դաւիթին մէջ Քրիստոսի պատկերքին քով կայ այս յիշատակարան վատ գրով:

ΑΛΕΞΙΟΣ ΕΝ Χ͞Ω ΤΟ ͞ΘΟΠΙΣΤΟΣ ΒΑΣΙΛΕ͞Υ ΚΕ ΑΥΤΟΚΡΑΤΟΡ ΩΣ ΠΑΣΙΣ ΑΝΑΤΟΛΗΣ Ο ΜΕΓΑΣ ΚΟΜΝΗΝΟΣ
ΘΕΟΔΩΡΑ ΧΥ ΧΑΡΙΤΙ ΕΥΣΕΒΕΣΤΑΤΗ ΔΕΣΠΗΤΑ ΚΕ ΑΥΤΟΚΡΑΤΟΡΗΣΑ ΠΑΣΙΣ ΑΝΑΤΟΛΗΣ
ΗΡΙΝΗ ͞ΧΥ ΧΑΡΙΤΙ ΜΗΤΗΡ ΔΕ ͞ΤΟΥ ΕΥΣΕΒΕΣΤΑΤΟΥ ΒΑΣΙΛΕΟΣ ΚΥΡΙ΄ΟΥ ΑΛΕΞΙΟΥ ΤΟΥ ΜΕΓΑΛΟΥ ΚΟΜΝΗΝΟΥ.

ԱԼԷՔՍԻՈՍ ՔՐԻՍՏՈՍԻՒ ՀԱՒԱՏԱՐԻՄ ԱՍՏՈՒԾՈՅ ԹԱԳԱՒՈՐ ԵՒ ԻՆՔՆԱԿԱԼ ԻԲՐՈՒ ԱՄԵՆԱՅՆ ԱՐԵՒԵԼԻՑ ՄԵԾՆ ԿՈՄՆԵՆՈՍ։
ԹԷՈԴՈՐԱ ՔՐԻՍՏՈՍԻ ՇՆՈՐՀՕՔՆ ԲԱՐԵՊԱՇՏՕՆ ԹԱԳՈՒՀԻ ԵՒ ԻՆՔՆԱԿԱԼՈՒՀԻ ԱՄԵՆԱՅՆ ԱՐԵՒԵԼԻՑ։
ԵՌԻՆԷ ՔՐԻՍՏՈՍԻ ՇՆՈՐՀՕՔՆ ԴՇԽՈՅ ՄԱՅՐ ԲԱՐԵՊԱՇՏ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՏԵԱՌՆ ԱԼԷՔՍԻՈՍԻ ՄԵԾԻ ԿՈՄՆԵՆՈՍԻ։

Այս վանքէն վար է Պօղթէփէի թաղն բնակութիւն տաճկաց. ուր կան խանութներ և մեծ ճամի՝ որ կըսվի Իմամլը, ունի բարեհամ ջուր. որ է հարաւային կողմի վերջի թաղն. անկէ վար է փոքր հրապարակն. որուն բոլորտիքն է թաղն Օքսիւնլըւ մահալլէսի. ուր կայ ճամի և ուսումնարան՝ յունաց ատենէն մնացած. անկէց կերթայ Իչքալէի թաղն (122): Իսկ արևմտեան կողմն վանքին կան զուարճալի տեղեր դաշտեր և պարտէզներ, որ կըսվի Սէօղ չայիր:

126. Պէզէստէնն է շուկային մէջ՝ հնաշէն և բարձր քառակուսի, չորս երկաթ դռներով շիտակ մէկմէկու դէմ. մէկը արևելք, մէկը արևմուտք, մէկը հիւսիս, մէկալը հարաւ. մէջ տեղն է հին ջրը-

հօրը բարեջաւր, և մէջի փողոցը չորս բաժնած է ճամբաներով։ Արեւելեան դրան վրայ հին գիր ունանք խանգարած՝ ճենովիզի գիր է կըսեն. չի կըրցանք լաւ որոշելու։ Այս շէնք բարձր է, և առաջ էր կրկնայարկ, չորս սեանց վրայ հաստատուած էր վերնայարկը. սիւները կան, բայց կրակէն ետև միայարկ շինեեր են խանութները։

Հին շէնք է մաքսատունը բարձր՝ ծովուն վրայ շինած կրկնայարկ հանդերձ քարաշէն սանդուխով. ուր մօտը կայ նոյնպէս քարաշէն խան կրկնայարկ։ Հոն մօտը խանութի մէջ կոթող մի կայ հին տառերէն մնացած. բայց վրան գիր չի կայ։ Երևելի է Պաշխանը շուկային մէջ, հին, կրկնայարկ, և կամարաշէն. ուր առաջ բոլոր հայ վաճառականներ էին հաւաքուած, որ աճէմի տաւուտուր կըսէին. հիմա այլազգ են։ Կան նաև զանազան խաներ և ճամիներ. ինչպէս է Միւֆտի խանի և ճամի, Տալի խանի, Փաշա համամի, Պասպախանա ճամիսի բարձր քարաշէն, և այլն։ Կան տեղ տեղ պարիսպի սիւներ ընկած, որ հին շէնքերէն մնացած են։

127. Հայոց եկեղեցիներն են չորս. որ Կիր Մելքոնին ատենը շինված են. ա Աստուածածինը. բ Զաւխափան. գ Սուրբ Օգսէնտ. դ Սուրբ Յոհաննէս. Աստուածածինն է հինը խորանով. ունի գաւիթ և զանգակատուն. գաւիթն հաստ պատով պատված է. կերևնայ թէ այս պատին վրայ էր եկեղեցնայ կամարը. իսկ զանգակատունը գաւիթին խորաններուն կամարին վրայ շինած է հաստատ. նոյնպէս խորաններն են հաստատ կամարաշէն։ Եկեղեցնայ վրայի քարաշէն կամարը և ծածկը քաղաքին առնըված ատենը փլած է, ինչպէս տեղը կերևնայ. յետոյ գերանով շինեեր են, թուի թէ Յաւուզ Սուլ. Սէլիմին օրը։ Գաւիթին մէջ դուռը Յակոբայ խորանին վրայ այսպէս գրած է. ՓԱՌԱՑ ՅԱՃԱՐՍ ԱՍՏՈՒԱԾԱՑԻՆ ԿԱՆԳՆԵԱԼ ՅԱՆՈՒՆ ՍՈՒՐԲ ՅԱԿՈԲԻՆ ԻՐ̃ՅԿ ԱՂՐԻԳՐԻՆ ԵՒ ԾՆՈՂԱՑ ԻՒՐՈՑ Թ̃Վ. ՊԿԳ ԻՆ". 1414.

Իսկ գաւիթին մէկալ խորանին մէջ այսպէս գրած է. ՇԻՆԵՑԱՒ ԼՈՒՍԱԶԱՐԴ ԽՈՐԱՆՍ ՅԱ-

ՆՈՒՆ ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՍՊԱՍԱՒՈՐԱՑՍ ԳՐԻԳՈՐ ՔՀ. ՅՈՎԱՆՆԷՍ ՔՀ. ՅՈՀԱՆ ՔՀ. ՍԱՐԳԻՍ ՔՀ. ԵՒ Ա՟Մ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ, ՈՐՔ ԱՍՏ ԱՇԽԱՏԵՑԱՆ ԵՆ 'Ի ԹԱԳԱ-ՒՈՐՈՒԹԵԱՆ ԿԻՐ ՄԱՆՈՒԷԼԻ ԵՒ ԿԻՐ ԱԼԷՔՍԻ ԵՒ ԹՎԻՆ ՀԱՅՈՑ Պ՟ԿԳ ԵՒ Ք՟Ի ՓԱՌՔ ՅԱԻ". 1414։

Նոյն եկեղեցւոյ յիշատակարանը չի կայ. միայն զանգակատանը ետին կայ յիշատակարան Խաչերեսին Մէլիքին Յովհաննէսին եւ այլոց. որ խօճա Մանէփանին ցեղէն էին. ԹՎ. Պ՟ՀԸ. 1429։

Եկեղեցւոյ չորս դին ընդարձակ գերեզմանատուն է. բայց շատ տեղն աւեր տուն շինեեր են արեւմտեան եւ հարաւային կողմը. ուստի ժամուն մեծ Ջրհորը մնաց քովի տանը մէջ. ուր սովորութիւն էր, որ որչափ եկեղեցի պիտի շինվէր, նախ Ջրհոր կը բանային, յետոյ կըսկըսէին շէնքը. անոր համար ամէն հին եկեղեցի Ջրհոր ունի։ Արեւմտեան կողմը գերեզմանոցին մէջ քարաշէն խորան մի կայ. ուր պատարագ կընէին ժամը չի լմընցած. վրան խաչ եւ հայու Գիր կայ. բայց խանգարելով չի կարդացվիր։ Ժամուն մօտ տան մէջ գերեզման մի գտան քարաշէն, մէջը ոմանով ածուխ. կերեւնայ թէ մարդու երած մարմին է. որ կռապաշտութեան ատենէն մնացած պիտի ըլլայ։

Այս եկեղեցի ունի երկու դուռ. մէկն հիւսիսային կողմը. ուր կայ բակ եւ նահատակի գերեզման երիտասարդի. որ հաւատքի համար շատ տանջանք քաշեր նահատակվեր է. բայց շատ հին չէ, իւր հարիւր տարուան գիր կայ. մէկալ դուռն է հարաւակողմը կանանց համար, ուր է վերնատունն կանանց. իսկ բուն մեծ դուռն եկեղեցւոյ՝ է ճամբուն վրայ։ Այս դրան դիմացն է Ժամատունը հանդերձ դպրատունով. որ շինեցինք 1818ին։

128. Զարխափան, է եկեղեցի Յիսուսի անուան, ինչպէս ծերերն աւանդութեամբ կը պատմեն. բայց աւագ խորանն Աստուածածնայ պատկերը ըլլալուն հիմա Աստուածածնայ եկեղեցի կըսվի. իսկ շինված ժամանակը վրայէն մարդ է ընկեր, եւ անծիւա մնալուն համար Զարխափան ըսվեցաւ։ ունի չորս խորան,

փոքրիկ ուսումնարան հանդերձ խորանով, և զանգակատուն բարձր. բուն եկեղեցին պատով զատված է գաւիթէն և կանանց տեղէն. ուստի և հաստատ քարաշէն է վրան։ Խորանին ետևն կայ այս յիշատակարան. ԶՎԵՐԶԻՆ ՇԻՆՈՂ ՍՈՒՐԲ ՏԱՃԱ-ՐԻՍ ԶԻՃ ՇԱՄՇԱՏԻՆ ԵՒ ԶԻՒՐ ԿՈՂԱ-ԿԻՑՆ ԵՒ ԶԱՒՆՈՑԻՆ ԶՊՐ ԽԱՉԱ ՏԻՐՔ 'Ի ՍՈՒՐԲ ՅՂԹՍ ՁԵՐ ԹՎ ՀՑ ՊՁ. 1431։

Այս եկեղեցին քիչ մի խոր շինված է, ուստի կանանց կողմը և վերնատունը շատ լուսաւոր չէ. և բակին հետ պատկից է յունաց հին քանդված եկեղեցին. որուն պատերը և խորանին տեղը կան։

Զարխափանին ունի առաջին ընդարձակ գերեզմանատուն. որ առաջ Խոյաշքանկին հետ մէկ էր. վերջը Խոկէնատէր փաշան ճամբայ բանալով զատվեցաւ, և քարաշէն խորանը մնաց Խոյաշքանկին մէջ. որ է հիւսիսային կողմը. բոլորտիքը տներ կան։ Այս խորանին վրայ գիր չի տեսանք. այլ կան խաչեր քարէ փորված, և ձիաւոր ուրբի արձան խանգարված. եկեղեցին չշինված հոն պատարագ կընէին եղեր. իսկ ջըհօրը ժամուն կանակը դուրսն է մնացեր։ Նոյն ժամուն մեծ դուռը խաչքանկին դիմացն էր, հիմա արևմտեան կողմն է։

129. Սուրբ Օգսէնտ, ըստ տճ. Սուլու Մանաստր, շինված է անուանի սուրբ Օգսենտիոս մարտիրոսին՝ որ է հիմա Առաջնորդարանի եկեղեցին. ուր կայ հրաշագործ հին պատկեր Աստուածածնայ յունաց ձևով՝ Ղուկաս գրիչը՝ նման Վենետիկու հրաշագործ պատկերին, թէպէտ անկէ մեծ է, որ կըսեն թէ Ղուկաս աւետարանիչ քաշեր է։ Այս եկեղեցին թէպէտ փոքր է, բայց ունի իրեք խորան և գերեզմանատուն. որուն մեծն է Առաջնորդարանին ծախահայեաց ընդարձակ և բարեդիր, որ էր տուն Բժըշկեանց։

Սուրբ Յովհաննէս, է փոքրիկ եկեղեցի շուկային մօտ, և ունի փոքր գերեզմանատուն, բակ., և զանգակատուն վրան փլած. դրանը վրայ կայ հին գիր փորած հայերէն, նաև զարդեր. բակին մէջ կան յունաց

և Հայոց տներ. անոր համար կըսեն թէ յունացած-ներ են։

Գիւղերուն ալ կան փոքր եկեղեցիներ Հայոց՝ որ խաչփոր կըսեն. Ասոնք Համշէնէն եկած են (144). բայց քաղաքացիք Ունի քաղաքէն են. ուստի գեղա-ցիներուն լեզուն և հնչմունքը շատ տարբեր է քա-ղաքացիներէն. սակայն քաղաքին մէջն ալ կան Համ-շէնէն եկած հին տներ. որոնք տարուէ տարի տուրք կուտան Համշէնցոց հետ հին ժամանակէն 'ի վեր. իբրզի՝ Թագաւորին տուածը վառած մեղքէմնին ա-սոնք կուտան. ինչպէս գրուած է Թագաւորական դի-ւանը։ Քաղաքացիք երկու հարիւր տուն հազիւ կը-լլեն, առաջ շատ էին. իսկ գեղացիք հինգ հարիւ-րէն աւելի են. որ երբ զօրք են ամէնը Տէրվիշէկներ-րուն, որոնք խորամանկ և շատ պատերազմող մար-դիկ են։

130. Ամենափրկիչ, վանք պարսպապատ մէկ ժամ հեռուն արեւելեան կողմն քաղաքին բլուրի վրա շի-նուած է հաստատ՝ հանդերձ խուցերով և վերնատնով։ Եկեղեցին ընդարձակ քարաշէն է հանդերձ Գաւի-թով. և ունի երեք մատուռ. Ա Աստուածածին քա-ռակուսի քարաշէն և գեղեցիկ արեւմտեան կողմը. ուր էր առաջ հրաշագործ պատկերը (129). Բ Սուրբ Յովհաննէս փոքրիկ արեւելեան կողմը հանդերձ պար-տեզով. և Գ Սուրբ Երրորդութիւն, որ է զանգա-կատան մէջ արեւմտեան դին ժամուն՝ բարձր։ Այս զանգակատան վրայի մէկ մասը դեռ կեցած է։ Հին յիշատակարանին մէջ այսպէս կը գրէ. * Խօճա ղաղ-տասարն էլէլէն նորոգեաց զվանքապատն. Ո՜վ ողորմ աստ-ուածապատ ամենայն որ զվանքապատն նորոգեաց խառն նո-րոգեաց ||։

Սամսոնի շինողն է խօճա Սանտրոփանն, որ արեւե-լեան կողմէն եկած ըլլալով Շէմսէտտին անուն դրուե-ցաւ. մ՞ն զի Շէմս արև ըսել է. կամ Թերեւս պարոն Շամշատին անուամբը կոչեցին։ Հրովարտակներուն մէջ այսպէս կարդացինք։ „Գորստրդեան վէ Բէհէարի Էրմէ-նեան հանաւերը Շէմսէտտին„։ Ասցի ֆերմանն է Ա Սուլ. Պայեզիտին. տոր որդին Սուլ. Սելիմ գրեց

Լուսաղբիւրին վրայ, որ դեռ 'ի հարաւ քիչ մը հե-ռուն անընդհատ կը վազէ պատուական ջուր. ուր քաղաքացիք ուխտ կերթան։ Այս աղբիւրներն հին ժամանակը շինված են. վանքին մէջի աղբիւրին համար այսպէս կը գրէ հին գրով յիշատակարանը. * Ո՜վ ողորմի ոսկերիչ Նորատեղին որ շինեց զաղբիւրս. Ո՜վ որ աւրհնէ զայն խաչերէն զարդրէն զմոռն, որ նորէն շինեց զաղբիւրն յիշատակ իւր որդւոցն ||։

Առաջ լուսաղբիւրին քով շէնք կայ եղեր ուխ-տաւորներուն նստելու համար. ըստ որում վանքի յիշատակարանին մէջ կը յիշէ, թէ ուշըլին շինվե-ցաւ. * Աստուած ողորմի անդրէասին իւր ծնողացն ձաւնլյցէ տաւլին հոգոյն. և իւր մօրն սուլտանին. աստուած ողորմի Խուրշանցն հոգոյն. որ լուսաղբիւրն ձէն ... շինեց. աստուած շինողին անփորձ պահէ ամէն ||։ Այնպէս կը յիշէ վանքին մէջի շինութիւներն. որ հին գրով գրած է այսպէս. * Ո՜վ ողորմի խճյ զարայեն հոգոյն որ շինեց զվանից ժամատուն յիշատակ իւր հոգոյն. Ո՜վ աւրհնէ զխճյ զարայեն դուստրն սուրայն խաթուն որ ենեգերգոյն պարտալին շինեցն ճ ողեպան երեք իւր հաւր հոգոյն համար։ Ո՜վ աւրհնէ զզարան խաճե-տէն որ զժամատան զշէրան նորէն ծածկեց նշխարովն ||։ Պար-ձեալ կը յիշէ թէ Մարիեայ խաթունն խուց շինեց. իսկ Մղտեսի առաքելն առաջ շիներ էր, յետոյ խօձա Կարապետն շինեց կամ նորոգեց անտեառութնը, դար-պասը, վերնատունը. նաև պարիսպը նորոգեց։ Նմա-նապէս մեր օրը նորոգեցաւ այս վանք ձեռամբ Մահ-տեսի Խաչատեր աթոռակալին՝ ծախքով քաղաքացոց։ Առաջ առանձին խուց կար Աթոռակալ իշխանին. ինչպէս յիշատակը հին գրով գտանք, որ կըսէ. * Ո՜վ աւհնէ զխճյ տէրտէրն. որ շինեց զմշտնջենաւոր խուցն իւր հոգւոյն համար ||։

Այս վանքին երկիրներն առաջ այնչափ շատ էին, որ մինչև քաղաքին ծայրը Այ Փիլիպպօ կը հասնէր. հիմա շատ տեղն յափշտակեր են։ Ֆէրմաններուն մէջ բոլորը կը նշանակէ և շատ ազատութիւն կու-տայ Աբեղաներուն, որ միշտ վանքին մէջ կը բնա-կէին. ինչպէս կը յիշէ յիշատակարանը. * Թվ ՌՂԷ հաշձանեցաւ ամիրիս պարոն տէրն և. ամիրդեայ զտեղն աւա.

կամն արեւելք նայելով Սալիստան կը գտնէ. արեւմըտեան կողմէն Սոտօզ կը տեսնէ. իսկ հիւսիսային կողմէն ծովը կը նայի։ Պտուղն է արեւելեան կողմն, ուր կան քարաշէն տեղեր գմբէթաւոր, եւ զուրան աւերակներ։ Հոս տեղն աւրած է. որ վերջի պատերազմիս ատենը Մոսկովն եկաւ նաւով քակեց թընդանօթով պատերը հիւսիսային կողմանն։

Սուջեւի ծովը քարոտ ըլլալով՝ ուզեց փաշան որ ծովը լեցընէ արեւմտեան հողը կտրելու համար. որով ապահով կըլլար նաւահանգիստը, բայց ժամանակ չունեցաւ. Նաեւ արեւելեան կողմն ալ կայ քիթ գետէն անդին, որ կըսուի Սուֆուի պուռնի. ուր տեսանք քակուած հին եկեղեցի սուրբ Նաթանայ։

Այս թաղ առաջ կըսուէր Ֆռէնկոյ. ուր Փռէնկներ կը բնակէին եղեր ժամանակով, հիմա կըսուի Սէգիւղ ուրոյ պալատին անուամբ։ Երեւնայ թէ հոս բնակող Փռէնկները ժամանակ անցնելէն ետեւ հայացեր են. բայց անուննին կը պահէին. ինչպէս կիմացուի վանքին յիշատակարանէն, որ կըսէ. * «Ի թվ ամէնէ ղշտանիկին որդին փիլիպոսպարոնեանն, որ եկեր բնակ գինի ջըղցուց 'ի սուրբ երկինս»։

133. Պօղմէյէ, երկրորդ լեռն է Տրապիզոնի բարձր՝ անմիջապէս հարաւային կողմն, որ հարաւային հովը եւ գետին օդը կը կտրէ, թէ չէ աղէկ չէր ըլլար օդը. վրան ընդարձակ խոտաւէտ եւ զուարճալի է. ուր կայ մատուռ հին Նըրէմին պէպէ անուամբ. եւ ուրիշ մատուռ, որ ունի խոռոչ. ուսկից քարափոր ճամբայ կայ եղեր զարմանալի դէպ 'ի Պապաթալ վար իջնելու։ Այս լեռան վրայ կատուի նման փոքր կենդանի կայ շատ, որ Զորդալ կըսուի. ձմեռ գիշերն երբոր պինդ օդը պարզի հետեւեալ օրը՝ կոկորնէ միապետեան կըսկըսին ոտնալով ձայն հանել։ Արեւելեան ծայրին լեռան վարը Լէյտուսայի դիմացն է միմափոր մատուռն հանդերձ խորանով, որ կըսուի Պապոնկալ. մէջը կան պատկերք եւ Այրգմա. բայց դժուար է վեր ելլել։ Սարը կայ ուրիշ մատուռ միմափոր՝ քարէ փորած խորանով. ուր առաջ կար եկեղեցի սուրբ Սավայի։ Երեւնայ թէ այս ընդարձակ եւ զուարճալի դաշտին մէջ

պիտի ըլլար երևելի վանք յունաց, ինչպէս մատուռա-
ներէն և աւերակներէն յայտնի է:

Ասկուտաս. այսինքն ողորմած, է քիթ և ապառաժ-
բլուրին վրայ կայ քայքայած եկեղեցի սուրբ Աստուա-
ծածնայ. խորանին տեղը դեռ կեցած է, ուր տե-
սանք մնացորդ պատկերաց: Հիւսիսային կողմը դու-
կար. որուն կէս կամարը դեռ կերևնայ, որ սան-
դուխով մինչև ծովը կիջնէր, ուր մանր նաւեր կու-
գան եղեր: Հեքիմ օղլու ալի փաշան գեղացոց հա-
մար վարէն ճամբայ բանալով՝ եկեղեցւոյ ճամբան
աւրեցաւ: Այր գտանք մեր օրը քարաշէն գերեզման
մեծամեծ ոսկորներով. մօտը կան բարեջուր աղբիւր-
ներ: Տակից կըսկըսի ընդարձակ սև աւազուտը և
կը հասնի գետը:

134. Տէրքօզին տէրէսի. ըստ յն. Փիտնիտիս, այսինքն
տօսախ (Թիմչիր), չափաւոր մեծ գետ է. որ կու-
գայ Կիւմիշխանայու մօտէն. ուր տեղ առաջ տօսախ
շատ կայ եղեր. որուն վրայ կայ մեծաշէն կամուրջ
հինգ կամարներով ահագին բարձր: Այս գետ եր-
բեմն առատանալով մեծ քանդմունք կընէ. որուն
ջուրը վնասակար չէ՝ լաւ է. կը բերէ Ալապալըղի,
Սազլան, և այլն. գետին վերը Թումքէր շինած են,
որ ջրաղացներուն ջուր կը բերեն դարձընելու հա-
մար. որով գետին անունը փոխուեցաւ Տէրքօզին տէրէսի:

Հոս առաջ շէնք և կատուններ կային. ինչպէս
տեսաւ Արրիանոս: Այս գետ բուռն գալով անդա-
դար ծովեզերքը քարով և աւազով կը լեցընէ. ուր
Արր". Իսոս գետ կը յիշէ: Ազնիւ ջուր ինքնաբուղխ՝
աւելի վերն է. որ պղպջալով գետնէն կելլէ, ուր
առաջ ռամիկներն հրաշք կարծելով ուխտ կերթային:
Ասոր վերն է Տէլիքլի տաշ. ուր լեռը ծակած է դի-
մացէ դիմաց գետին ջուրը քաղաք վազցընելու հա-
մար: Այս զարմանալի հին գործք է չափաւոր մե-
ծութեամբ աղեղնաձև ծակած միակերպ. որ Յուս-
տինիանոսէն շատ առաջ պիտի ըլլայ. զի այս Թագա-
ւոր դուրսէն կողմէն ջուր բերել տուաւ քաղաքը (108):

Յամի տեառն 1022 Պետրոս կաթողիկոսն՝ Յով-
հաննէս Բագրատունի հայոց թագաւորին հրամա-

նաւ Տրապիզոն եկաւ . բայց ջրօրհնեաց օրը Սաւիլ կայսր ուզեց, որ հայոց ծիսով օրհնել տայ ջուրը : Երբոր Պետրոս հայրապետ այս գետին քով ջուրը կօրհնէր, գետը մնաց անշարժ, և հրաշալի լոյս երևցաւ . անոր համար Պետրոս Գետադարձ կոչվեցաւ ըստ պատմութեան Արիստակեսի : Գետը ձգած ոսկի խաչը տեսանք, որ աւանդութեամբ կը պահեն : Ոմանք կըսեն թէ այս հայրապետ վանքը նստաւ . ուստի անատենը վանքին տեղը պիտի եղած ըլլար փոքր վանք մի . որ չորս հարիւր տարիէն ետև եկաւ խօճա Ստեփաննոսն յունացմէ գնեց տվաւ հայ կրօնաւոր աբեղայից, ուր առաջ կը ճգնէին . ինչպէս կը մակաբերվի եկեղեցնայ դրան վրայի յիշատակարանէն (131) :

Իսկ հին ատենը Քսենոփոն ամիս մի կեցաւ այս գետին քով տասն հազար զօրքով, և Դիոսի կռատան մէջ ուխտը կատարեց գնաց : Մեր տեսանք հողէն ելած փոքրիկ կուռք մի զուտ ոսկիէ թափած . որ էր գեղեցիկ պատանի մերկ թևաւոր՝ ոտքի վրա կայնած . ոտքին տակը կար պատուանդանի տեղ . որ կամ Բաքոսի, կամ Ապողոնի, և կամ Կուպիդոնի կուռքը պիտի ըլլար : Տես ձեռ. 643, 661, և 662 :

Տրապիզոնի հիմնական մեծ նաւահանգիստն է Զէօմլէկճին (132) . իսկ փոքր նաւահանգիստներն են՝ Գանիտա, Դաւղլը չէշմէ, Դաշ տիքէկ, Քէմէր գայա, Մումխանէ էօնիւ . ուր է քաղաքին բուն վաճառատեղին նաւակաց . նաև Մ՝ոլոզ՝ որ է բերդին առաջն : Մեր շատ երթևեկութիւն կըլլայ նաւերու, և ամէն տեսակ ապրանքի առուտուր կըլլայ . իսկ ցամաքային գլխաւոր առուտուրն է քթանի . որ կը գործեն ընտիր կանեփէ, և կը ղրկեն Հալէպ, Շամ, Պաղտատ, և մինչև Հինտ : Նոյն գինին, թութունը և կաղինը կերթայ Ստամպօլ, և Մոսկով :

135 . Խօշօղլան, կամ Ապօճողլը, է իբր վերջի ծայր և սահմանագլուխ քաղաքին հարաւակողմն Պօղթէփէի . որ է բարձր գոտի լերանց, կապան, և անցք ցամաքի ճամբային . ուսկից պիտի անցնին ամէն ճամբորդք . ուր կան քննիչք փաշային, որ կը նային ճամ.

բարդներուն թուղթը․ ունի գետ Խօշօղլան անուամբ։ Զոր շէնք շիներ էր ժամանակով գեղեցիկ երիտասարդ մի․ որ վրիպմամբ գլխատեց Սուլ․ Մէհէմմէտ․ և յետոյ լսելով անմեղութիւն երիտասարդին՝ ըսեր է Սէն խօշ օղլան․ ասկէց կըսեն այս տեղս կոչվեցաւ Խօշօղլան։

Մէրջէմանա, է հռչակաւոր վանք յունաց խօշօղլանէն վեր Տրապիզոնի և Կիւմիշխանայի մէջ․ որ է հին շէնք սուր լեռան ծայրը շինած ապառաժին մէջ, նեղ սոսկալի սանդուխով միայն վեր կելլըլի․ և այն միշտ վեր առած է աւազակներուն վախէն․ երբոր ուխտաւոր կերթայ կը դնեն վեր կառնուն։ Եկեղեցւոյ մէջն է Աստուածածնայ հրաշագործ պատկերը սևագոյն և հին․ ուր ամէն ազգէ ուխտ կերթան․ և շատ հրաշք կըլլայ։ Իլլազը ևս տարուէ տարի մոմ կը դրկէ, ինչպէս իրենք պատմեցին․ ուր կան երկու մեծամեծ կերոններ գերանի նման․ որ Սուլ․ Միւրատին ընծան են․ զի անկէ անցած ժամանակը կըսեն առաջադրեր է, թէ որ յաղթութեամբ դառնայ Պաղտատէն, ոսկիով վրան պատէ․ իսկ երբոր դարձեր է մէջի կրօնաւորներն աղաչեր են, որ կապարով դոցէ․ և անատենը կերոններն ալ դրկեր է։ Ապառաժէն պատուական ջուր կը կաթէ բաւական բոլոր վանքին։ Մօտը կան երկու մեծ վանքեր յունաց․ բայց գլխաւորն է Մէրջէմանան․ ուր հեռաւոր տեղերէն ուխտաւոր կերթայ։

Կիւմիշխանէ, մօտն է Պօնտոսի և օրուան ճամբայ հեռու Տրապիզոնէն հարաւակողմն․ որ թէպէտ լեռնային տեղ է․ բայց լեցուն է հանքով․ և անոր համար ըսուեցաւ Կիւմիշխանէ։ Քաղաքին մօտ մեծամեծ փապարներ կան հանքի․ փոքր գետին քով առատ հանք գտան․ բայց գետին ջուրը մէջը լեցնելով անգործ մնաց։ Քաղաքը շինած է լեռան կողը․ ուր հազար վեց հարիւր տուն կայ․ հայերն երկու հարիւր տնէն աւելի են․ եկեղեցին է մեծ և վայելուչ սուրբ Աստուածածնայ անուամբ։ Մէկ ժամ հեռուն է վանքը սուրբ Սարգսի․ ուր կը նստի Առաջնորդն։ Յոյներն աւելի են․ մանաւանդ գեղերը․ որ են․

վաճառուն. որոնց մէջ ցեղ մը կայ, որ Սըրմէնցի կո-չին, բոլորը կէսկէս են. զի ներսէն ամէն քրիստոնէութեան պարտքը կը կատարեն. դրսէն այլազգ են, և երբեմն այլազգութիւն ալ կընեն երբոր հարկադրին. և որդւոց որդի այսպէս կերթան. իրենց խնամին ալ այսպէս է, և ոչ երբէք կը փոխուին։

Լեռան տակէն կանցնի Պիւմիչիանայի գետն. որ փոքր գետին հետ խառնըւելով կերթայ Սիւրմէնէ կը թափի։ Այս գետին երկու կողմն ալ գեղեցիկ պարտէզներ են, մինչև չորս ժամ կերթան. հարաւային կողմը կը հասնի Սօռսա պաղչէսին. իսկ հիւսիսայինը մինչև Իյօռօզ։ Գետէն կելլէ Սարի պալըզ։ Ուր շատ զանազան տեսակ տանձի կայ գլխաւորն է Հաճի կանձղա արմուտի. խնձորին ալ շատ ազնիւ է. որ հեռաւոր տեղեր կը տանին, և մեծ առատուր կըլլայ։

Հին ատենը շատ երևելի և բազմամարդ քաղաք էր Տրապիզոն, փառաւոր մարդիկ և փառաւոր շէնքեր ալ շատ կային. Սուլ. Ահմէտին ժամանակը տասնըութ հազար տուն կար, առաջ շատ աւելի էր. բայց հիմա հազիւ կէսը կելլէ։ Տիւքինկոս փիլիսոփային օրը շատ երևելի մարդիկ ելեր են՝ ըստ պատմութեան Ճ իրակացւոյն (104). Նաև տասնըհինգերորդ դարուն ծաղկեցան Հռոմ Գէորգ տրապիզոնցին և Կարդինալ Բեսարիոն։ Գէորգ եղաւ ատենադպիր Ե Նիկողայոսի քահանայապետին, որ առաջ դասատու էր ճարտասանութեան և փիլիսոփայութեան։ Նոյնպէս Բեսարիոն էր գիտնական կարդինալ. և շատ իմաստուն գրվածք ունի. որ իւր երևելի գրքատունը կտակաւ թողուց Վենետիկի տէրութեան։

Այս իմաստուն Կարդինալ առաջ էր արքեպիսկոպոս Նիկիոյ. բայց Յոհաննէս Պալէոլոգ կայսրն յունաց զինքը Հռոմ ղրկեց եկեղեցական կարգադրութեան համար. որ գնաց Ֆիորենցայի ժողովը. և իւր խելացի գործքերուն համար Դ Եւգինէոս հայրապետը զինքն անուանեց Պատրիարգ Ստամպոլու. և կարդինալութիւն տըւաւ 1439 ին. նաև պետ Հռո-

ռոմայու Հայրապետ նստեցնելին. Թէ որ չի մեռնէր 1472ին։ Եւրոպացիք կըսեն, Թէ այնչափ ուսումնասէր, և փառաւոր մարդ էր, որ իր պալատը լեցուց էր գիտուններով, և արժանի է յաւիտենական գովեստի։

Սակայն ինչպէս որ այն հին վայելչութիւնն անցեր է Տրապիզոնէն. այսպէս բնակչաց բարեկարգութիւնն ալ նուազեր է. Թէպէտ բնական յարմարութիւն ունենալով ուսմանց, և ամէն բանի՝ երբ օտար տեղ կը կրթըվին, երևելի ուշիմ մարդիկ կելլեն ամէն ազգէ. որպէս էր Շազիր փաշան բարակամիտ. Մուրիզ պէկէրը. նաև մեր Հայր Յովհաննէս վարդապետը Սարգիսեան. և այլք.

Հաւանական կերևնայ, Թէ Պետրոս առաքեալ Անտիոք աթոռը հաստատելէն ետև՝ եկաւ Պոնտոս և մինչև Տրապիզոն քարոզելով լուսաւորեց. ինչպէս կը մակաբերվի Կաթողիկեաց թղթէն. որ սկիզբը կը դնէ, * Ի սփիւռս պոնտացւոց ... և կապադովկեցւոց Ա։ Տրապիզոնի աշխարհագրական լայնութիւնն է . . . 41. 2′. 5″.
Երկայնութիւնն է 37. 24′. 5″.

136. ՊՕԼԱԹԱ, վեց մղոն հեռու է Չէօմլէկճիլէն. ուր է նաւահանգիստ ամառուան. ունի գեղեր, գետ, և տեղ տեղ հին եկեղեցիներ։ Ամառը հոս կուգան Տրապիզոնի նաւերը, և կաղէն կը բարձրվին. հոն մօտ է Շանա գետը, և կաղինը անուանի է. ուր կայ չափաւոր գետ։

137. ՍԻՒՐՄԷՆԷ, տասնըութ մղոն հեռու է վերընէն. որ է պատուական նաւահանգիստ. շատ նաւ կրնար ձմերել հոն ապահով Թէ որ մանր որդ չըլլար, որ նաւը կապականէ (150)։ Աէրը տեսանք հին եկեղեցի Ս. Յովանի. նաև քանդված բերդ։ Նոյնպէս սարէն վրան ալ կայ հին բերդ և եկեղեցի։ Ուր կան գետեր, և Մահոնա գետ. որ է սահման Օֆին։ Այս կողմն տասուերկու հին եկեղեցի կայ յունաց, և քառասուն տուն հոռոմ. նաև շատ քայքայած հին տեղեր տեսանք։ Սիւրմէնէի բնակիչներն են աւազակաբարոյ. ամէնքը հայէ և հոռմէ դարձած են. հայ-

երը համշէնու եկած են. մինչև հիմա հայերէն է իրենց մականունը և լեզուն. կան ծերեր որ գիտեն քրիստոնէութիւն, կը պատուեն խաչը, և ծածուկ ողորմութիւն կուտան ժամերուն: Մերը քանի մի տուն հայ քրիստոնեայ կայ: Հասարակօրէն վաթսունըվեց գեղ կայ կըսեն հոս: Տաջի աւանը Տրագլի է. մօտն է Այամպօլի գետը: Սուրմէնէի եղը շատ անուանի է. որ ընծայ կերթայ մինչև Ստամպօլ. ուր ամէն շաբաթ օր վաճառ (Բազար) կըլլայ. շատ ցորեն կը բերեն Բաբերդէն, որ մօտ է. իսկ անկէ կելլէ մանած, քթան, և դըլլին ձկան եղ. որ բոլոր այս կողմերս և լազիստան այս եղը կը գործածեն ճրագի, և մեծ առուտուր կըլլայ:

158. Օֆ, ըստ Տճկ. Օֆիս. այսինքն օձ, զի օձի նման պտոյտ են ճամբաները. որ տասնըութ մղոն հեռու է վերինէն. միակարգ և անմատչելի լեռներ են մինչև Բաբերդ, որ կըսվի Ջէնիկէլիտան: Նաւահանգիստն է անյաջող, նաւ կենալու տեղերն են Սօլաքլը, Օրթա փազար, Իսկի փազար, Տօպէթ: Արևելը է Օֆ տէրէսի, կամ Գալաքօթամս. այսինքն լաւ գետ. ըստ Տճկ. Գալոս, և Գարա տէրէ. ունի քիթ քարոտ Փրէշ պտուղի կամ դաշի: Սալաքլըին առջին տեսանք հին բերդ աշտարակաւոր ծովուն մօտ: Ինչափ դժուար և պտոյտ է Օֆին ճամբաները որ անհնարին է առանց առաջնորդի ներս մտնել, թէև հազարաւոր մարդիկ ըլլան կը մնան անելանելի ճամբաներուն մէջ. ինչպէս եղաւ Հաճի ալի փաշային. որ տասը հազար մարդով գնաց բան չի կրցաւ ընելու: Մէջը կան գեղեցիկ դաշտեր և ձորեր, նաև հին եկեղեցիներ:

Բնակիչներն են հին Լազանք խորամանկ. առաջ ութսուն հազար տուն կը դնէին. բայց այնչափ չի կան. քսան հազար տուն հազիւ կելլէ. որոնք քրիստոնէից դարձած են, յունարէն կը խօսին. կան հոռոմներ ալ: Տյլադդաց մէջ շատ բարեկամ հարդացօղ մարդիկ կան. կախարդական բաներու շատ վարպետ են. հնարագէտ են նաև ոտակ կորելու և ամէն բանի: Քրիստոս աւելց անդին Կոշէր Թը-

ռէ. տպղին Թխմնէոէ: Նորբոր այլազգը հոն հասեր է, իրենց իրեք բան առաջարկեր է. կամ սուր, կամ հաւատք, և կամ տուրք: Օֆցիք հաւատքին ընդուներ են, այս մտքով որ երեսանց միայն այլազգութիւն ընեն. բայց հիմա շատ հաստատ կարդացող են: Անոր համար քիչ տուրք կուտան Իմֆարէ հէշրէէ անուանք: Այնչափ առեւտրութիւն սիրող մարդիկ են, որ ողղոց որդի կը տեւէ իրենց Թշնամութիւնը. շատ մարդ կայ որ կը ծերանայ՝ դրնէն դուրս չելլէր: Ելածին պէս՝ իրար պետի զարնեն. միայն իրենց կնիկները կերթան կաշխատին:

Սակայն դրսէն Թշնամի եկածին պէս ամէնը մէկ կըլլան կը ծեծկըվին եղբօր պէս. եսքը կուգան տներնին կը փակվին գիշեր ցորեկ կըսպասեն որ իրար զարնեն: Ուռ է երիկ ըլմանի:

139. ԻՐՈՒՋԷ, ըստ հն. Սինլու, փոքր քաղաք՝ քառնւերկու մղոն անդին է Օֆէն. որ է խաղողուէ կամ լազիստան: Ունի նաւահանգիստ և հին բերդ լեռան վրայ՝ տուն և խանութ: Առաջ առնէմ հայեր շատ կային, որ Ոռչի Թագը կը նստէին. ունէին փառաւոր եկեղեցի, ուր Ճաշոց մի գրեր են. որ մայրաքաղաք կանուանէ այս քաղաքը:

Պետը Իրեմնեռ կը կոչէ Ադրիանոս. կերեւնայ Թէ առաջ հոն բրինծ կը ցանէին, որ Իրեղի ըսվեցաւ: Իրեք մղոն անդին է Ասկարօղ երեւելի գետն, ուր փոքր նաւեր կը մտնեն: Հիներն Ապստրօս գետ կըսեն, և Ազիպա քաղաք կը յիշեն հոս: Պետղեցիկ են հոն բուրաստանք լեմնի և նարնջի: Ւրսեւ քէԹանը շատ աղնիւ և բարակ է, որ ամէն աշխարհ կերԹայ, և ամէն տեղ անուանի է: Տեղացի այլազգներն առեւտրականաշատ ըլլալով այնչափ կը վախնան գիւէն, կամ փէճէկէն. որ ամմենէն գիշերը դուրս չեն ելլեր. երիկուն եղածին պէս ամէն մարդ տասնելով ներս կը քաշվի: Երեւելի էր մեծաշէն պալատը Պուղձի օղլուին. որ էր կուսակալ լադիսատանու այնչափ զօրաւոր, որ իբր Թագաւոր կը տիրէր. մեր օրը դլխաւվեցաւ: Իրեղէ ունի շատ գեղեր և պատուական երկիր:

Երկու ժամ վերը Աստա քեօյին լեռանը վրան ծակ

քար կայ․ տեղացիք պատմեցին թէ առաջ նաւերը հոն կը կապեն եղեր։ Մերը հին եկեղեցի կայ, որ ճամբը լրած են։ Պուլէձիկ մօտ է Իրիզէի․ իսկ Ս՛ա-բաւրի աւանն անդին է․ ուր կայ բնակութիւն լա-զերու, նաև գետ և հին եկեղեցի։ Ծովուն մօտե-րը հին ատենէն մնացած բարձր աշտարակներ կան քառակուսի՝ հաստատ դրներով։ Նաւազաններն ա-ռաջ խածապա նաւակներով կուգան կը կոխեն եղեր այս կողմերս մինչև Տրապիզոն․ անոնց դէմ շիներ են Օսմանցուն ատենը։

140․ ՊՌԵՄԷՐ, Ինը մղոն հեռու է վերինէն, որ է ծակ ապառաժ ծովուն մէջ․ որուն մէջէն փոքր նա-ւեր կանցնին․ ուր կայ փոքր քիթ։ Հոս է Տրապի-զոն նաւահանգին սահմանագլուխն, որ կը հասնի Պաթլամա գետոյն (91)․ և հիմա հոս կը դնեն բաւ-լաքիստանու սահմանը։

Այս կողմի բնակիչներուն համար այսպէս կըսե Պէռաթիպ չէլէպին, թէ լոտ մեծի մասին Լեզկիք են․ որ հասարակօրէն Լազ կըսվին․ և կուգան հին Կողքիսացոցմէ․ այս պատճառաւ բոլոր աշխարհը Կող-քիսէ կըսվէր և գաւառը՝ Խայղտիք․ սակայն բուն Լեզկիք կովկասու լեռներուն են․ իսկ Լազերը ծովե-զերքն են․ որոնց լեզուն և սովորութիւնը շատ տար-բեր է․ Թէպէտ կը ջանան, որ պլազք երևնան։

Լազիստան է լեռնային․ Տրապիզոնէ սկսեալ մին-չև վրաստան են բարձր մեծամեծ լեռներ․ ուսկից կելլէ թել, մեղրէմոմ, մեղր, կոզի, պանիր, լէմոն, նարինջ, և ձէթ ձկան։ Բայց այս կողմն տեսակ մը մեղր կայ, որ կըսեն Տէլի պալ․ զի ուտողը կը գի-նովնայ և կը ցնորի խելքը, ինչպէս կը պատմէ նաև Քսենոփոն․ որուն զօրքն անզգուշութեամբ կերան Տրապիզոն նոյն մեղրէն գինովցան, քանի որ չորս ժա-մէն ետև խելքերնին գլուխնին եկաւ։

141․ ՍՕՎՈՒԳՍՈՒ․ յն․ Փսիխրոս․ այսինքն պաղ-ջուր, երեսուն մղոն հեռու է Իրիզէէն․ և ունի լա-ւահանգիստ․ գետ և բերդ։ Սօվուգասուի սարին դիմացը ծովուն մէջ կայ կղզի վրան քառակուսի աշ-տարակ Ճէնովիզէն մնացած․ որ կըսվի Գըզ գալէսի։

զի ազնուական աղջիկ մի շինել տըւեր է կըսեն ։

142. Սթինա, վեց մղոն հեռու է. ունի փոքր նաւահանգիստ և բնակութիւն. ուր կայ պղնձէ դուռ մի հին ժամանակէն մնացած. թուի թէ կռատան դուռն է ։ զի հոս էր հին ատենը Աթենաս չաստուածուհւոյն կռատունը ։ Արգոնաւորդք երբոր հոս հասան՝ չուզեցին Աթէնք քաղաքին անուամբը կոչելու, Սունիոն կամ ըստ ոմանց Սթէֆնոս ըսին այս աւանին ։ Բնակիչներն են լազ, կամ կողքիսացի. որ աւռուծուրի ձարպիկ մարդիկ են, և գերի առաւտուր կընեն ։ Այս կողմս կան նաև քրիստոնէութենէ մնացած բաներ, մատուռներ և փլած տեղեր ։

143. Էսկի Տրապիզոն, մօտ է վերինին. որ է պատուական տեղ դաշտ, և բոլոր սեղանի նման քարայատակ. որ հեռուէն բերդի կընմանի կլոր ձևով ։ Կը պատմեն թէ նախ հոս են որոշեր շինելու Տրապիզոնի բերդը, բայց տեսնելով թէ օդը լաւ չէ՝ ձգեր են ։ Այլազգիք աւանդութիւն ունին, թէ վարպետները բռնած ատեննին զիրենք Տրապիզոն դրան, և հոն դրին հիմը ։

Փուլթունա տէրէսին քովէն կանցնի, որ մեծ ձայնով և բռնութեամբ ծովը կը թափի, ուր Արբիանոս երկու գետ կը դնէ Պաղատիս և Բռխտանիս ։

144. ՀԱՄՇԷՆ, կամ Համամաշէն, օրուան ճամբայ վերև է Պարխալ լեռան քով, զանազան գեղեր են. ուր կայ հին վանք. որուն մէջ գտան չափազանց մեծ խաչքեր, և զարմանալի ճանապարհ, որ լեռնէն փորած մինչև Փուլթունա գետը կը հասնի ։ Ուր կայ Նզովլիտի գետ, և Խաչէվանայ գետ. ունի մեծամեծ անտառներ հայոց թագաւորներուն ժամանակէն մնացած՝ շատ տեսակ ծառերով և բոյսերով լեցուն հանդերձ հայու անուններով. ուր կըլլայ հատ տօսախ. բնակիչները տարուէ տարի երկու հազար հօխա մեղրէմոմ կուտան թագաւորին. ուր շատ մոմ կըլլայ ։ Գըլխաւոր աւանը կըսվի Պաշ Համշէն. որուն մէջէն գետ կանցնի, և լեռան գլուխը փոքր բերդ կայ ։ Այս լեռան վրայ սաստիկ ձիւն կուգայ. երբեմն ճամբորդները չեն կրնար անցնիլ, կը թաղէն զիրենք

ձեանը մէջ և օրերով ողջ կը մնան, զի տաք է ձիւնին տակը․ որոնք յետոյ անվնաս կելլեն։

Խաչիքեար վանքը մեծ ուխտատեղի է Հայոց և այլ-ազգաց․ այս վանքին քով գտան մեծ զանգակ մը․ ուր կայ մեծ գերեզման արջու, վրան գրած է թէ այս արջ հաւատարիմ ծառայութիւն ըրեր է վանքին տասներկու տարի․ Հայ և տաճիկ վրան ուխտ կերթան մինչև հիմա անմոռութեամբ, և սատկած օրը վրան կերթան աղօթք կընեն։ Համշէնցիք կէս կէս են․ շատը դարձած են․ բայց քրիստոնէութեան սովորութիւնը կը պահեն ժամոց և ողորմութիւնը պակաս չեն ըներ․ գրեթէ ամէնքը վարդավառին և վերափոխման կերթան եկեղեցին մոմ կը վառեն և մատաղ կընեն իրենց պապերուն հոգուն համար․ բոլորը հայերէն կը խօսին։ Ասոնց մէկ մասը Խուաշունլի և Միւրմէնէ գնացին․ խուաշունլի գնացողները քրիստոնեայ մնացին (82)։ Գեանին տակէն գտան հին ատենի զէնքեր, և շատ մոմ։ Այս տեղս Հայոց Համամ իշխանին է շիներ, որ շատ երևելի գաւառ էր հին ատենը․ ինչպէս շէնքերէն յայտնի է․ և կըսվէր Տամէոռ։

Մէնի հին բերդ ապառաժի վրա շինած, որ կըսվի Օխջալէ․ մէջը կայ զարմանալի կամարաւոր շէնքեր հին ատենէն մնացած, և մեծ աշտարակ․ վարի ծայրը կը հասնի մինչև Փուաթունա գետը․ ուր կան ուրիշ բերդեր, հին եկեղեցիներ, և մատուռներ լեռներուն վրա․ նաև փլած տեղեր։

145․ ՍԱՐՕՋ, կամ Աղուր, վեց մղոն անդին է Աթինայէն․ ունի փոքր նաւահանգիստ և քիթ։ Մօտ է հոն Շէնլէ, որ ունի գետ․ նաև Գուլէպ կամ Պուլէպ, և Կափիսրա, որ պզտի տեղեր են փոքր նաւեր կենալու։ Արրիանոս հոս կը դնէ Արիդանիս գետը․ որուն մօտ էր Անգիալոսի պալատը (148)։

146․ ԱՐԽԱՒԱ, անշուք տեղ է փոքր նաւեր կենալու․ ուր կայ խանութ և գետ։ Մօտ են հոս փոքրիկ տեղերը Աէրոմիտ, Արիսէ, նաև Միղէ․ որ երուսնը վեց մղոն հեռու է լաբօզէն։ Այս տեղերս շատ երթևեկութիւն է նաւակներու․ բոլորը լազ

են, և վրացի վաճառականներն ալ պակաս չեն։

Ըստ պատմելոյ Քսանթիոյ չելէպուն՝ այս կողմերս զանազան աղանդաւոր ազգեր կային առաջ. գրեթէ հիմա հաստատ այլազգ են ամէնքը։ Ծերերը պատմեցին, թէ առաջ կային անկրօններ, որ անմահութիւն հոգւոյն ուրանալով կըսէին, թէ՝ Ինսան մի կէրէ կէլէր, մի կէրէ կիտէր. այսինքն մարդս խոտի նման կը բուսնի, խոտի նման կանցնի. ուստի ոչ աղօթք և ոչ օրէնք ունէին։

147. ԽՕՓԱ, քառասուներկեց մղոն հեռու է Կարազէն. որ է փոքր աւան և նաւատեղի. ուր շատ երթևեկութիւն կըլլայ մանր նաւերու. ունի գետ, և բնակութիւն։ Վեց մղոն անդին է Ապու խոյնէ գետ, որ շատ պտուղակամ ջուր ըլլալով կըսեն թագաւորը խմեր հաւներ է. և Ապու խայաթ, այսինքն լաւ ջուր կոչեր է. ուր կան հին անշուք տեղեր։

Մավրոպոտամոս երեք մղոն անդին է, որ ունի նաւահանգիստ և գետ. առաջ անուանի տեղ է եղեր, հիմա լազերու տեղ է՝ աւրիշ բան չի կայ. ուր մեծ է փոքրիկ նաւահանգիստն Պէրէ։

148. ՄԷՕՆԵԻ աւան, քառասունըմէկ մղոն հեռու է Խոփայէն, ունի լաւ բերդ, և բնակութիւն. ուր շատ նաւեր կերթան. բնակիչներն են լազ. շատը քրիստոնէից դարձած են։ Հոս երբ Սուլ. Ահմետին տակը հասաւ՝ կաշխէ սառակ կարեց զօրքին տըլաւ, որ մինչև հիմա պահած կայ Օսմանցոց գանձարանը. անոր համար Մէօնէ ըսուեցաւ այս բերդն, որ կաշի բաժնեկած է։

Հին ատենը այս կողմն էր երևելի քաղաքն Անգիալոս. ուր տեսաւ Արիստոս թագաւորական պալատ. որ կը պատմէ, թէ այս կողմի բնակիչներն խռովարար ըլլալով միշտ կը պատերազմէին ասիատացոց հետ. նաև Քսենոփոնին հետ ալ կռուեցան։ Այս գաւառ ընդհանրապէս կըսուի Լազիկա. և ըստ հնոց՝ Կողքիս։ Առաջ այնչափ երևելի գաւառ էր, որ Կաւատ թագաւորը պարսից շատ տարիներ Յունաստանի կայսրն որ Լազիստան իրեն տայ. բայց այն՝ զօրք ղըրկեց պաշտպանեց պարսից դէմ։ Լազիստանու կնիկ-

մարդիկ, մանաւանդ մեծամեծներուն խաթուններն նման Ամազոնեաց այնչափ զօրաւոր են՝ որ իրենց էրկանը կը հրամայեն. մինչ զի խօսքերնին կատարելով պէտք է որ՝ կամքերնին ընեն, զի անոնցմէ կը վախնան. որ արեւելեան բնութեան դէմ է։ Վախամեր շատ հեռու չէ ասկէց։

149. ՃՈՐՈԽ, կամ Փաուս, գետ Երեւելի, և ըստ հն. Փիսոն, որ Էրզրումայ լեռներէն կամ Թորթումայ կելլէ. և աղեղնաձև պատելով Խաղտիք, կամ ըստ սուրբ գրոց Եւիլատայ աշխարհը, կուգայ Արդվինու քով շատ կը մեծնայ, մինչև մանր նաւեր կը քալեն մէջը. մանաւանդ գարնան ժամանակը, և մեծաբռնութեամբ կը վազէ լազիստանու ծովը Պաթումին մօտ. կէս մղոն կայ բերանը՝ ծովուն մէջ աւազակոյտ ըրեր է, և ծանծաղ է բերանը։ Այս գետին աւազին մէջ տեղ տեղ ոսկեգոյն կը փայլի. կերեւնայ թէ լեռներէն ոսկիի մանրուք կը բերէ. թէպէտ չի կրցանք փորձելու։

Այս գետին վրայ կըսէ սուրբ գիրքը, թէ՝ *Ուր ոսկին է, և ոսկի երկրին այնորիկ ազնիւ է‖. վասն զի այս կողմի լեռներուն մէջ հանք շատ կայ մինչև Կիւմիշխանա. ուր զարմանալի առատ հանքեր կան լեռներուն մէջ, մանաւանդ գետին տակը (135)։ Ապանեէի քթին վրայ ծովուն մէջ քար մը կայ վրան զանազան տեսակ ձկանց ձևը գրած է մեծ պզտիկ. տարին անգամ մը անկէ կանցնին ձկներն իբր ուխտ երթալով. այսպէս պատմեցին մեզ լազերը։

Այս նշանները չի կրցանք քննելու. բայց կերեւնայ թէ կամ ալիքներուն զարնելովը զանազան ձևեր նկարուեր են. և կամ ապառաժէն քարացուցիչ ջուր վազելով ձկանց ձևի պէս բաներ ձևացեր են. ինչպէս տեսանք Թրեստի ահագին խոր և մեծ փապարին մէջ այս կերպ շատ զարմանալի բաներ մարդու և կենդանեաց ձևով. սակայն ռամիկներն իբր հրաշալի բան համարելով դրեր են, թէ տարին անգամ մը ձկները ձերմակ ծովէն ուխտ կուգան, և նոյն քարին քովին ու կերթան. փոխանակ ըսելու թէ սև ծովու ձկներուն շատը կռունկի նման կը փոխեն տե-

ղերնին ամառ և ձմեռ, ու խմբովին կանցնին ծոցե-
րուն մէջէն. ինչպէս է իւսկիւտիին, Թիրսին ; խամ-
սին, և այլն :

150. ՊԱԹՈՒՄ, ինը մղոն հեռու է Կէօնիէէն. ունի մեծ և պատուական նաւահանգիստ : Այս նաւահանգստին մէջ մանր ճերմակ բարակ որդեր գոյացեր են ասեղի նման. որ շուտով կապականեն նաւերը ծակելով : Արրիանոս այս կողմս կը յիշէ Պաթիս գետ, այսինքն խոր. կարելի է թէ այս անուամբ Պաթում կոչվեցաւ այս քաղաք : Ուր կան հին եկեղեցիներ քայքայած. բնակիչները քրիստոնէից դարձած են : Մօտէն կանցնի Ակեմարիսքի գետ. և ծովը տատանալով կը լեցվի միշտ աւազով :

Այս կողմի բարձր լեռները հեռուէն ձիւնապատ տեսանք դարնան : Պաթումէն շատ գերի կուգար առաջ, հիմա այնչափ չէ. ունկից կելլէ մոմ, զէրտէվա, և շատ լազուտ, կամ մորացորեն. զի շրջակայ պահմանն է դաշտ, և ունի մեծ անտառ. ուր կան զանազան կենդանիք, որոնց մորթը կըծախեն :

151. ՉԱՔՈՒ, ինը մղոն անդին է. ուր կայ բնակութիւն և խանութ լազերու. անկէ Չիւրուիւր գօլէւի, է հինգ մղոն. որ է հին բերդ : Շատ անգամ այս կողմի բնակիչները միաբանելով կերթան Աբխաձիներուն գեղերը կը կոխեն գերի կըսեն : Չօռօքսու, տասներհինգ մղոն հեռու է. ուր կայ խանութ և Աձուզա գետ. վերը կայ հին եկեղեցի. որ Աբխաձիները կըսեն Աճէպա, այսինքն Երրորդութիւն :

Շեքվեթիլ, վեց մղոն անդին է. որ Մօսկովին առաւ բերդ շինեց : Կէօրէի-ճէլ, վեց մղոն անդին է. առաջը կայ աւազուտ ծովուն մէջ : Անկէ անդին Ա-նալըղաչի, և Աձի սու, չորս մղոն է. ուր փոքր նաւ կը մտնէր առաջ. Արրիանոս Խոփս գետ կը յիշէ նաւագնաց : Մինչև հոս մոսկով է. որ բերդեր շինեց կը տիրէ ծովեզերաց. անկէց մինչև Փարշ հինգ մղոն է : Ահա մինչև հոս է Կուսեէլի տէրութիւնը վրաց. և այս կողմս ընդհանրապէս կըսվի Կոչիս :

152. ԿՈՂՔԻՍ, է ընդարձակ աշխարհ Պօնտոսի, որ Լազիստանէն կամ Ճօրոխէն սկսեալ կը հասնի մինչև

Կովկաս, և մինչև Պարսկաստան ցամաքով։ Հին պատմիչները կըսեն թէ առիացիք եւրոպա անցած առեննին հոս բնակիչ կար. որ էին Հայկայ եղբօրը Եգրոսայ ցեղէն, և անոր համար ըսուեցան Եգերացիք (155)։ Ըստ Հերոդոտոսի Սեսոստրոս եկաւ իւր զօրքով մինչև Կողքիս, և հոն հատուած մի թողուց. ուր եօթը թագաւոր նստան. առաջինը կըսուէր Հեղիոս. որուն յաջորդեց որդին Այետաս. ասոր օրը Փրիքսոս գընաց Կողքիս Հերմեսի կռատունը զոհ ընելու (35). նաև Արգոնաւորդք հոն գնացին, և Հերմեսի կռատնէն ոսկեգեղմն գողցան (36)։ Այետայ մեռնելէն ետև Կողքիս զանազան մասն բաժնըւեցաւ. մինչև Միհրդատ տիրեց. անկէ ետև Պոմպէոս իրենց մէկ իշխանը թագաւոր դրաւ Արիստարքոս անուամբ. յետոյ Փառնաս տիրեց, և հայոց թագաւորներն ալ կը տիրէին. իսկ Տրայիանոսէն ետև պոնտոսի Պրէտորները կիշխէին։

Առաջ երևելի քաղաքներ կային այս աշխարհ. զոր օրինակ Ռիզիոս, Դանդար, Դիոսկուրիա, որ կըսուէր Այա կամ Սեբաստոպոլիս, և Ֆարշ. իսկ ցամաքի քաղաքներն էին Մէկլէսոս, Մատիա, Սարաք, Սուրիօ, Ղուաթրիս, և Սգալինձեա. ուր կը թաղէին թագաւորները։ Լեռները շատ հանք կայ կըսեն։ Կողքիսի հիմակուան գլխաւոր բնակիչներն են Վիրք. այսինքն Կիւռձի և Մնկռէլ. թէպէտ երկուքն ալ մէկ ազգ կը սեպուին, մէկ լեզու, մէկ բարք, և մէկ կրօն ունին. բայց Կիւռձիները կըսուին Աչըխպաշ, և իրենց երկիրը Կարթէլ. որ Ճորոխէն մինչև Ֆարշ կը հասնի, և հարաւային կողմէն մինչև Պարսկաստան. գլխաւոր մայրաքաղաքներն էին՝ Թիֆլիզ և Միխիթա. ուր էր կաթողիկոսարանը. Իսկ մնկռէլին երկիրն է Իմերէթ, որ Փարշէն մինչև կովկաս կը հասնի. կերևնայ թէ Սօխումի ապազաներն ալ ասոնց ցեղէն են. յետոյ ծառապաշտ ըլլալով բուն ապազաներուն հետ միացեր են։

Մնկռէլները կը պարծին թէ իրենց թագաւորը Դաւթի ցեղէն էր. նոյնպէս Կիւռձիները կըսեն, թէ իրենց թագաւորը Սողոմոնին ցեղէն կուգար։

Տատիան Թագաւորն Մինկրէլի՝ Գօթաթիս կը նըս-
տէր. ասոր ցեղէն էին վերջի Թագաւորները. որոնք
ամէնը Տատիան կըսուէին. որ իշխան արդարութեան
ըսել է. զի Տատ արդարութիւն կը նշանակէ պար-
սկերէն։ Ալուաճիններն աւելի բարակ են. Թագաւո-
րին պալատական իշխանները էին երկու հարիւր.
նաև երկու հարիւր ևս իշխանուհք՝ ազնուականնե-
րէն 'ի զատ. իսկ Թագուհիին պալատականները էին
վաթսուն տիկին զարդարած, որոնք միշտ հետն էին.
և երբ Թագուհին դուրս կելլէր, ասոնք ալ միատեղ
ձի հեծած էրիկմարդու պէս հետը կերթային իբր
Ամազոնք (83)։ Թագաւորը մինչև երսուն հազար
զօրք կը հանէր։ Ասոնք մեր օրն ինքնակամ իրենց
տէրութիւնը Մոսկովին տուին. և վերջին Թագա-
ւորն եղաւ Սօլօմոն այր փառաւոր, որ փախաւ առ
Օսմանցին, և մեռաւ Տրապիզոն. որուն գերեզ-
մանն է Այղօռղօռ եկեղեցին յունաց՝ բակին մէջ գե-
ղեցիկ շինած սիւներով և գմբէթով (123)։

153. Այս երկիր լեցուն է անտառներով. ուր
անձրևը շատ ըլլալով աւելի թաց է. նաև արեգա-
կին տաքը զարնելով կապականէ օդը, մինչև մահ կը
պատճառի կըսեն. զի մերձի ատենս Չերքեզին կող-
մէն տարածեցաւ ժանտամահը։ Ասկից կելլէ տեսակ
մի ցորեն, որ Կօմ կըսեն, և բրինձի պէս կը ցանեն.
հացը ճերմակ կըլլայ, և շատ սնուցիչ է։ Անտառ-
ները կըսեն կայ Առիւծ, Վագր, Ընձառիւծ, Արջ
սև ճերմակ. նաև Աղուէս, Չագալ, և այլն։ Ա-
պազաներէն պաշտպանուելու համար լայն պատ շիներ
էին վաթսուն մղոն, և կամկատու մէջ տեղի ճամբան
կտրեր էին։ Պատմեցին թէ Մինկրէլիստան շատ տեղ
երբոր ձիով կերթան՝ երկիրը ձայն կը հանէ. ասկէց
մակաբերեցին թէ տակը ճամբայ կայ. որով Կասպից
ծովը սև ծովուն հետ կը հաղորդի։ Հիմա Մինկրէ-
լիստան երևելի քաղաք չի կայ, շատը գեղեր են. ծա-
վուն մօտ տներն ասդին անդին շինած են. ինը
կամ տասը բերդ կայ, աւելի զօրաւոր բերդը կըսուի
Ռուխա, ուր կը բնակէր իշխանը։

Աբխազեցիք թէպէտ են ուժով աղուոր և պատե-

բազմակին մարդիկ. բայց են անգութ խաբեբայ, և աւազակաբարոյ. մեծ քաջութիւն կը սեպեն աւազակութիւնը. տաւարի շատ անգամ կը միանան կերթան լեզգիներուն, և լազերուն երկիրը կը զարնեն. մարդիկը գերի կ'ընեն կը ծախեն. հայրը զաւակը կը ծախէ անխնայ. և ամենք գործք ողորմութեան կը սեպեն անառողջանալի հիւանդը մեռցընել։ Սուկուէլներին իրեք ցեղ կը բաժնըվին. Պշնաւօս կամ Պշենաւոր, այսինքն ազնուական. Սաւքաւըս, այսինքն հասարակ. և Սօտաւլէ, այսինքն ժողովուրդ։ Ասոնց հարստութիւնն է ծառայ և ձի շատ ունենալ. որ տէր ըլլալով անոնց կենացը վրայ միշտ կը ծախեն։ Անչափ որսորդութիւն կը սիրեն, որ սաստիկ է իրենց մէջ թէ՝ Երջանկութիւն մարդոյ կը կայանայ ունենալ՝ լաւ ձի՝ շուն, և բազէ։ Արբեցութիւն և անառակութիւնն իրենց մէջ հազուադէպ է. մեծ օրերն ամբողջ կովը կը խորովեն միասնեղ կուտեն կուրախանան։

Իրենց թագաւորը, թագուհին, իշխանները, և ծառաները մէկտեղ կուտէին։ Սովորական է իրենց սուգը, քառասուն օր կը տևէ. լաթերնին կը պատռեն, մազերնին կը փետտեն, և կուրծքերնուն կը զարնեն պարհուրելի ձայներ հանելով. ինչպէս ըրին Տրապիզոն. երբ մեռաւ մեր օրն իրենց մեծին թագաւորը Սօլօմոն։ Թագաւորին որ մեռնի, եպիսկոպոսը պատարագ կ'ընէ, և բոլոր քաղաքը կը պտըտցընեն մեռելը. յետոյ դըրօշակ (Պայրախ) կը բանան. մէկին տակը կը նստեցնեն մեռելին ձիերը. մէկին տակը ձին. և մէկալին տակը սուրը կը դնեն. մեծ իշխանը կը հրամայէ տալ, որ ուզէ բաց և մինչև կէս մէջքը մերկ կը չոքի աղօթք կ'ընէ ամէն մէկ դրօշակին տակը մեռելին հոգուն համար. յետոյ իրեն հարկիք կ'ընեն։ Ամէն մարդ զատկին երկրորդ օրը կերակուր կը տանի ժամուն դուռն իրենց մեռելներուն համար. ծաղիկներով և վառած կերոններով գերեզմանին վրայ կերթան. յետոյ ժամուն առաջը ծառին տակը նստին կուտեն։ Այլ տեղ որ գերեզմաններուն վրայ անասուն և թռչուն կը մորթեն ա-

դականաց հողուն համար. նաեւ գինի եւ ձէթ կը թափեն. որ ոմանք կռապաշտական գործք կը համարին. սակայն Թանձրամիտ ազգն իբր բարեպաշտական գործ՝ մեծ ջերմեռանդութեամբ կը պահեն իրենց սովորութիւնները: Շատ աւելորդապաշտութիւն ունին, եւ կախարդական բաներու շատ կը հաւատան. իրենց քահանայներն ալ ասանկ բաներով ժողովուրդը կը խաբէ. ոմանք լուսինէն վախնալով երկուշաբթի օրը միս չեն ուտեր, եւ ուրբաթը շատ կը պատուեն: Կան Թանձրամիտներ, որ ժամերուն ընծայ կուտան եղնիկի եղջիւր, խոզի ակռայ, եւ փաղան Թռչունի Թեւ. որպէս զի յաջողութիւն ունենան պատերազմի եւ որսորդութեան մէջ:

. Մ՛նկռէլները ծովուն մօտ մեծ եկեղեցի ունին. կըսեն Թէ Անդրէաս առաքեալը հոն քարոզեր է. սակայն իրենց լուսաւորիչն եղաւ Նունէ կոյսն, որ էր ընկեր սուրբ Հռիփսիմէի. եւ անոնցմէ զատուեցաւ գնաց Վրաստան Մծխիթա քաղաքը նստաւ, եւ սկսաւ քրիստոսի անուամբն հրաշք ընել. մինչեւ Միհրան Թագաւորին տղան եւ Թագուհին բժշկեց. ուստի Թագաւորը եւ բոլոր ազգը դարձան քրիստոնեայ եղան. իսկ սրբուհին Նունէ հրամանաւ սուրբ Լուսաւորչին փայտէ խաչ մը կանգնեց, որուն վրայ լոյս ծագեց խաչանման. յետոյ յունաստանէն քահանաներ եկան հաստատեցին անոնց եկեղեցին յունաց ծիսով. ուր կան երկու պատրիարք, մէկը վրաց, մէկալը մնկռէլներուն. որ մինչեւ Ապաղա կը հրամայէին տասը դուկատի. բայց եկեղեցականները շատ տգէտ են. շատը կան, որ միայն պատարագ ընել սորված են, այլ բան չգիտեն. քահանայք երբեմն պատերազմ կերթային. որոնք աւելի քաջ պատերազմող են, քան Թէ քահանայ: Կան վանքեր եւ կրօնաւորներ սուրբ Բարսեղի կարգէն, որ կըսեն Պէրէրէս. կան նաեւ մարաբէտներ. շատ եկեղեցի զանգակատուն չունի. միայն կոչնակ կը զարնեն: Մեծ եկեղեցիներն ոսկէզօծ զարդարած են պատկերներով: Շատ կը պատուեն սուրբ Գէորգ. կըսեն Թէ Ստամպօլ առնըված անենը շատ մասունք այս կողմս փախու-

ցին. ուր կայ կըսեն մեծ կոտոր խաչափայտի, և Աստուածածնայ շապիկն, որ Թագաւորը կը պահէր։ Մեր սուրբ Մեսրոպ գնաց վրաստան իրենց գիրը հնարեց։

Մինկրելներն այնչափ կամակոր ոխակալ և անգութ են, որ մեռնելը և մարդ մեռցընելն ամենևին բան չեն սեպեր. նաև իրենց սովորութիւնն այնչափ աղէկ կը պահեն, որ մեռնին բան չեն փոխեր, և սովորական գործքեն ետ չեն կենար. ուրախանալ երգել շատ կը սիրեն. որչափ որ արտաքուստ հոգևոր բաներու և պատկերքի ջերմեռանդ կերևնան, այնչափ ալ տգիտական աւելորդապաշտութեան հակեալ են՝ թէ՛ հասարակ ժողովուրդը, և թէ իրենց քահանայքը։ Նաև որովհետև ատոնց վարքը և հագուստն ապազաններուն շատ նման է, ոմանք մէկ ազգ համարելով ընդհանուր անուամբ Կողքիացի կանուանեն զամէնքը կիւրճիներուն հետ միատեղ. սակայն կիւրճին և մինկրելն՝ են վրացի քրիստոնեայք. որոնք թէպէտ զանազան ցեղ են, սակայն մէկ ազգ կը համարին. կիւրճին աւելի կարգաւորեալ քաղաքական է. որոնց մէջէն բարակամիտ և գեղեցիկ մարդիկ շատ կելլեն. ունին դպրատուններ, մինչ զի աղջիկներն ալ կարդալ գրել գիտեն, և այլազգն իրենց վրա մեծ համարում ունի. մինկրելն աւելի վայրենաբարոյ և զօրաւոր է. իսկ ապազան սկիւթացի թաթարներէն է. որ կերևնայ, թէ մեծ թաթարստանէն եկեր այս կողմն բնակեր են, և մինկրելներուն մօտ ըլլալով՝ ժամանակով քրիստոնէութիւն սորվեր և իրարու հետ խառնըվեր են ծովեզերաց կողմը. և յետոյ քրիստոնէութիւնը թողուցեր՝ ծառապաշտ եղեր են (162)։

Մինկրելէն կելլէ մոմ, մեղր, շիմշիր, ապրշում, կտաւ, բուրդ, կաշի, մորթ, գունտուղ, զէյթէվա, աղուէս, չագալ, և այլ այսպիսի ապրանք, որ կուգայ կովկասու կողմէն։ Ասոր համար ամէն տարի նաւեր կերթան մինչև Փարշ և կը բարձըվին. որ առաջ էր մայրաքաղաք Իմերեթին։

Արդ՝ Տրապիզոնէն մինչև Փարշ է 238 մղոն. իսկ Ստամպօլէն 1147 մղոն հեռաւորութիւն։

# Դ· ԱՓԱՆ ՍԵՒ ԾՈՎՈՒ

154. **Փաս**, յիսուն մղոն հեռու է Պաթումէն. որ է երևելի սահմանագլուխ և զօրաւոր բերդ Օսմանեանց՝ Սուլ. Մուրատէն շինած 1578ին. հին անունը կըսուէր Փասիս և Ռիոն: Առջևէն Ասիոյ մեծ գետը կանցնի, որ Կովկասու լեռնէն կելլէ, վրաստանու մէջէն կանցնի ու բերդին առջևը լճանալով պատուական նաւահանգիստ կըլլայ, և ապա սև ծով կը թափի. ուր յորձանքը դէպ 'ի հիւսիս կը վազէ:

Այս որովհետև արևելեան ծայրն է սև ծովուն՝ շարունակ գետերը դէպ 'ի այս կողմն վազելով ծովը կը բարձրանայ, և գետին բերանը վեր կերթայ. քաղաքն ալ հետզհետէ վեր կը շինեն: Այս նաւահանգիստը մեծամեծ նաւեր կը մտնէին առաջ. հիմա փոքր նաւերը մինչև վրաստան կերթան. զի բերանը շատ ծանծաղ ըլլալուն՝ նաւերը գետին բերանը կը կենան, որ ապահով չէ: Արրիանոս շատ կը գովէ այս գետին ջուրը. մինչև տասը տարի մնայ բան չըլլար կըսէ. կապարագոյն է, և շատ թեթև. բայց պէտք է քիչ մի ժամանակ ամանին մէջ կենայ՝ որ զտի: Հին ատենը նաւերով կը տանէին այս ջրէն իբր սրբազան ջուր: Այս կողմն ծովուն երեսն անուշ է, տակը աղի. վասն զի աւելի թեթև ըլլալուն՝ ծովուն ջրին հետ շուտով չի խառնըվիր: Հոս ամառը շատ վնասակար է օդը, մանաւանդ օգոստոսին. ուր անձրև գալէն ետև մանր թռչող կենդանիներ կերևնան ջրին վրայ. ամառատենը երբոր գիշերուան օդը կը դպչի մարդուս մարմնին՝ փթթեցընէ կը թափէ մարմինը. երբեմն թռչունները վրայէն անցնելով կիյնին կը մեռնին:

Պոմպէոս կողքիսի յաղթելէն ետև հոս հասաւ, և պատահեցաւ իր նաւահանգիստին: Հիներուն Այս կղզի կար կըսեն Փասիսին բերանին, որուն վրայ բերդ շինեցին. հիմա տեղը չի կայ. նաև գետին մէջ կըղ-

զիներ կայ կըսեն ։ Ադրիանոսի ատենը երեւելի տաճար մի կար գետին աջակողմը. որ կըսուէր ΦΑΣΙΑΝΟΣ ΘΕΟΣ, այսինքն ՓԱՐՇԻ ԱՍՏՈՒԱԾՈՒՀԻ. որ Միէա պիտի ըլլայ կըսէ, ձեռքը Թմբուկ ոտքին տակը օձ ։ Տես Ձեռ. 620 ։ Այս տաճարին մէջ տեսաւ Արգոնաւորդաց նաւին խարիսխը, կամ երկաթը. որ կուռքին ընծայեր էին ողջամբ հոն հասնելնուն համար. եւ ուրիշ աւելի հին խարիսխ մի տեսաւ հոն քարէ շինած. վասն զի հին ատենը քարէ կը շինէին խարիսխը Անկիւրի քաղաքին մէջ. անոր համար կըսէ Արրիանոս Անկիւրա կամ Անկիւրա կոչուեցաւ այն քաղաքն, որ խարիսխ ըսել է ։ Այս տաճարին տեղն հիմա չի կայ. որ Զենոն կայսեր ատենը եկեղեցի շիներ փրկչին ընծայեր էին ։ Շատ մեծ եւ գեր կըլլայ հոս Փազան վայրի հաւը. պատմիչները կըսեն թէ Արգոնաւորդք ասկէ տարին յունաստան անցուցին. որ Փարշին քով բռնելնուն համար՝ Փազան ըսուեցաւ այն թռչունը ։ Փարշի աշխարհագրական լայնութիւնն է . . . 42°. 10′ ։
Երկայնութիւնն է 39°. 50′ ։

155. ԳԻՄՀԻԼ, ինը մղոն անդին է. որ վերջի ատենս Սուլ. Սելիմէն առաւ Մոսկովը բերդ շինեց, եւ մինչեւ Խանում իսկելէսին տիրեց (159) ։ Արրիանոս հոս կը յիշէ Խոբոս գետ նաւագնաց. ուսկից տեսան Կովկասու լեռներն, կամ Ստրոբիլոս ահագին մեծ լեռն ապառաժի. ուր կապեցին ատենով Պրոմէթէոս ։ Տես Ձեռ. 694 ։

Մնկռէլի տէրութիւնը Փարշէն կըսկըսի, եւ կը հասնի Անապա. որ ինչպէս ըսինք հին ատենը Մեգրացիք կըսուէին, եւ Հայկայ եղբօրը Մեգրեայ ցեղէն եկած են. ուստի առաջ Հայոց տէրութեան տակն էր այս մասն պոնտոսի. ինչպէս կը պատմէ Խորենացին, թէ Արտաւազդ Թագաւորն Հայոց՝ հրաման հանեց որ Կովկասու բնակիչներն պատերազմ ելլեն ։ Իսկ Կովկաս. եւ ըստ ոմ. Կաֆ դաղի մեծ սարսափելի լեռը՝ կըսկըսի Մնկռէլէն՝ կը պատէ Կողքիս, Անապա եւ Աղուանք, կը հասնի մինչեւ հնդստան. որուն գլխաւոր բարձր լեռն է Ալպու-

ռուս մօտ Ռէմճէլի. որ Մինկրէլէն կըսկըսի մինչեւ Անափա կը հասնի. վրան միշտ ձիւնապատ է. ամառուը տեղ տեղ ձիւնը հալելով հորի պէս խոր բերան կը բացվի. Ճամբորդները փայտեր կերկընցնեն ու վրայէն կանցնին. շատ առողջարար ջրեր կան վրան։

156. ՌՕՓՓԻ, է նաւատեղի. ուր կայ գետ նոյն անուամբ, և առաջ բերդ ունէր. նոյնպէս Ինքէլէ աւանն է, և ունի գետ. ուր առաջ նաւ կը քալէր կըսեն հիները։

157. ԱՆԱԳՐԻԱ, կամ Անաքլիա, ինը մղոն հեռու է Ռէմճէլէն, ուր կայ հին բերդ. որ առաջ երեւելի տեղ էր, հիմա քիչ բնակութիւն կայ։ Այս բերդին տակէն կանցնի մեծկակ գետ։ Ուր մօտ է Սայիս կամ Պաճէթ գետ։

158. ԿՈՒՏԱՅԱ, քառասնըչորս մղոն անդին է. ուր հին ատենը կար Ալիտիկա նահանգ. որ ըստ Արր. եւին ոջլակեր սկիւթացիք. ունի գետ։ Ոմանք կը յիշեն այս կողմս Կիւտա քաղաք հին. կարելի է թէ նոյն ըլլայ ընդ կուտայայի։ Իլօրի բերդը մօտ է հոն։ Այս կողմի բնակիչներուն, նաև վրացոց՝ հին ատենէն մինչեւ հիմա ոջլակեր կըսեն։

159. ԻՍԿՈՒՐԻԱ, կամ Իսքուրիէ, տասներկու մղոն անդին է. ուր կայ հին բերդ և նաւահանգիստ։ Իսկուրիա համառօտած է Դիոսկուրիայէն, որ հին ատենը շատ անուանի էր. որ շինեցին կըսեն Կաստոր և Պողոքս երկու եղբայր. մէկ կողմէն կը վազէ Հիբոս գետ, և մէկալ կողմէն Դիփանէ, որ առաջ կըսուէր Սեբաստոպօլ և Այա. զի ըստ Ստեփաննոսի՝ Այէտաս թագաւորը Կողքիսայ շինեց այս քաղաքը։

Իսխանոմ էօնկէյի, մօտն է հոն. և մինչեւ հոս են մառկոշները. ասկէց անդին Ապազա է։ Արրիանոս մօտ կը գտնէ Տարսուրաս և Սինկամէս գետերը։

160. ԿՕՑՕՐ, է երեւելի քիթ Ապազայի, որ կը ձեւացնէ Սօխումի նաւահանգիստը։ Արրիանոս հոս կը գտնէ Հերակլեան սարը. մօտ է և Կէօրկիւ բերդը հին. ուկից կըսկըսի լայն պատ մի երեք կանգուն, և Տէվրէնտին քովէն կերթայ կը հասնի մինչեւ լեռն, որ հին ատենէն մնացած է։ Ասանկ հին պատ մ՝ ալ

կայ Կասպից ծովուն Տէրպէնտին մօտ, որ մինչև սև ծով կը հասնի եղեր. կարելի է թէ անոր կտորն է։ Հին աշխարհագիրներն այս կողմերս կը դնեն երևելի հին քաղաք և բերդ Նիտիօս. քովէն կեր-թար Ռօրանէ գետը։

161. ՍՕԽՈՒՄ բերդ, քանդրուած մըղոն հեռու է Իսքուրչէէն, և ունի պատուական նաւահանգիստ, և երկու գետ Մաքէթի և Լաքէթի. բերդն է աղէկ Փարշի բերդին նման, որ Սուլ. Ահմէտն է շիներ. բայց եօթը տարիներս Մոսկովին անցաւ։ Ուր կայ բնակութիւն և խանութ. հոս շատ վաճառականու-թիւն կըլլայ մնկրէլներուն և ապազաներուն հետ։

162. ԱՊԱԶԱ է ասկէց անդին, որ են սկիւթա-ցի թաթար, և տեղ տեղ մնկրէլներուն և տաճկին հետ խառն ըլլալով բուն Անափայի ապազաներէն շատ զանազանութիւն ունին։ Թէպէտ կռապաշտ և ծառապաշտ են, բայց խաչէն շատ կը վախնան և կը պատուեն. քրիստոնէութիւնը կը սիրեն և շուտ կը հաւանին. նշան է թէ առաջ քրիստոնեայ էին մնկր-էլներուն նման, ետքը տգիտութեամբ և աւելոր-դապաշտութեամբ ծառապաշտ եղան։

Ունին կախարդ և վհուկ, որ բակլա քաշելով և կենդանեաց թիուն կամ ոսկորին վրայ նայելով սուտ գուշակութիւններ կընեն ծիծաղական բաներով։ Խաչին վրայ երդում կընեն, և ոմանք կը պաշտեն. երբոր գողէ վախ ունենան՝ պահած բանին քով խաչ կը դնեն, որ վախնալով մարդ չի մօտենար. ունին անհամար աւելորդապաշտութիւններ և թանձր տգ-իտական բաներ. ինչոր սորված են և ինչ սովորու-թիւն որ ունին՝ իրենց բաւական կը համարին. ամե-նևին փոյթ չունին նոր բան սորվելու, և նոր բանի տեղեկութիւն ունենալու։

Դատաստան ընելու որ ըլլան, ծերերը կուգան կը շարվին դատաստանին տեղը, որ Սանճաք կըսեն։ Երկու կողմին դատն ալ աղէկ մը լսելէն ետև՝ կեր-թան առանձին իրենց մէջ կորոշեն արդարապէս բը-նական կանոնով. ով որ չի հաւանի անոնց դատաս-տանին՝ կը պատուհասեն. Կաշառ առնել, և խրատու

զրկում ընել չկյատեն. իրենց օրինաց և կանոնին դէմ ընօղը չեն խնայեր կը պատուհասեն չարաչար։

163. Սունին ցեղապետներ և ազգապետներ, որ դատաւոր են ազգին։ Գլխաւորին կըսեն Զաւղա, այսինքն շահ. Մըղա, պէկ. Նամըճա, տէրէպէկի. Մաան, պէօլիւկ պաշի. Զիւրէկ, զապիթ. Օուսմղա, փոքր զապիթ. Տաղօ, ցեղապետ. Լանըոպա, ազնուական. որոնց տղաքն ալ ազնուական կը սեպվին։ Սատնք կընտրեն իրենց Զաչպան մեծ պէկը։ Սէ գիրք ունին և ոչ օրէնք. բնական օրէնքով կերթան, բայց աւուատուրի յարմար են, և գողութեան վարպետ. իրենց կեանքն է պարզ և վայրենի, նաև մեծութիւննին է անասուն. կերակուրնին չափաւոր է, բայց խմել կը սիրեն. իրենց երկիրը լեռնային ըլլալով ցորեն և բանջարեղէն շատ չունին. հասարակ ուտելիքնին է միս, պանիր, և լազուտի ալիւրը խաշեն փաստա կընեն կուտեն։ Հագուստնին սև մաղեղէն է, որ իրենք կը գործեն. ամառ ձմեռ միակերպ է ամենունը։ Այսպէս է իրենց համրանքը. Նէա մէկ. Թուգա երկու. Իւգա իրեք. Ճէգա չորս. Իսըգա հինգ. Ֆուգա վեց. Պիծգա եօթը. Սագա ութը. Օուգա ինը. Զէյշէ տասը. Լըօչէօ քսան. Օօլզա երսուն. Կասասուշէ քառասուն։

164. Օտարականը խիստ շատ կը պատուեն. եթէ գերի ընեն՝ անխնայ կը ծախեն։ Եթէ մարդ այն կողմն երթայ՝ մէկէն ծնկան վրայ գալով մէկ ապազայի մի ձեռք բռնելու՝ Իյմախ ըսելու է մէկ ուրիշին ներկայութեամբն. որ երդմամբ կընդունի հիւրն, և նոյն կէտին բոլոր ազգին հիւր կըլլայ, անկէ ետև մարդ կարող չէ իրեն դպչելու. և այն Իյմախպան ապաղան՝ որչափ անդամ ուրիշ ապաղայի Իյմախտայ., մարդ չի կրնայ դպչիլ. բայց եթէ մինակ դուրս ելեղ գտնեն՝ գերի կընեն կը ծախեն։

Այս երդումն իրենց մէջ այնչափ օրինաւոր և մեծ է, որ ինչ և իցէ ծանր պարագայ կարող չէ քակելու. ուստի թէև Իյմախպաններն կեանքը վտանգի մէջ ըլլի, և բիւրաւոր մարդկանց դէմ ելլէ, չխոտոր. որոնց դէմ դնելով կը համբէ, ու հիւրը չի մատներ

անոնց ։ Ո՛րչափ մարդավար և մարդասէր են, որ տարիներով կը պատուեն օտարականը սիրով, իրիկուն տատու աղջիկ տալը իրեն ծառայեցնելով ։ Նոյնպէս որ պէտք է զարմանալի պարկեշտ են. Թէ որ անպարկեշտ քան տեսնեն, չեն խնայեր մէկէն կը ծախեն, և չարաչար կը կորսնցնեն ։

165. Մեծամեծ ծառեր կը պաշտեն, որ Ֆէտիշ կըսեն (181) ։ Բայց պատկեր խաչ և գիրք ալ կը պատուեն, տեղ տեղ աղօթքի նման բաներ կընեն հին եկեղեցիներու մէջ. ամէն բանի կը հաւանին շուտով ։ Ռազմ քրիստոնեայ ըլլալով մինչև հիմա ամանք պաք կը պահեն. զատիկը գիտեն, որ կըսեն Ֆէնէքէ. հանգէս և հոգուհաց կընեն կուրախանան ։

166. Քանի որ չեն կարգըլված՝ երեսնին ածիլք չեն զարներ. կարգըլված ատեննին կածիլվին, և մինչև 'ի մահ անմօրուք են ։ Ցեղ ցեղէ աղջիկ չառնէր. երբոր պիտի նշանվին մեծ հարկիք կընեն. ամէն տնէ բան կը բերեն կը լեցնեն ծառին տակը. յետոյ կուդան միաբան աղօթք կընեն, Ֆէտիշ Վերէմ կանչելով՝ ձեռքերնին համայիլի նման բան ունին. ոմանք ալ բան չունին ։

167. Ընկերեակ կուտեն կը խմեն՝ ամէնքը միատեղ պար կը խաղան. իսկ նշանվող տղան որ աղջկան որ հաւնի՝ կը հանէ Թաշկինակը ճակատին կը քսէ ու աղջկանը ուսը կը դնէ ։ Թէ որ աղջիկն ալ հաւնի՝ իր ճակատին կը քսէ ու ծոցը կը դնէ. և այսպէս կը լմննայ նշանը ։ Թէ որ չի հաւնի՝ խաղալով Թաշկինակը կը դնէ նոյն մանչուն ուսը. նա ալ կառնէ ուրիշ հաւնած աղջկանն ուսը կը դնէ. Թէ որ ընդունի՝ կը լմննայ նշանը. Թէ չէ՝ մէկ ուրիշին վրա կը դնէ. մինչև որ մէկը հաւնի, և Թաշկինակն ընդունի ։

Երբոր կարգըլվելու կըլլան՝ այսպէս ուրախութիւն ընելէն ետև՝ իրենց ծերերուն առջին հաւանութիւն տալով կը կատարեն հարսնիքը ։ Թէ որ մէջերնին պարկեշտութեան դէմ գիշութիւն պատահի, կը տանին ծովը կը նետեն, մարդ տէրութիւն չի կրնար ընել ։ Անոնց երգեր, որ կը վերջանայ իրենց քաղ

անուանի հիներուն անուամբը ։ Այս ծերերն իրենց քահանան կը սեպուին, և անոնք կը կատարեն ամէն բաները թէ՛ հոգևոր և թէ մարմնաւոր ։

168․ Մեռելնին լվանան անանկ կը թաղեն, և ամէնքը միաբերան լալով կը ծեծկըվին, և քառասուն օր սուգ պահելով չեն ածիլվիր՝ սևեր կը հագնին ․ նաև գերեզմանին քով կերակուր և գինի կը դնեն, որ անցնօղներն ուտեն հոգուն համար, և նոյն քառասուն օրը գերեզմանին քով մոմպատ կը վառեն ։

Անկէ ետև ազգական և բարեկամ նորէն կուգան գերեզմանին քով՝ կը ծեծեն իրենք զիրենք ողբալով ․ ետքը ոչխար կը մորթեն կուտեն կը խմեն, և կրա կըսին պար խաղալ ։ Որչափ սուգ և մեծ նեղութիւն ունենան՝ չեն ածիլվիր, մինչև որ այն ձախորդութիւնը չանցնի ․ որ է հին սովորութիւն ասիացւոց ․ ինչպէս հայոց մէջն ալ կայ մինչև հիմա ։

169․ Հին ատենը այս կողմիս հայոց թագաւորները կը տիրէին ․ ետքը յունաց և հռոմայեցոց անցաւ ։ Իրենք ինքնագլուխ թագաւոր ալ ունեցան ․ մայրաքաղաքը կըսուէր Արիկավաթա ․ իսկ Տամատար բերդն առաւ Միհրդատ և իրենց թագաւորը վերցուց ։ Այս աշխարհ սկսեալ Տրապիզոնէ եօթն ազգ կը բնակին ․ Լազ կամ Լեզկի, Կիւրք կամ Մինկռէլ, Աբխաթի, Օսի, Թաթար, Չէրքէզ, Ապազա ։

Ապազայի տէրութիւնն երկուս կը բաժնըվի, ունին պէկ ․ մէկը Անափայի կողմն է, մէկալը Սօխում է, որ կը տիրէ այս կողմի ցեղերուն մինչև Անափա (180) ։

170․ ՍՕՎՈՒԳ ՍՈՒ, յիսուն մղոն հեռու է Սօխումէն ․ ունի հին բերդ և գեղէր ․ ուր կը նստի Սէֆէր պէկ ապազա, որ մեծ օրը մոսկով քրիստոնեայ եղաւ ։ Աստ է Ճանտիլի բերդ և Աղաձա գեղ ։ Ուր ցեղ մի կայ, որ մեռելին գլուխը կածիլեն, անանկ կը թաղեն ։

171․ ՊՈՒՃՈՒՆՏԱ, տասնըութ մղոն հեռու է ․ ունի լաւ նաւահանգիստ և Կապիտի գետ, այլև հին բերդ ։ Ուր կայ մեծ եկեղեցի աղիւսակերտ, վրան երկու գմբէթով ․ երկայնութիւնը հարիւր յիսուն

ոտք կայ, և լայնութիւնն եօթանասուն. իրեք դուռ ունի, մէջն է պատկերազարդ. ուր խաչելութիւն և աւետարան կայ կիւմձիի. որ շատ կը պատուեն ապազաները, և երկրպագութիւն ընելով երեսնին խաչ կը հանեն. երդումը այս եկեղեցնայ վրա կընեն:

Այս եկեղեցին պարսպի մէջ է. բակին մէջ սիւներ տնկած կան վրան խաչերով. նաև իրեք մատուռ կայ զատ զատ: Շուրջառի կողմանք պահեր են որ հոգևոր բաներու համար կը գործածեն իրենց ծերերն, որ եկեղեցնայ մօտը կը բնակին, և երբ քահանայ՝ անոնք կը մտնեն կելլեն, ու հոգևոր բաները, աղօթքը, և հոգու հացը անոնք առաջ անցնելով կընեն. որոնք ամէնը ծառապաշտ են: Անոնք առաջ մնկալելի նման քրիստոնեայ էին, ունէին ամէն բան. հիմա թանձրամտութեամբ ըրածնին ալ չեն-տեն. բայց ամէն բանի շուտով կը հաւատան: Այս կողմն է Արաքլիա քիթը, և Ուալունքա գեղը:

172. ՏԻՎՐԻՆՏ, կամ Տէրղէոփ, տասնըութ մղոն հեռու է. ունի նաւահանգիստ և ջրանցք, որ շատ հին է: Կէօրկիւ բերդն ոմանք հոս կը դնեն. և հաստ պատն այս կողմն կիյնի. որ մէկալ ծայրը կասպից ծովուն Տէրպէնտը կը հանի եղեր (160): Առաջ մեծ քաղաք էր հոս. բնակիչները կըսեն թէ Աղէքսանդրին շինածն է: Իբր զի՝ կասպից ծովուն Տէրպէնտին քովն ալ շիներ էր Աղէքսանդր ամուր քաղաք. ուր կը հանի Կովկասու թևն, որ կըսվի Տէմիր գափու. և նոյն տեղն երկըթէ դուռ շիներ էր. և ասկէց առաջ կերևնայ տեղացոց աւանդութիւնն, թէ Աղէքսանդր երևելի տեղ շիներ էր հոս: Քրիստոնէութեան ատենն ալ այս տեղերս ծաղկած էին. ինչպէս հին եկեղեցիներէն յայտնի է. ունէին շատ քահանաներ, և եպիսկոպոսներ: Այս քաղաք Սուլ. Միւրատ պաշարեց առաւ: Տէվրէնտի և Պուձունտայի մէջն է Խօյա ցեղն ապազայի. որ ապստամբ ըլլալով աւազակ են ամէնքը:

173. ԱՌՏՒԼԻՐ, առաջ աւան էր հիմա գեղերեն. ունի գետ. մօտն է Քէչիլէր գեղը, ուր նաւ կը կենայ. և հոն կայ մեծ եկեղեցի՝ մէջը չափազանց մեծ

խալկին կայ. պապազներն ամէն տարի ուխտ կեր-
թան, և ամբողջ կամը կը խաչեն հոգուհաց կընեն
կուտեն: Մօտ են Մօշա, և Անաքօրխա տեղերը:
Առաջ այս կողմն եպիսկոպոսարաններ կային. ուր
կը յիշեն՝ Օէնանթիա քաղաք. Մօչայէն անդին էր
Տանտար քաղաք հին. ուր կը յիշեն Մալէնթէր նա-
ւահանգիստ:

174. ՄԱՄԱՑ ԳԱԼԻՍԻ, իբր հարիւր մղոն հեռու
է Պուճունտայէն. բոլոր պատուած լեռներ են. կայ
հին բերդ: Լեռան վրա հին գերեզմաննոց մը գտան
և մեռելներուն վրայէն ոսկեղէն հին զարդեր ելան՝
գօտի, ոսկի շղթայ, և այլն: Արրիանոս այս կողմն
տեսաւ Մաքերոնացի ազգն, որ թագաւոր ունէր.
նաև չորս զանազան ազգեր կը յիշէ. Սերն է Խոփզէ,
ուր ամէն գեղ մէկմէկ մեծ կը նստի իբր դատաւոր,
որ կըսվին Լօղօֆէն: Ասոնք կը դատեն ժողովուրդը
գիւղին կերպով, և շուտով կը վճարեն դատը. գրե-
թէ ամէն ցեղ ինքնագլուխ են իրենց դատաւորով.
ամէն բան իրենք կը կտրեն. թէ որ մեծ կռիւ ու-
նենան իրարու հետ՝ անտառենը Պէկը կը խառնըվի,
կուգայ կորոշէ:

175. ՍԱՌՏԱՆ, կամ Լըվըրփենէ, և Սուղաշը, ան-
շուք տեղեր և գեղեր են. ուր կայ գետ. մօտ են
Սուփան, Լաւոպէ, և Կոփօշ գեղերն, ուր գետ կը
վազէ: Առաջ այս կտօշի գետն էր սահման Ապա-
զային և Մինկրելին. որ հին ատենը կըսվէր Պրօբտոս:
Հոն է կըսեն տեսկալի մեծ ծառը Կոփօշ անուամբ.
որուն սատուածական պատիւ տալով ամէն տարի
ուխտ կերթան. այն ծառին տակը փախչօղ գերին
և մեհապարտը կազատի. Այսպիսի ծառ ամէն
տեղ կայ, որ պատուելով ընծայ կուտան լաթեր,
պղնձեղէն ամաններ, և այլն. ուստի բիւրաւոր բանե-
րով զարդարած կերևնայ: Շատ քննեցինք որ հաս-
կընանք թէ ինչ խորհրդով այս ազգն այսչափ ջեր-
մեռանդութեամբ ծառ կը պաշտէ. ուրիշ բան չի
գտանք, բայց եթէ բնական նախապաշարումն. որով-
հետև բնական է մարդուս, մանաւանդ տգիտաց, որ
մեծ բաներու վրա զարմանայ, և որչափ աւելի զար-

մանայ, այնչափ աւելի ափշելով աստուածական պա-
տիւ կուտայ. ինչպէս հին եգիպտացիք Նեղոս գե-
տին մեծութենէն զարհուրելով կը պաշտէին: Նոյն-
պէս այս ազգերը մեծամեծ ծառերուն բարձրու-
թեանը և անքաւ ձիւղերուն վրայ հիանալով սկսան
պաշտել, և աստուածական պատիւ տալ. մինչ զի՛
անհնարին է որ ծառ կամ կանանչ տունկ մի կտրեն.
որ մարդասպանութենէ շատ աւելի մեծ մեղք կը
համարին. ուստի միայն չոր փայտը կը կտրեն:

Նոյն պատճառաւ հին ազգերն՝ հիանալով գետե-
րուն և մեծամեծ լեռներուն վրայ կը պատուէին.
գրեթէ պանտացիք ամէն մեծ լեռներուն վրայ տաճար
շիներ էին տրքազան կոչելով. ինչպէս է Եօսօզ (99).
Եւ ասկէց քրիստոնեայք ևս ամէն մեծ լերներու
վրայ եկեղեցի շինեցին, նոյնպէս և այլազգն ուխտա-
տեղիք շինեց. ինչպէս տեսանք:

Թուղլար, յիսուն մղոն հեռու է Ամասիայէն, վե-
րը կան զանազան գեղեր և զանազան ցեղ ազգազա-
ներ, որ աւելի թանձրամիտ ըլլալով կերպ կերպ սո-
վորութիւններ ունին, բայց են ծառապաշտ. ունի
գետ. մանր նաւեր կրնան մտնել այս գետին մէջ,
որ Թուղ սուտ կըսուի:

176. ԶՕՖՍՈՒՆ, տասնըութ մղոն հեռու է Թուղ-
լարէն. ուր կան գեղեր, և ունի մեծ գետ Զօֆսուն
բուղազի. որ կուգայ ապարայի լեռներէն. բերանը
քիչ մի ծանծաղ է աւազով, բայց նաւ կը մտնէ. գե-
տէն Ներս գոգ է, Նաւեր կրնան կենալ: Նոյն կողմն
բոլոր անտառ է. տեղ տեղ պարտէզներ ալ կան. ու-
րանք կը հանեն դարի, մորացորեն, և ուրիշ հնդե-
ղէն. որ ուրիշ բանի հետ կը փոխեն: Նոյն կողմի ա-
պաղաններուն շատը բորոտ են իրենց ուտելիքն անլի
ըլլալուն համար. որ ամենևին ձուկ չեն ուտեր, միս
և կաթնեղէն շատ կուտեն, ունին շատ ոչխար և այծ.
վայրենաբարոյ ըլլալով որսորդութիւն շատ կը սիրեն,
և աւազակութիւնն իրենց մէջ քաջութիւն կը սեպվի.
վասն զի իրենց տղոցն աւազակութիւն և գողութիւն
կը սորվեցնեն, որ մեծցածնուն պէս կը սորվին Նետ
Նետել, որսորդութիւն ընել, և մարդ գողնալ. ամառ

համար իրենց բերդերը կամ հին քաղաքներուն երեսի վրայ մնացեր են քանդած. անպէտ կերևնայ իրենց քաղաքը, նաև քաղաքական բաները. վասն զի քաղաքը քաղաքավար մարդու տեղ է, և ոչ վայրենեաց։

Այս տեղերս երբեմն նաւեր կերթան առուտուր կընեն ապազգաներուն հետ. որոնք ոչ կշիռ գիտեն, և ոչ սակ կը ճանչնան. միայն իրենց պէտք եղած բանը կառնուն, պէտք չեղածը կուտան՝ փոխանակութիւն կընեն. ուստի հաճար, մաքացորեն, մորթ, և կաշի կուտան, աղ կառնուն։ Այս ցեղ, որ ծառի սաստիկ ջերմեռանդ ըլլալով կը պատուեն ձիւղերը. ուստի այլազգն երբոր գողէ վախ կունենայ, ապրանքին վրայ ծառի ձիւղեր կը դնէ, որ ապազգաները վախնալով չեն մօտենար։ Ինչ որ տեսնեն մէկն որ գալար ձիւղը կը կտրէ, դող ելլելով կաղաղակեն, թէ մեղք է, և կաղաչեն որ այն սպաննութիւնը չընէ ու չի պատուհասի։ Որոնք որ այլազգաց մօտ են, այսպիսի բաներէն հիմա թուլցած են։

177. ՍԻԼԻՆՃԻՔ, երսունըվեց մղոն հեռու է. ունի լաւ նաւահանգիստ, և կամ մեծ ծոց. մէջը գետ կը վազէ. նաև հողէ բերդ կայ, ուր կան գեղեր, մանաւանդ լեռները։ Այս կողմն երկու ազգայի զատ գեղեր կան՝ Աբոխոս և Պլատոս. ուր բոլորը հայ են, և ունին ժամ և քահանայ, որ Ախրման բերդին բնակիչներն են Աճէմիստանէն եկած ժամանակով, յետոյ հոս են փախեր. որոնք ազգային վարք ունին. հոգուհաց ընելու աւելի ջերմեռանդ են. ուրիշ բանի շատ չեն նայիր. նաև քահանան կը պատուեն, ինչպէս որ պէտք է, թէպէտ տգիտութեամբ լեցված են. առուտուրի որսորդութեան քաջ են, ուրիշ բան չգիտեն. հասարակ լեզունին ազգային է, գիտեն հայերէն. ունին ժամ, ուր առաջ վարդապետ կար. որ զիրենք կը հոգար, յետոյ վախճանեցաւ, ինչպէս տեսան գերեզմանը. իրենց աղջիկներն ալ ազգային նման են հագուստով և ամէն վարքով. գլուխնին կլոր խալքալ կը դնեն, որ իրենք կը շինեն։

178. ՍՕՂՈՒՃԱՔ, տասնըութ մղոն անդին է. ունի մեծ ծոց, նաւահանգիստ և հին բերդ. Ուր կայ

փոքր կղզի Սանթօ ապոսէ ծովուն մէջ. և Ս՛ինթ գետ: Ս՛օտ են Իսլէ լիման, և Պէշաճիկ: Հինէրը կը յի-շեն Սինտա քաղաք. նաև Արրիանոս այս կողմն եր-կու երևելի նաւահանգիստ և չորս գետ կը յիշէ: Տես տախ. Փ:

179. ԱՆԱՓԱ, կամ ըստ հն. Սինդիկէ, երասուն-վեց մղոն հեռու է Սօղուճաքէն. նաւահանգիստն ապահով չէ, բայց բերդը ամուր շինեցին Տաճկի ա-տենօ. բնակիչներն են այլազգ և ապազա: Այս բերդ իբր սահմանագլուխ համարելով Օսմանեան տէրութիւն լաւ ամրցուցած է թնդանօթներով և զօրքով. ուր փաշա կը նստի, և շատ նաւեր կերթան կուգան. շատ վաճառականութիւն կըլլայ ապազա-ներուն և չէրքէզներուն հետ. մեր ազգէն ալ վա-ճառականներ կերթան. նոյնպէս ասկէց նաւեր կեր-թան ապրանք և գերի կը տանին ամէն տեղ, և մինչև Ստամպօլ և Եգիպտոս:

Աբխազն, կամ Հենիոքայ, են անկէ անդին, որ փոքր տեղեր ըլլալով երբեմն նաւ կերթայ: Անա-փայի լեռները զանազան ազգեր կը բնակին, մանա-ւանդ կուպանին քովերը. գլխաւորն է՝ Ապազա, Չէրքէզ. և Ախալթի: Այս երկիրներէն և բոլոր ապազայէն զանազան տեսակ ապրանք կելլէ. զորօրի-նակ մորթ, կաշի, զէրտէվա, մոմ, մեղր, եղ, պանիր, աղած միս, գերի, և այլն:

180. ԱՊԱԶԱ, որ կը բնակին Անափայի կողմը՝ տարբեր են մէկալներէն: Ասոնց գլխաւոր տեղն է Կուպան գետին քովերը, և իրենց Պէկը Սօվուզ-սու կը նստի. երկիրն ալ կըսուի Ապազա, կամ Ապա-սի, և կամ Աբգաս. գրեթէ ամէնքը ծառապաշտ են և մեծամեծ ծառեր կը պաշտեն. երբեմն երբեմն շատ բաներով և ծաղիկներով կը զարդարեն. նաև սա-րերնին և զէնքերնին ալ վրան կը կախեն. ամէն հո-գևոր բաներնին նոյն ծառերուն քով պիտի կատա-րեն. և երբեմն սատուներն ալ ծառին բոլորը աղօթք ընելով կը պտըտին, ու անանկ կըսկըսին գործքը. զարմանալի է իրենց ջերմեռանդութիւնը. բայց այն-չափ թանձրամիտ են, որ կուռօրէն, և ասանց գիտ-

նալու անասունի նման կընեն իրենց սովորութիւնը, ոչ պատճառը գիտեն, և ոչ սկիզբը. ինչ որ հարցընես ապուշ կը կենան, և ինչ որ զուրցես կը հաւանին. բայց իրենց գիտցածէն ետ չեն կենար:

181. Տեղ տեղ ծառերու մօտ վարդապետական գաւազանի ձևով փայտ կը տնկեն, որ Թ՝ափչը կըսեն. քովէն անցած առեններին գլուխնին կը բանան աղօթք ընելով երկրպագութիւն կընեն. որչափ մեծ հարկաւորութեան մէջ ըլլան՝ անհնարին է որ առանց ձիէն վար իջնելու, և առանց երկրպագութիւն ընելու անցնին այն Թափչիին քովէն. ուր աղօթքի նման բաներ ալ կըսեն. կերևնայ թէ միշտ յաջողութիւն կը խնդրեն իրենց գործքին, և շատ երկիւղած են հոգևոր բաներու մէջ: Իրենց հասարակ աղօթքին մէջ Աստուածածնայ անունը կը յիշեն. և Յիսուս կը պատուեն մեծապէս առանց գիտնալու պատճառը՝ Մ՝էյրէմօղլու կոչելով. այսինքն որդի մարիամու: Ամէն հարկաւորութեան մէջ այսպէս կաղօթեն ,, Թ՝աանըրղ տա ղըէմուէթ աչըէմըզը ծըքըր ղըէմէթ բընըմըզ ,,. այսինքն ,, Մ՝եր ղսմէթը դուն չի տաս, ուրիշ մարդ մեր ղսմէթը կարող չէ տալու ,,: Շատ հոգևսէր կերևնան դըսէն, խաչը շատ կը պատուեն, և մինչև հիմա հին ժամերուն մէջ կը պահեն երկիւղածութեամբ. երբոր գողէ ահ ունենան՝ խաչը կը դնեն հոն. մարդ չի կրնայ մօտենալ (162):

Այս ազգաներուն Խօնախին աւելի հաստատութիւն պէտք է ունենայ, քանթէ մէկալոնց, թէ չէ՝ վտանգաւոր է. վասն զի հարկաւոր է որ Օսմանցուն սահմանին մէջ խօնախ բանեն իբր երաշխաւոր. որ կը պարտաւորի երթալու սահմանագլուխն. ուր կը գտնէ խօնախպան ազգան, և երդումով անոր կը յանձնէ հիւրը. ինչ ազգէ ըլլայ՝ իրենց առջին միակերպ է: Այս խօնախպանը կըլլայ իբր տէր հիւրին, կառնէ կը տանի տունը կը պահէ որչափ որ ուզէ հիւրը. գործքը կատարելու կըջանայ, և ամենայն կերպով կը հոգայ, և կըզգուշանայ որ վնաս չի գայ հիւրին. միշտ քովը կը պտըտի, թող չի տար՝ որ իրմէ հեռանայ, և անկարգութիւն ընելով վտանգի

մէջ լինի, կամ մինակ գտնըրվելով ուրիշի սահմանը՝ պահպանները զինքը բռնեն ծախեն. ինչպէս որ շատ անգամ կը պատահի. Թէպէտ խօնախպանը ահ մի չունի, բայց մեծ մեղք կը սեպէ իրեն, և պարտական է ամէն բանէն աւելի հիւրը հոգալ. Նաև բոլոր ընտանիքը, և աղջիկները պարտաւորեալ են հոգ տանելու և պատուելու: Իսկ հիւրը թէ որ ուրախութեամբ և շնորհակալութեամբ ելլէ իրենց տնէն՝ շատ մեծ պարծանք կը համարին. Եւ առաւել՝ թէ որ ուրիշ անգամ ալ նոյն խօնախպանին երթայ. իսկ թէ որ ուրիշ խօնախպան բռնէ ու անոր տունը երթայ, շատ մեծ նախատինք կը համարին, և ոխակալութեամբ կը չարանան:

Ասոնք ունին սովորութիւն, որ երբ շատ քալելով կը հոգնին, իրիկունը կրակ կը վառեն, ու կրակին բոցին վրա կայնած կը կենան. և այն բոցին ծուխը մերկ մարմինին դպչելով ուժ կառնուն, և ջղերնին կը զօրանայ կըսեն. ուստի շատ ուշադրութեամբ այս գործքը կընեն: Նմանապէս իրենց ամենայն բնական սովորութիւնն անվրէպ պիտի կատարեն. ամենևին զանցառութիւն չեն ըներ, և անանկ հեղգ և թոյլ մարդիկ չեն: Սակայն ուրախութիւն և պար խաղալ շատ կը սիրեն. մէկ քանի աղջիկ, կամ երիտասարդ մէկ տեղ եկածնուն պէս կըսկըսին երգել միաբերան, և բոլոր օրն երգեն խաղան՝ չեն ձանձրանար: Տեսանք ատոնցմէ, որ գերի բռնըված կերթային. սակայն իրենց սովորական երգերն ընելով կուրախանային: Ունին հին երգեր իրենց նախնեացը վրան շինած, որ շարունակ կերգեն գեղջկօրէն. չունին երաժշտութիւն, և ոչ գործիք չալելու. միայն բերնով երգել կը սիրեն միաբան ուրախանալով:

Որչափ հոգևոր բան լսեն որևիցէ ազգէ՝ ջերմեռանդութիւն կը շարժին, չգիտեն թէ ինչպէս լսեն. թէ որ Ճշմարիտն Աստուած վարդապետս, և Յիսուսին հրաշագործութիւնները պատմես, մէկէն կըսեն, թէ մենք ալ անոր կը հաւատանք և անոր երկրպագութիւն կընենք. բայց ծառապաշտութենէ ետ չեն կենար:

Այծակէ զարնըւօղը մարտիրոս սեպելով եօթն օր և եօթն գիշեր ուրախութիւն կընեն. մարմինը իրեք օր իրեք գիշեր զարնըւած տեղը ծառին վրա կը դնեն, ու տակը կը պարեն. իրեք օր ալ տունը կուրախանան, յետոյ կը թաղեն ,, Վաշխօր Եօխող ,, ըսելով. այսինքն Աստուծոյ որդին զարկաւ: Հին հռոմայեցոց մէջն ալ կար այս սովորութիւն, որ կայծակէն զարնըւօղն ու չմեռնօղը որբազան կը համարէին Արամազդայ սիրելի, և անոր ազգն ազնուական կըլլար: Այս ցեղ որ մեռելը չի թաղեր. ծառերուն խոռոչին մէջ կը դնէ ճիւղերով կը կապէ. և իրեն զէնքն ու լաթերը ծառին վրա կը կախէ: Այս ևս ցեղ, որ կենդանի և շուն կը պաշտէ. բայց ատոնք ներսը լեռնաբնակ և վայրենի են բոլորովին, թէպէտ հիւրը կը պատուեն: Պատմեցին մեզ թէ իրենց գեղին մէկ կողմը տեսած առանձին տեղ կապած մեծ սոսկալի շուն մը. ուսկից այնչափ կը դողային աւելորդապաշտութեամբ, մինչ զի ամէն անգամ նախ շանն առջին կը դնէին կերակուրը, և անկէ աւելցածն իրենք կուտէին:

Հարսնիքնին և հիւրասիրութիւննին նման են մէկալ ազգաներուն. բայց լեզունին տարբեր է. զորօրինակ Ա՛նցեօհա աստուած. Օբաչ հայր. Ա՛նահձահչ մայր. Աէշա մանչ. Լ՛ֆա աղջիկ. Ա՛ահէյ եղբայր. Ա՛հչահէյ քոյր. Աօօ սիրտ. Աաչխա գլուխ. Լ՛ա աչք. Լօօմղա ականջ. Լմղա բերան. Ա՛աաահ արև. Ա՛ամղ լուսին. Ա՛էխա աստղ. Ա՛էկմշէհ օր. Պախահ գիշեր. Աօօլֆէղ իրիկուն. Հաբնէհ գարուն. Րոհչնէհ ամառ. Պհձահխա աշուն. Աէէն ձմեռն. Աահէհօօ տարի. Տէէօհէէ մահ: Ուպանին ազգաներուն խօսքն ալ ուրիշ կերպ է, և ամէն ցեղ ունի փոփոխութիւն:

Ոչ գիրք ունին, ոչ գիր, և ոչ օրէնք. բնական օրէնքով լաւ դատաստան կը կտրեն: Արեանարբու-դէշ մարդիկ չեն, աղէկ սիրտ ունին, չարութիւն չեն սիրեր. բայց գողութեան վարպետ են: Ծովուն մօտ եղօղներուն շատն այլազգութի դարձած են, և օրէ օր կը դառնան. զի այլազգը փոյթ շատ ունի զանոնք շահելու: Սակայն իրենց կռապաշտա-

կան սովորութիւնն ալ չեն թողուր։ Որչափ որ ի-
րենց օտարական հիւրը կը պատուեն, անչափ ալ ան-
խնայ բռնեն կը ծախեն երբոր հիւր չէ եղած իրենց.
ուստի հեռուէն օտարական մի տեսածնուն պէս՝ մէ-
կէն ձիով կը հասնին, և կամնցմը իրենց կաշիէ որա-
գայթը կը նետեն վրան անասունի նման կը բռնեն
մէկէն ձին կը վազցնեն. որ խեղճ բռնուածը պիտի
վազէ ետևէն. կը տանին շուտով կը ծախեն իրա-
րու։ Ապազաներն անուանի են ճարտարութեամբ,
և շատ երևելի բարակ մարդիկ ելած են կրթու-
թեամբ. Նաև կան օսմանցուն մէջ կարդացող խե-
լացի փաշաներ այս ազգէն։ Հասարակօրէն լեռան
բնակողներն աւելի վայրենի և թանձրամիտ են. իսկ
ծովեզերքը բնակողներն են այլազգի մօտ։

182. ՉԵՐՔԵԶ, Կովկասու լեռան բնակիչներն
են Կապարդայի կողմն, որ Կուպանին և Տօն գետին
մէջ վեց հարիւր մղոն երկայն կայ իրենց երկիրը.
քաջ և զօրաւոր ազգ են՝ միայն անմիաբանութիւնը
զիրենք կաւրէ։ Իրեք կարգ բաժնըված են՝ Իշխան,
Ազնուական, և Ժողովուրդ։

Կապարդայի ժողովուրդն իրեք իշխանի տակն են,
աւելի հին ցեղին իշխանը գլուխ և դատաւոր է ազ-
գին։ Իշխանները շատ մեծ յարգութիւն ունին և իբր
սրբազան կը համարին, թէպէտ զգեստնին, տներ-
նին, և կերակուրնին հասարակ ժողովրդէն աւելի
չէ, ամէնքը միակերպ են։ Չունին գրած օրէնք,
այլ հին սովորութեամբ կերթան։ Մեծ հարկաւո-
րութեան ատենը ամէնքը կը հաւաքին՝ մեծ իշխա-
նը կառաջարկէ գործքը, և ծերերը կորոշեն ժողո-
վուրդին կողմանէ. որ դիւրահաւանութեամբ շու-
տով կը հնազանդի ժողովուրդն իրենց ծերերուն.
զի բնական օրինօք շատ կը պատուեն մեծերը, և
կուրօրէն կը հնազանդին։

Երբոր իշխանին տղայ կըլլայ՝ երևելի մարդ մի
կընտրէ, որ յետոյ տղին վարպետ ըլլայ. երբ տարե-
կան կըլլայ տղան՝ կը դնեն առջին զէնք և խաղա-
լիք. թէ որ տղան զէնքին երկնցնէ ձեռքը, մեծ
բան սեպելով շատ ուրախութիւն կընեն բոլոր ազ-

գականներով. Եօթը տարեան որ կըլլայ՝ կը ձգէ հօրը տունը կերթայ վարպետին. որ իրեն կը սորվեցնէ ձի հեծնիլ, զէնք գործածել, աւազակութիւն և գողութիւն ընել. որ մինչև յաջող չըլլայ՝ ու մեծ աւազակութիւն չընէ, չի կրնար դառնալ հօրը տունը: Ռամիկ ժողովուրդը շատ կը ջանայ որ իշխանին տղան գողնայ մեծցընէ. զի ասով կրնայ մեծնալ և ազնուականաց կարգը մտնել: Առաջ Խրիմի Խաներն իրենց տղաքն ասոնց կը ղրկէին, որ կրթըվին, և ձի հեծնիլ սորվին (218):

Մայրերը կը մեծցընեն աղջիկնին, և իրենց բան բանել կը սորվեցնեն. բայց ծնածնուն պէս լայն կաշիէ գօտի կը կապեն մէջքերնին, այնչափ կը թողուն որ մարմինը մեծնալով կաշին կը ճաթի, նորէն կը շինեն. Երբոր կը մեծնան գեղեցիկ բարձրահասակ կըլլան, և աղէկ կրթութիւն կառնեն. Իրենց մէջէն կելլեն խոհեմ բարակամիտներ, որ ամէն բան ձեռքերնուն կուգայ. և անուանի են այլազգաց մէջ:

Երբ պիտի նշանվին՝ ամէնքը միատեղ պար կը խաղան. մանչը զանազան շարժմունքներով կը խաղայ հաւնած աղջկանը հետ, և այնպէս կորոշեն նշանը: Արգելած է որ յայտնի կենակցութիւն չընէ էրիկը կնկանը հետ: Թէ որ էրիկը մեռնի, կնիկը մազերը կը փեթտէ և երեսը ճղքրտելով սուգ կը մտնէ, և շատ ժամանակ սգաւոր կը մնայ:

Այս կնիկները լաւ ձի հեծնելով շատ քաջութիւն կընեն. անոր համար ոմանք զասոնք կը համարին Ամազոնիք: Պլուտարքոս կը պատմէ թէ Աղուաններուն կռուին մէջ կային Ամազոնի կանայք. ինչպէս որ գտան անոնց մանր վահանն ու կօշիկները և ուրիշ զարդարած զէնքերը. որոնք կըսէ կովկասու կողմերը կը բնակէին (85): Չերքէզները հաստատ կրօն չունին, թէպէտ այլազգաց մօտ են. և շատը այլազգ եղած են, այլ ուզածնուն պէս կերթան: Ունին կերպ կերպ աւելորդապաշտութիւններ, և զարմանալի սովորութիւններ ամէն ցեղ մէյմէկ կերպ: Երբոր պատերազմ պիտի սկըսին՝ ոմանք մոկովի գերի կառնեն կը մորթեն իրենց ազգին հոգինե-

րուն զոհ կընեն, որ պիտի մտնին նոյն պատերազ-մին մէջ. և երկնից ընծայ կընեն թափած արիւններն :

Ոմանք գիր չունին, ոմանք այլազգի գիր կը սոր-վին. լեռները գերեզմանի քարերուն վրայ գիր կայ որ չի կարդացվիր. իշխանները կըսեն թէ հին դըր-քեր ունինք : Չերքէզին սկիզբն ինչպէս ըլլալը չգի-տեն : Կերևնայ թէ են Յոյնք կամ Վրացիք ընա-կիչք կովկասու ըստ պատմութեան Պլինիոսի :

Կոստանդին պատմիչը զանոնք Կասողի կանուանէ, որ արևելեան կողմէն եկած են. որով երկիրը Կա-սողիա կոչվեցաւ : Որոնց լեզուն տարբեր է մէկալնե-րէն. զորօրինակ՝ Թհա աստուած. Յաթա հայր. Յա-նա մայր. Ասնօ որդի. Փասէ աղջիկ. Նանոշ եղբայր. Շաղջ քոյր. Ծըֆէ մարդ. Նաշ աչք. Ժաշ բերան. Գու սիրտ. Ըէ ձեռք, և այլն.

Անափայի ապազաններուն ալ հասարակօրէն այս լե-զուն կը խօսին : Խորենացին կը յիշէ Ափխազ և Ափշեղ, որ են Աբազայի ցեղք, և կը բնակին Կով-կաս, և ոմանք ծովեզերքը կը բնակին. սակայն լեռ-նաբնակներն աւելի վայրենաբարոյ ըլլալով ունին արտաքոյ սովորութիւններ, կռապաշտական ջեր-մեռանդութիւններ, և զարմանալի արարողութիւն-ներ ամէն ցեղ մէյմէկ կերպ. շատ խնամք և սէր ունին կանանչ ծառերուն վրայ, միայն չոր ծառը կը վառեն, և մեծապէս կը սարսափին մեծամեծ ծառերէն. այն-պէս կը համարին թէ իբր հոգի ունին և տէրունի սրբա-զան էակներ են. նաև մեծ ջերմեռանդութիւն և յարգութիւն ունին գերեզմաններուն վրայ, միշտ հոգուհացը պակաս չեն ըներ, յիշելով իրենց մե-ռելներն և շատ հոգալով :

183. ՕՍԵԹԻ, թաթարի ցեղ են, որ բարձր լեռ-ներու վրայ կը բնակին, օտարականը շատ կը սիրեն. իւր աղջիկները կը հոգան և կը պատուեն օտարա-կանը ամենայն պարկեշտութեամբ : Կայ նաև ուրիշ ցեղ որ կըսվի Ինկիւշ. ասոնք ունին քրիստոնէական նշաններ. մէկ աստուած կը ճանչնան, որ Տէօշէ կը-սեն, ուրիշ բան չգիտեն. կիրակին կը պահեն, գա-րունն ու ամառը ծոմ կը պահեն. միայն մէկ ան-

գամ զոհ կընեն ։ Ունին քահանայի պէս ծեր, որ լե-
ռը կը բնակի քարէ տաճարին մօտ. որուն մէջ զար-
դեր արձաններ և գրեանք կան, ինչպէս տեսան ։
Ասոնք հիմա մոսկովի տակն են ։

Օսի ազգն է ինքնագլուխ, որոնք Կովկասու քովերը կը բնակին. բոլորը ծառապաշտ են. և շատ բաներուն ապազայի նման են. թէպէտ շատ թանձրամիտ են, համրանք չգիտեն. և ինչ որ ուտեն նախ իրեք կտոր կտրեն կը նետեն՝ ետքը կուտեն. բայց գիտեն անմահութիւն հոգւոյ, մեռելները շատ կը պատուեն ։

Ակիւթացոց աշխարհը քարոզելով լուսաւորեց սուրբ Փիլիպպոս կամ սուրբ Թովմաս առաքեալն ըստ ոմանց. ուսկից էր Քրիստափոր փառաւոր վկայն ։ Նաև շատ ծաղկած քաղաքներ կային այս կողմերս. որոնք հետզհետէ խաւարեցան թանձրամտութեամբ, և վայրենական սովորութեամբ թշւառացան, ինչպէս տեսանք շատերուն ասոնցմէ ։

184. ԳԸԶԸԼԴԱՇ ՊՕՂԱԶԻ, երսունըվեց մղոն հեռու է Անափայէն, որ է բերան Կուպան գետին. չափաւոր մեծ ըլլալով նաւ կը մտնէր, և գըզըլդաշ սարը քիթ ձևանալով պատուական նաւահանգիստ կըլլար թէ որ ծանծաղ չըլլար ։ Վասն զի այս երեւելի գետ միշտ տիղմ բերելով ցածցեր է ջուրը ։

185. ԿՈՒՊԱՆ, ըստ հն. ԱՆԹԻԿԻՏԵՍ, երևելի մեծ գետ՝ կելլէ Կովկասու մեծ լեռնէն, և Կովկասու լեռներէն անցնելով կուգայ Աջու բերդին քով երկուս կը բաժնուի, որ թաթարերէն ջուխտ ըսել է. ապա կուգայ Անափայի կողմէն Գըզըլդաշ պօղազին, և հոն լայնալով լճի նման կըլլայ ու ծովը կը վազէ. բայց ջուրը ծանծաղ ըլլալով մեծ նաւ չի կրնայ մտնել ։ Մէկ թևը կերթայ Ազախու ծովը. որ Թէմրուքէն տասն մղոն վեր Ասաքուլի բերդին առաջէն կը վազէ. ուր է սահմանագլուխ օսմանցոց ։ Արրիանոս Տանայիս գետ կը դնէ հոս ։

Արդ՝ Գըզըլդաշէն մինչև Թագլիթ է երսունըչորս մղոն. Փարշէն 478 մղոն. Տրապիզոնէն 725. իսկ Աստամպօլէն 1625 մղոն ։

## Ե· ՄԱՍՆ ՍԵՒ ԾՈՎՈՒ

186. ԹԱԳԼԻԹ պօղազի, երեսունըչորս մղոն հե-ռու է գըրգըլդաշէն, որ հին ատենը կըսուէր Կոսփորոս Կիմմերիոն, և Փանդիկապէոն: Այս նեղուցին երկայնու-թիւնն է տասնըութ մղոն. բերանն է Թագլըթ պուռնի և Թամանու ցամաքը: Ենի գալէին առ-ջին նեղնալով իրեք մղոն կըլլայ. ուր աւազէ բարակ լեզու մի կայ նեղուցին մէջ խոզի քթի նման՝ որ կըսուի Չուշկա. որ թաթարերէն խոզ ըսել է: Այս նե-ղուցն երբեմն կը սառի: Թագլըթի աշխարհագրա-կան լայնութիւնն է 45°. 10':
Երկայնութիւնն է 34°. 55':

187. ԹԱՄԱՆ, է իբր ցամաքակղզի արևելեան կողմն նեղուցին. մէկ կողմն է կուպանին ջուրը. մէ-կալ կողմն է կերչին նեղուցն. որ ներս մտած ըլլա-լով բարակ պարանոց մի կայ՝ Փանէօֆոզ կըսուի, այս-ինքն լեցված. երբոր գետը կառատանայ՝ այս ցամաք շատ կը նեղնայ. որով Թէմրուք Թամանէն կը զատ-ուի. որ է հիւսիսային մասը Թամանին Աղախու ծո-վուն վրայ. ուր կայ հին բերդ. նոյնպէս Թաման ալ կան հին բերդեր: Հոս տասներկու բերդ կայ եղեր Ճինկիզին ժամանակը:

188. ԱԶԱԳ, կամ Մէօտիս փոքրծով՝ սկսեալ Թա-մանու բերնէն կը վերջանայ Տանայիս գետը: Այա-նէն մինչև Փէթրիքըլիփս հարիւր յիսուն մղոն է երկայնութիւնը. անկէ ալ մինչև Թայղան հարիւր յիսուն. իսկ լայնութիւնն է իբր երկուհարիւր մղոն: Այս ծովուն շատ տեղը ծանծաղ ըլլալով արևելեան կողմէն նաւ չանցնիր. մէջը լայն անցք կայ, ուսկից կանցնին նաւերը (213):

Այս ծովուն ջուրը երբեմն ներս, և երբեմն դուրս կը վազէ. երբոր հովը ներս կը փչէ, ծովը ներս վազե-լով կը լեցուի. երբոր դուրս կը փչէ, ծովն իջնելով նաւը կը նստի: Մեծ ալեկոծութեան ատենը՝ ցած տեղե-

րուն տակը կերեւնայ. Ջուրը կիսով չափ աղի է, եւ կիսով չափ անուշ. իսկ Տօն գետին մօտ բոլորովին անուշ է, ուր կը վերջանայ այս ծովը. խորունկ տեղն է ինը գիրկ. անոր համար կը կոչուի նաեւ Մէօթիս լիճ:

Հին ատենը այս ծովուն տիրեց Մէյ անուանեալ Պէկը, որ կը նշանակէ գաւազ. ետքը Միհրդատ տիրեց, ապա Հռոմայեցիք եւ Ճենովիզները, յետոյ Թաթարները եւ հիմա Մոսկովները: Ուստի Մէյ անունէն Մէօթիս ծով ըսուեցաւ. որ ոմանք Մէէոտիդէս յունական բառէն կը հանեն, որ կը նշանակէ դայեակ, մէջը շատ ձուկ ըլլալուն համար: Այս նշանակութեամբ Սկիւթացի Թաթարները կըսեն Պալըքա-լըգ, այսինքն մայր կամ դայեակ ձկանց. վասն զի զարմանալի շատ՝ պարարտ՝ եւ խոշոր ձկներ կ'ելլեն այս ծովէն, որ մեծամեծ ծովերուն մէջ չի կայ. որուն ջուրը տղմոտ պարարտ եւ քիչ աղի ըլլալուն համար՝ սեւ ծովու եւ ձերմակ ծովու ձկներն ալ հոն կերթան կը խոշորնան: Ուր յաճախ է երկայն ձուկն Մուրինա. երբեմն կ'ելլէ մինչեւ քսանըվեց ոտնաչափ երկայն, եւ ինը հարիւր լիպրէ ծանր կուգայ. ուսկից կ'ելլէ շատ հաւկիթ, որ խաւեար կը շինեն:

189. ԹԻԵՄՐՈՒԿ բերդ՝ Թամանին մասը կը սեպուի՝ Ազախու ծովուն կողմը. քառասուն մղոն անդին է Աօզա ձկնարանը. ուր կան ձկնորսի տներ, նաեւ փոքր գետեր: Ոմանք այս տեղերս կը կոչեն Ագուէլ. ուր կը վազէ կուպան գետին Աչու Թեւը:

190. ԱԽԴԱՐ, եւ ՊԱԽԴԱՐ, նաւահանգստի նման ծոցեր են. ուր կը վազեն գետեր. եւ խաղախի գեղեր կան այս կողմն: Ասկէ անդին տեղ տեղ մանր լճեր կան, եւ ջրոտ տեղեր, որ անշուք եւ անբնակ են:

191. ՊԻՍՍԱԿԱ, կամ Պէյսըլման, է ընդարձակ գոգ կամ նաւահանգիստ, բայց մէջը քարուտ է. ուր կը վազէ գետ: Հիները կը դնեն հոս Թիրամպ քաղաք, եւ Աղադիս գետ:

192. ՄԻՒՀԱՆՏԻԶ ՊՈՒՌՈՒՆԻ, իբր հարիւր յիսուն մղոն հեռու է Աօզայէն. քովէն կանցնի Պէլլիպա կամ Սեղէնի գետ. ուր կայ մեծ ցամաք աւազուտ, որ կըսուի Սանճար, Տօնաւիս գետէն պատճառած, որ

Ազախու բերանը կէսէն աւելի կը փակէ. հոս կըռ-կըսի շատ նեղնալ ծովը։

193. ԳԷՐԳԷՐ ՋԷՄԻՆ, Տօնաւիս գետին բերանն ըլլալով գետին ջուրը հոս կը խառնըւի ծովուն հետ։ Անկէ ետև կուգայ Գարա գում և Չալպաշ ծոց. ուս-կից կը վազէ գետ։

194. ԳՈՒՐՂ ԳՈՒՌՈՒՆԻ, կամ Տօլչէա քիթ՝ Թրայզա-նու բերդին դիմացն ըլլալով տասնըութ մղոն լայն է ջուրը։ Նաև քառասունըհինգ մղոն անդին է Իսաախըղ. ուր կայ բերդ, և Իսյա գետ. մօտ են նաև Չուրուր և Պուլպօյ գետերը։ Հին աշխարհագիրներն այս կողմն կը դնեն կարգաւ Ազարա, Նոտդարու, Նամարոտիս, և Գրամձս քաղաքներն. նաև Իտօմպիթ, և Մառու-պիոս գետերը։

195. ԱԶԱԳ, կամ Ազօֆ բերդ՝ հին քաղաք երևե-լի և ամուր Տօնաւիս գետին բերանը Թրայզանու դի-մաց. որուն տիրեցին Ճենովիզները վեց հարիւր տա-րի առաջ. ետքը անցաւ Թաթարներուն, և օսմանե-ցոց. բայց 1642 ին խազախներն երեցին. օսմանցին նորէն առաւ լաւ շինեց. հարիւր տարի ետև մոս-կովն առաւ քանդեց, նորէն շինեցին. շատ վաճառա-կանութեան տեղ էր։ Որուն անուամբն Ազագ կոչ-վեցաւ միօտիս ծովը ետքի ժամանակս։

Հոս գետին բերանը երկու ցամաք կղզի ըլլալով երեք կը բաժնըւի. առջի թևը Իտասով հին բերդը կերթայ, և վեր երթալով Քրկէօս բերդին քով կը միանան գետին բերանները, ինչպէս կերևնայ աշ-խարհացուցին վրա։

196. ՔԷՐՄԱՆ ԳԱԼԷ, կամ Չէրքէզ քիրման՝ աւե-լի վերն է. տես վարը (198)։ Հիւսիսային կողմն ալ կայ դիմացը Քրիման կամ Քրկէօս, որ բերդ ըսել է, թաթարներուն ժամանակէն շինված են, և խա-զախներ կը բնակին հանդերձ ուրիշ ազգերով։

197. ՏՕՆ, կամ Տանայիս, ըստ տճ. Թէն սույէ, երևե-լի մեծ գետ՝ կը բաժնէ Ասիա Եւրոպայէն. զի ա-կէց մինչև Նեղոս գետն եգիպտոսի՝ է Ասիա։ Այս գետ կելլէ Իվան օզէրո լճէն ռուսաստանու, և հիւ-սիսէն հարաւ, նաև արևելք երթալով վեց գետի հետ

կը միանայ, և շատ պտոյտ ընելով իրեք բերան կը բաժնըվի և կը վազէ Ազախու ծովը. Ջուրն է պըղտոր և անշահ. բայց շատ ձուկ կը բերէ, մանաւանդ մեծամեծ մուռինաներ, որ կըբռնեն խազախները: Տօնաւիս գետին աշխարհագրական լայնութիւն է 47°. 5'.
Երկայնութիւնն է . . . . . . . . . . 39°. 40':

198. ՉԵՐՔԷԶ ՔԻՐՄԱՆ. այսինքն չէրքէզի բերդ, է գլխաւոր քաղաք խազախաց, Տօն գետին վրա շինած է վերը. որ երբ կը բարձրանայ ամէն դին ջուր կը կոխէ. ուր շատ վաճառականութիւն կըլլայ, ութը հազար տնէն աւելի կայ: Ասկէց ելան թաթարք ու շինեցին Նոր Ղրիման, և շատ տեղ տարածվեցան:

Այս քաղաք է աթոռ խազախներուն Ադամանին. ուր կը պահեն իրենց զէնքը, և ամէն պատերազմական բաները. ուր կայ վեց եկեղեցի: Բայց Տօնաւիս գետին քովի բնակիչները կըսվին Տօնսքեան խազախ. որ են Մոսկովի ազգէն, ինչպէս իրենց բարքը լեզուն և կրօնը կերևցնէ. վասն զի առաջ ինքնագլուխ ըլլալով զատվեր են Մոսկովստանէն, և եկեր են այս կողմերս՝ խազախ թաթարներուն երկիրներն առեր տիրեր են ասպատակութեամբ. և անոնց հետ խառնըվելով Խազախ ըսվեցան իբր զատ ազգ. և որովհետև խազախ թաթարներէն յափշտակելով աղջիկ կառնէին՝ իրենց դէմքն ալ թաթարի նման է, և շատ դիմացկուն և պինտագլուխ մարդիկ են. երբոր մուքերնին բան մի դնեն՝ կտոր կտոր ըլլան իրենց խօսքը պիտի ընեն. գողութիւնն ու աւազակութիւնն իրենց մէջ քաջութիւն կը սեպվի. և շատ վարպետ են, ինչպէս տեսանք: Գրեթէ ամէնքը մօրուքաւոր են: Իրենց երկիրն է ընդարձակ. մէկ ծայրը կերթայ Տնեպեր. առաջ խիստ շատ էր. ունին իբր հարիւր յիսուն փոքր քաղաք, որ Սլօղօփ կըսեն. և իրենց իշխանը կըսվի Ատաման, իսկ սպարապետը կամ կոմսը Հեթման կըսվի: Անոնք հիմա Մոսկովի տակն են, և զանազան ցեղ կը բաժնըվին. զորօրինակ Սիպերեան խազախ, Տնեպրեան խազախ, Ուկրէյնեան խազախ, և այլն:

199. ՆԱԽԻՋԵՒԱՆ, ինը մղոն վարն է Ղրիմա-

նէն, որ Քէֆէի կամ Խրիմու Հայերը շինեցին լե-ռան վրայ 1780ին. ուր կան 2300 տուն Հայոց, և վեց եկեղեցի. գլխաւորն է հրապարակին մէջ անուամբ սուրբ Լուսաւորչին. ունի վանք անուամբ սուրբ Խա-չի, նաև դպրատուններ: Առաջ այս տեղս կըսվէր Քըրէճատոփ տաղըն. որ թէրդ ըսել է: Ունի զանազան գեղեր. և շատ երկիր տվաւ Մոսկովը սահման այս քաղաքին: Որովհետև Խրիմ աւըրվելէն ետև Մոս-կովտանի մէջ նախ հոս եղաւ իրենց բնակութիւնը՝ Նախիջևան անուանեցին հին Նախիջևանին յիշատակ ըլլալու համար: Սակայն օդը ծանր ըլլալով շատ մարդ մեռան. հիմա աղէկ ծաղկած է: Մօտն է Սլօպօտա, այսինքն Նոր գեղ. և ինը մղոն վերն է Աքսայ աւանը, ուր կը բնակին զանազան ազգեր:

200. ԼՅՈՒԴՈՒԿ, ամուր բերդ է Տօն գետին առջի թևին վրայ հիւսիսի կողմը. բայց մոսկովները 1696ին քակեցին. նոյնպէս Թականրօք բերդն ալ քանդե-ցին, որ Պետրոս Թագաւորն էր շիներ. բայց յետոյ նորէն շինեցին, և հիմա լաւ զարդարած է:

201. Թայղան, կամ Թաղանրօգ քաղաք, ազախու ծո-վուն երևելի նաւահանգիստ և վաճառատեղին է. երկու հազար տուն կայ յայն մոսկով խառն. ուր կայ գործարան մոսկովի նաւերուն, և է նաւատեղի Նա-խիջևանու, և այլ ցամաքի քաղաքներուն: Ասկից կելլէ երկաթ, ձուկ, խաւեար, և այլն:

202. ՊԷԿԼԻՉԿԱ, կամ Կրիւօյա քիթ՝ Թայղանէն վար է. առաջին ծանծաղ և աւազէ քիթ ըլլալով՝ նը-շանի լաթ քաշեր են հոն. և գետ կը վազէ մօտը, որ կըսվի Փէթրուշքա:

203. ՄԱՐԻՕՊՕԼ, կամ Մարիամօպօլիս, է փոքր քաղաք յունաց և մոսկովաց. ուր շատ վաճառակա-նութիւն կըլլայ. ունի քիթ, որ ոմանք Սէրէա գայա կանուանեն: Այս տեղս վաթսուն մղոն հեռու է Թայղանէն և գեղեցիկ քաղաք է:

204. ՊԱԼԻՍՏՐԱ, հարիւր յիսուն մղոն հեռու է Թայղանէն, որ է իբր ծոց. բերանը Ֆէնէր դրաւ մոսկովը նաւերու համար: Այս կողմն արևմտեան դին ցամաք լեզու կայ ծովուն մէջ, որ կըսվի Պէօ-

տար գայա, կամ Փէթրըպէլլէփօ։ Մէր կան աւազուտ տե-ղեր իբր կղզի կամ քիթ, որ կըսվին Պէրրինս գայա և Ս խուարիօնով. ուսկից կը վազէ Բունըէչ գետ, այսինքն Չէնէլ։

205. ՊԷՕՐԳԼԷՐ, եօթանասուն մղոն հեռու է Փէթրըպէլլիփօլէն. ուր է քիթ Պէօսխա պօյնու, այսինքն գայլի վիզ. որ է իբր ցամաքակղզի. և երկու կողմէն գետ կը վազէ։

206. ԹԱՇԼԸ ԳՕՒՌՈՒՆ, կամ Խայալը, աւելի վարն է և շատ քարոտ ծանծաղ է. որ աւելի ծովը մտած ըլլալով խորհի կղզիին մօտեցեր է Արաբատին գե-մացը. և ունի գօգ որ ներս կերթայ, նաև լիճ. ուր կը վազեն Բէրթէչէ և Պէօրթէչէ գետերը։ Մէկ մղոն վերն է Խայալը գեղ Նողայի թաթարներուն։

207. ԽԱԶԻ ԳԻՐՄԱՆ, առջի քաղաքն է Օձէն ան-դին տասնըութ մղոն հեռուն։ Ասկէ կերթայ Ճէ-նիցի բերդ. ուր խորհի կողմէն Արաբատի ցամաք լե-զուն այնչափ կերկըննայ, մինչև այս բերդին մօտե-նալով նեղ բերան ձևացուցած է, որ թաթարը այս լեզուին Ճինիչկէ կըսէ, այսինքն բարակ. որուն լայ-նութիւնն է կէս մղոն. այնչափ կը մօտենայ փոխանցի ցամաքին, որ լաստով կանցնին գինաց։

208. ՍԱՍԸԽ ՏԷՆԻԶԻ, ըստ հն. Պիւտրա կամ Բութ-րիս, այսինքն Հոտած ծով. նաև կըսվի Սիփլօժօնէ. Հարիւր մղոն հեռու է Պէօրըքլէրէն. որ է երկայն պտուտաւոր ծովակ լեցուն փոքր ցամաքներով. բե-րանն է նեղ Ճէնիցի բերդին և Ճինիչկէ լեզուին մի-ջոցն. ուսկից կը հաղորդի Ազախու ծովուն հետ, և ջուրն համարձակ շրջան չի կրնար ընել, նաև մէջը պտոյտ ըլլալով ջուրն անշարժ կը մնայ. անոր համար թաթարը Սասըխ, այսինքն հոտած անուանեց. նաև մէջն է ծանծաղ. մէկ ծայրը կը մօտենայ Բէֆէր հիւսիսային կողմն Արաբատին, և մէկալ ծայրը Օռին բերնին, կամ Տօլիւ տէնիզին (228)։ Մէջը կը վա-զէ Սալղըր, Պօլկանակ և Գարասու գետերը։

209. ՕՌ ԳԱՊՈՒ, կամ Պէրէկոբ՝ կը թարգմանի բերդ և դուռն. ըստ յն. Տափրոս կամ Բէրէքօբ. այ-սինքն խէնտէկ, կամ խրամ բացված. ըստ տճ. Օռ գա

ղայի. բերդն է քարաշէն և զօրաւոր՝ պարանոցին բե-
րանը շինուած. որ Մ՝ոսկովը չորս անգամ առաւ. իրեք
անգամ ետ տըւաւ, վերջի անգամ մնաց ձեռքը. պա-
րանոցին մուտն է նեղ, որ կըսկըսի մեծաւալ ծովուն
վերի ականջէն, և կը հասնի մինչև միւս կողմը բեր-
դին. և այս պարանոցով խըիմ կըլլայ ցամաքակղզի.
պարանոցին երկայնութիւնն մեծաւալ ծովուն վերի
ականջէն դնելով կըլլայ իբր տասներկու մղոն. բայց
բերդին քով իրեք մղոն կըլլայ հողին լայնութիւնը:
Իսկ բերդին առաջը խոր և լայն խրամ բացած է,
որ կը հասնի մէկ կողմէն Սաւըխ ծովը. մէկալ կող-
մէն Մ՝եծաւալ ծովը, և պարսպով ամրցած է: Մ՝իջոց
տեղն է կամուրջ քարաշէն խրամին վրայ, մէջ տեղը
փայտաշէն, որ կը վերցընեն. քովը հին բերդ, նաև
աշտարակներ կան պատուարին ամրութեանը համար.
մէջը կայ քառակուսի աշտարակ մեծ, որուն մէջէն
գետնի ճամբայ կայ, որ քաղաքը կելլէ:

210. Ա՛րդ՝ ազախու ծովուն արևմտեան կողմն է
Սաւըխ ծովը և Օռ գափուն. վասն զի Սաւըխին մէկ
ծայրն է օռին քով, մէկալ ծայրը Ա՛րապատ, որ ծուռ
ձեռքն դառնալով՝ հարաւային կողմն Ո՛էֆէին կը
մտենայ իբր երսունըմէկ մղոն հեռու ցամաքի ճամ-
բայով: Տես աշխարհացուցին վրայ:

211. Ա՛ՐԱԲԱԹ բերդ՝ Ջ՛ենիչկէի երկայն լեզուին
միւս ծայրը շինուած է. ասկից կըսկըսի նոյն ցամաք
լեզուն և կը հասնի դիմացի ցամաքը, որ բոլոր ա-
ւազ է. տեղ տեղ լիճ կայ, որ ամառը աղ կըլլայ:

212. ԿԱԶԱՆ ՏԻԳԻ, երևելի քիթ է Ա՛րապատէն
առջին, և ունի բերան կամ դօդ՝ իբր նաւահանգիստ,
ուր նաւ կը կենայ. առաջ քաղաք կար հոս:

213. Ա՛ՑԱՆԷ, կամ Ա՛Կըրոպ դուռնէ, յիսուն մղոն
առջին է Ա՛րապատէն. անկէ կուգայ արևմտեան կող-
մէն նորէն Սօքօրոս կամ Թ՛աղըլթի բերանն. որով
կը լմննայ ազախու ծովուն շրջանը. որ Տօնաւիս գե-
տէն սկսեալ մինչև հոս իբր 532 մղոն է. իսկ նաւու
ընթացքով առանց եզերքը մտենալու պակաս կըլ-
լայ: Ա՛րքիմնոս 9000 ստադի կը դնէ բոլոր շրջապա-
տը Ա՛ղախու՝ թերևս անկէն ծոցերը համրելով: Ա՛Հ-

խարհագիրները կը դնեն երկայն 100 փարսախ. լայն 25. և շրջապատն 700 մղոն. որ չէ ճիշդ։

214. ՅԷՆԻ ԳԱԼԷ, կամ Ենիքօլ, է զօրաւոր բերդ. Ազախու բերնին արևմտեան կողմն օսմանցիէն շի-նած 'ի հիճ. 1114ին։ Նաւաքն է նաւահանգիստ. բայց շատ ծանծաղ ըլլալուն համար բեռնաւոր նաւ ներս չի կրնայ մտնել, մինչև որ չի թեթևնայ։ Բօղազոյ երեք մղոն նեղուցին ներսն է. ուր կայ հին բերդ և եկեղեցի. առաջ շէն տեղեր էին։

215. ԿԵՐՃ, կամ Կէրչ. ըստ յն. Պանտիքէօն, կամ Փան-տիգապէօն քաղաք, ինը մղոն հեռու է վերինէն բարձր պարսպով լեռան կողը շինած է։ Բնակիչներն են ամէն ազգէ և իրեք հարիւր տուն կ'ըլլեն։ Շատ զօ-րաւոր և հաստատ է բերդն արևելեան կողմն եօթն աշտարակով. ուսկից կանցնին Ազախ գացող եկող նաւերը (186)։ Այս բառ հայու կերճ անունէն ե-լած է. որ կը նշանակէ նեղ անցք. զի հոն ցամաք լեզուն նեղցուցեր է անցքը։ Իսկ տասը մղոն ասդին է Գամիշ պուռնի. որ երևելի տեղ չէ, բայց կան անշուք տներ։ Կարելի թէ պոնտոսի հին թագաւո-րանիստ քաղաքն այս կողմն էր, որ յիշեցինք (29)։

216. ԹԱԳԼԻԹ ՊՈՒՌՆԻ, բերանն է նեղուցին, և է երկայնութիւն նեղուցին. որ ոմանք տասնըութ-ժամու հեռու կը դնեն Ասիանէն. բայց ճիշդ չա-փած չէ. այս քիթ Թամանին գիմացն ըլլալով բուն Թագլըթին բերանն է Խրիմու կողմէն. ունի նաւա-հանգիստ, բայց ծովուն մէջ քար կայ։ Ինը մղոն աս-դին է Չաճըլար լիմանի, որ է սև ծովուն վրայ։ Աւե-լի ասդին է Չէքէլէն գայա. որ է ապառաժ կղզի իրեք մղոն ներս ծովուն մէջ։ Անդին ուրիշ քար կայ Իման գալէ. ուր կայ Աւրըդէպէ, այսինքն աղէհան Խրիմու ցամաքին մէջ, որ Օգոստոսին կը քարանայ։

217. ՉԵԱՎԻԹԱ ՊՈՒՌՆԻ, կամ Թագլըբու, քառա-սունըերկու մղոն դէպ 'ի արևմուտք է. տասը գօգին մէջն է ԿԷՖԷ։ Արրիանոս այս տեղերս աւրած գտաւ. ուր առաջ երևելի քաղաք կար, որ Յէնա-ները շիներ էին կըսէ։ Հոս կը դնէ Գազէքա քաղաքը։

Արդ՝ Ազախու ծովուն, և Տօնայիս գետին բոլոր-

տիքն եղած աշխարհներն սկսեալ ապազայէն մինչև դունա՝ կըսուին ընդհանուր անուամբ Սարմատիա, որ է Թաթարստան. զի յունական բառս Սարմատ՝ մողէսաակն ըսել է, որ է փոքրակն. զի Թաթարներուն աչքը մանր է, երեսը բոլոր, և քիթը տափակ. Նաև այնչափ ընդարձակ ազգ է, որ մեծ Թաթարին ծայրը մինչև Չինումաչին կը հասնի:

Փոքր Նողայ կըսուին անոնք, որ կը բնակին Խրիմու կողմերը. ոմանք վրանաբնակ ըլլալով տեղէ տեղ կը շրջին դաշտերուն կամ անապատին մէջ. և ոմանք գեղերը և քաղաքները կը բնակին. որ չորս ցեղ կը բաժնըվին. Պուճագ Թաթար. Օզու Թաթար. Գըրըմ Թաթար, կամ Գազան Թաթար. Նօղայի Թաթար. ինչպէս իւրաքանչիւրն իր տեղը կը պատմենք. որոնք ամէնը շատ աշխատաւոր և առողջ մարդիկ են. բոլորը խաշնարած և երկրագործ են:

218. ԽՐԻՄ, ըստ տճ. Գըրըմ, և ըստ յն. Տաւրիքօս. Հին ժամանակը կըսուէր Տաւրիկեան ցամաքակղզի. և ծովը կըսուէր Սկիւթացոց ծով. ուր արևմտեան և հարաւային կողմէն Սև ծով պատած է Խրիմու կղզին, արևելեան կողմէն Ազախու ծովն է պատած. իսկ հիւսիսային կողմէն մեռեալ և հոտած ծովերն են պատած. ուստի Խրիմ միայն Օռին պարանոցով փակած է մոսկովատանու ցամաքին. ինչպէս կերևնայ աշխարհացուցին վրայ: Իւր կան քանի մի միջակ գետեր. զորօրինակ Գարասու, Խայչի սու, Ալմա, և այլն. նմանապէս կան և լեռներ. ինչպէս են՝ Այա թաղը, Այու թաղը, Չաթըր թաղը, Գարա թաղ, Աղըրթէղ թաղ. այս վերջի լեռան ծայրը խոր և մեծ վիհ կայ: Խրիմու սարերն և նաւահանգիստներն իրենց տեղը կը պատմենք համառօտ. զի հիմա շատ տեղը քանդած է, քիչ քիչ կը շէննայ.

Խրիմու կը տիրէին առաջ սկիւթացի Թաթարները. իսկ Տօնաւիս գետէն մինչև Կովկասու լեռը վօսբորոսեան յունաց ձեռքն էր. որոնք շատ նեղութիւն քաշելով Թաթարներէն մտան Միհրդատին տակը. յետոյ յոյն թագաւորները տիրեցին. վերջը Ջէնիվիզներուն անցաւ: Ապա յամի 1471. առին Օսման-

ցիք և դրին Թաթար խան կառավարիչ։ Յամի 1698. Մուսկովները կոխեցին Օզին բերդն աւերին նորէն առին. անկէ ետև շատ անգամ ելան Խրիմու վրան։ Վերջապէս Շահին կիրա խանին հանդէպով տրվաւ Խրիմու կղզին Մոսկովի Թագուհիին 1779ին. ապր. 21. մինչ դեռ Միրզաները և գլխաւորներն երդում ըրին, որ հնազանդ և հաւատարիմ մնան Մոսկովի Թագաւորին. և ութ տարիէն ետև Օսմանեան տէրութիւնն ալ ստիպեցաւ ընդունելու. և այսպէս մինչև ցայսօր մնաց Մոսկովներուն ձեռքը։

Թաթար խանը կոչվէր Ուլուղ խան. այսինքն գերագոյն տէր, և կը նստէր Բաղչէ սէրայ գլխաւոր քաղաքը. բայց ՚ի զանազան իշխաններէն իրեք իշխանապետ ունէր. որ խանին առու ցեղէն ըլլալով կոչվէին Սուլթան. առջի գլխաւորը կը նստէր Ակմէջիտ, և կոչվէր Գալղա սուլթան, որ երկրորդն էր խանին. երկրորդը կը նստէր Գարասու, որ կոչվէր Նուրադին սուլթան. երրորդը կը նստէր Օռ, և կոչվէր Օրբէյլի սուլթան. և այս կարգերն անցնելէն ետև կըլլային խան։

Միրզաներն էին իգական ցեղէն խանին. որոնք Թէպէտ իշխանաւոր էին, բայց խան չէին կրնար ըլլալ։ Իսկ խանզադէները տղայութեան ժամանակը Չէրքէզ կը ղրկէին որ կրթուին. և երբ չափահաս կըլլային կուգային խանին (182)։

Օսմանեան Թագաւորը շատ պատիւ կուտար խաներուն՝ Թագաւոր անուանելով զանոնք. երբոր պատերազմ կունենար ուրիշին հետ՝ կը ղրկէր խանին քառասուն հազար ոսկի և զարդարած Թուր. իսկ խանը կը պարտաւորէր օգնութիւն երթալու Թագաւորին, մինչև երբեմն հարիւր հազար զօրքով։

Խրիմու կղզին չորս երևելի քաղաք կար ծովէն ներս. առաջինն էր Բաղչէսէրայ. ըստ հն. Նէապօլիս. ուր իբր մայրաքաղաք կը նստէր խանը. և շատ երևելի շէնքեր ջամիներ և պալատներ կային. որ ըստ ոմանց Միհրդատ շինեց էր։ Երկրորդն էր Ակմէջիտ. այսինքն Սպիտակ ջամի. ուր կը բնակէր անդրանիկ որդին խանին։ Երրորդը Գարասու, կամ

Պուրապալար․ որ էր մեծ քաղաք բազմամարդ․ քովէն գետը կանցնի, և հիմա է քաղաք և բնակութիւն ամէն ազգաց։ Ուր շատ տուն կայ մեր ազգէն և ունին եկեղեցիներ։

Զօրբօրգնէր Լուկի Գէըլ, առաջ երևելի էր․ հիմա անշուք է։ Ինչ ծովեզերեայ մայրաքաղաքն էր Քէֆէ, Սուտաղ; և այլն․ որ կարդաս իրենց տեղը կը պատմենք, թէպէտ առջի շինութիւնը չի կայ։

Արդ՝ Խրիմու կղզիին մէջ ամէն քաղաք մեր ազգէն կան և վաճառականութիւն կընեն Պօնտոսի և Ստամպօլսու հետ․ բոլորն ալ առուտուրի շատ ճարպիկ են, և ամէն տեղ բնակութիւն ունին։ Թաթարին ժամանակը շատ երևելի վաճառականներ, և փարթամ մարդիկ կային․ հիմա ցրուած են Լեհաստանու կողմը և Մոսկովի մէջ, ուր քանի մի քաղաքներ շինեցին․ ինչպէս է Նախիջևան, Գրիգորիուպօլիս, և այլն։ Տես իրենց տեղը։

## Ջ. ՄԱՍՆ ՍԵՒ ԾՈՎՈՒ

219. Կէֆէ, կամ Կաֆֆա, եօթանասուն մղոն հեռու է Թագլըթէն, տասնըութ Ճնավէդայէն. և է մայրաքաղաք խրիմու կղզիին, երկայնաձև շինած ծովուն քով: Առաջ շատ երևելի բերդաքաղաք էր բազմամարդ. երկու ծայրը նաւահանգստին երկու բերդ ունէր կրկնապարիսպ, որ կըսվէր Թէոդոսէա Թէոդորո կայսեր անուամբ. որոնք հինգերորդ դարուն տիրեցին: Իսկ Թաթարները Կաֆֆա ըսին, քրիստոնէից քեաֆիր անուն տալով. որ արապերէն անհաւատ ըսել է: Այս հին քաղաք շինած էր արևելեան կողմն խրիմու, նաւահանգիստն է մեծ, բայց շատ խոր չէ. և ոչ հարաւային հովէն ապահով:

Հին ատենը հոն էր Արտեմեայ կռատունը. շատ զոհեր կընէին. ուր օրէնք կար թէ՝ ով որ օտարական հոն երթայ նաւով, այս կուռքին զոհ կընէին. Նշան է թէ բազմամարդ ըլլալով ամէն բան կար, դուրսէն բանի կարօտութիւն չունէին: Թաթարներուն ժամանակը միայն երսուն հազար գերի կար, որ կը ծառայէին գեղերը. նաև հազար երկու հարիւր հայու տուն կար. ունէին ժամ և ժամատուն. ինչպէս տեսանք հոն գրված յիշատակարաններէն. քսանըչորս եկեղեցի ունէին քարաշէն. գլխաւորներն էին Սուրբ սարգիս մայր եկեղեցի, Սուրբ յարութիւն, Աստուածածին, Լուսաւորիչ, Հրեշտակապետ, և այլն: Մեր նահատակեցաւ իբր երկուհարիւր յիսուն տարի առաջ Պարոն լոյս իշխանն մեր. ինչպէս կը պատմէ Սըթանէս վարդապետ. * Ես ձեռօքս գըգուեցի, ո՞ւր գերեզման հանգուցի ||:

Յոյնք ունէին տասնըութ եկեղեցի. նոյնպէս Ճինիվիզներն երկու հարիւր տարի տիրելով շատ երեւելի շէնքեր, և ութ քարաշէն եկեղեցիներ շիներ էին ժամանակով. հիմա բոլորը քանդած են. քաղաքին մէջն է խորունկ գուբը. ուր կը հաւաքի անձ

րուի ջուրն, որ կը խմեն բնակիչները։ Առաջ ամէն բան առատ էր, մինչև կըսուէր շտեմարան յունաց. հիմա կելլէ ցորեն, եղ, երկաթ, ձուկ, կաշի, խաւեար, և այլն. որ կուգայ Ազախէն։

Ըստ Հերոդոտոսի նախ յոյնք կը բնակէին այս կողմն, որ վաճառականութիւն կընէին տրապիզոնցոց հետ, և ինքնագլուխ էին. յետոյ Սկիւթացի Թաթարներէն շատ նեղութիւն քաշելով Միհրդատին ընկան, որ նաւախումբ մի ղրկեց Քէֆէի կողմն, ու տիրեց մինչև Ղազան տեղի. ուսկից ամէն տարի կը հանէր եօթըհարիւր քսան հազար քոռ ցորեն և երկու հարիւր հազար ունկի արծաթ, և անով շինեց Եւպատորիա քաղաքը. նաև մինչև կովկասու լեռները միացուց իր տէրութեան հետ։

Միհրդատէն ետև անցաւ Հռոմայեցոց, և յոյն կայսերաց. որոնք անհոգ ըլլալով՝ Թաթարներն եկան կոխեցին քանդեցին։ Յետոյ Ճենովլիզներն առին Քէֆէ և այնչափ վաճառականութեամբ ծաղկեցուցին, որ նման էր Ստամպօլու։ Անոնցմէ ալ առին վէնէտիկցիք 1297ին. յետոյ նորէն տուին։

Իսկ 1474ին առաւ Սուլ. Մէհէմմէտ Թաթար զօրքով. որ հպատակ էին Պաթու խանին Ճէնկիզխանին պզտի որդուն։ Ուստի այս տէրութիւն միացաւ Ղազան Թաթարին հետ մինչև Տէվլէթկիրա խանն. իսկ 1779ին անցաւ Մոսկովներուն, որ քանդեցին Քէֆէի բերդը և աւրեցին այն երևելի մայրաքաղաքին վայելչութիւնը, ուր այնչափ փառաւոր շէնքեր կային. հիմա քիչ քիչ կը շինեն միակարգ ծովեզերայ վրան. բայց բնակիչ քիչ կայ, մանաւանդ մեր ազգէն. որ բոլորը վաճառական են պոնտոսի, և ուրիշ տեղաց։

Քէֆէի աշխարհագրական լայնութիւնն է 44°. 45'։
Երկայնութիւնն է . . . . . . . . 33°. 41'։

220. ԿԻԻԿԱԹԼԱՄԱՍԻ, կամ Եանչըպուրնու, է արևմտեան քիթ Քէֆէի նաւահանգստին. որ թէպէտ արևմտեան և հիւսիսային հովէն ապահով է. բայց հարաւային և արևելեան հովէն ապահով չէ շատ։ Խթլինքցի քարը շատ հեռու չէ. ուր երկու գետ կը

վազէ. անդին է Ս'եկենոց քիթը։

221. ՍՈՒՏԱՂ, երասունըվեց մղոն անդին է Օրֆէ-ֆէյէն. ունի նաւահանգիստ, և բարեբեր տեղ է. առաջ շատ շէն էր, հիմա այնչափ չէ։ Ոնի քաղաքն աւրըլվելէն ետև հայերը նախ հոս բնակեցան։ Կայ այսպիսի յիշատակարան ճաշոցի մի մէջ. * Կատարեցաւ ’ի Թուականիս հայոց ութ հարիւր և հինգերորդի ամսեանն օգոստոսի, որ օր էր ամսոյն, ’ի հայրապետութեան տեառն Ստեփաննոսի. յեպիսկոպոսութեան արհիականին տէր Ստեփաննոսի և ’ի Թագաւորութեան Կոստանդիանոսի ’ի քաղաքս Սուրղաթ ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոսի նախավկայի քծի։

Այս միջոցի ծովեզերքը լեռներ են. տեղ տեղ քիթ ըլլալով նաւահանգիստներ կան. ինչպէս են՝ Ալուշտա, Լամպադ, Այու դաղի, Նշալիթա, Կուրզուֆ քիթ և նաւահանգիստ, Այա սար, Սէվաստ-վէն այազի, և Պալաթի պուռնի։ Այս տեղերս ամառ-ար միայն նաւ կը կենայ.

222. ՊԱԼԸՂԼԱՒԱ, ըստ հն. [illegible], երկու հա-րիւր մղոն հեռու է Օրֆէյէն, և ունի լաւ նաւա-հանգիստ ընդարձակ և ապահով բաւական մեծամեծ նաւերու. նաև բերդ. Այս սարին տակը։ Այս նա-ւահանգստին բերանը կղզի մի կայ Ս'ակեօղ փայա. նաւն զգուշութեամբ ապառաժներէն ներս կը մտնէ. յետոյ արևելք դառնալով կերթայ բուն նաւահան-գիստը։ Բնակիչներն իբր իրեքհարիւր տուն կըլ-լեն. Արրիանոս Տաւրոսայ և Ախմեոլի նաւահան-գիստներ կը յիշէ հոս. Տես տախ. Ի։ Ս'ակաոսկեր պռունի, է քիթ, կամ է մէկ ծայրն Այային՝ վեց մղոն անդին. ուր կայ վանք սուրբ Գէորգայ.

223. ՓԻԼԵՆԿ ՊՕՒՌՆԻ, երևելի սար է խորիմն՝ քսանըչորս մղոն անդին Պալըգլաւայէն. առաջը ծան-ծաղ ըլլալուն շատ գժուարաւ կմօտենն նաւերը. իսկ նաւահանգիստն է սարին ներսն, որ կըսուի Զանտա ըմնի, և բերանը կըսուի Լիմենա պօղազի։

224. ՍԵՒԱՍՏԱՊՕԼ, և ԱՔԹԻԱՐԻՆԱ, տասնըութ մղոն հեռու պատուական և ընդարձակ նաւահան-գիստներ են մեծ գոգին մէջ. ուր մտակայի նաւա-խումբը կը կենայ, և կայ բերդ, նաև բնակիչ. որ

կըսուի Աքեառ Ճերմակ լեռներուն համար։ Հոս է մոսկովին մեծ գործարանը նաւուց։ Անկէ անդին է Գաղպուռուն, և Ալլիթա նաւահանգիստ փոքր։ Արրիանոս կը դնէ Գալոսի նաւահանգիստ։ Այս ծոցերուն մէջ կը վազեն Խաչխուռ և Ալմա գետերը։ Այս տեղերն հիմա փոքր աւաններ են. գրեթէ ամենայն ազգ կը գտնի, և առուտուր կընեն։

225. ԿԻՕԶԼԻՎԻ, կամ Եսօպօջ, եօթանասուն մղոն հեռու է Փէլէնկէն. ունի նաւահանգիստ արևմտեան կողմն խրիմու. ուր կայ հին բերդ. և է քաղաք վաՃառականութեան ցամաք լեզուի վրա շինած ծովեզերքը. առաջ իրեք հարիւր տուն հայ կար, հիմա քիչ են, Պարայի հրեայ շատ կայ։ Ասոր քիթն է Օէյ-Բուռն պուռունը, որ Պօյնուխ կըսուի։ Արրիանոս այս տեղը Ալիտիտա կը կոչէ, այսինքն աղէհան. որովհետև տեղ տեղ լճեր կան մինչև եօթն մղոն մեծ. ուր օգոստոսի սկիզբն ջրին մէջ որդ կը գոյանայ, նշան է թէ պիտի աղ ըլլայ. յետոյ ջարդըլվելով որդը քիչ մի կը կարմրի ջուրը. ապա քարանալով աղ կըլլայ։ Երբոր որդը կը տեսնեն տեղացիք՝ մեծ ուրախութիւն կընեն առհասարակ։

226. ՖՕՌՕՋ ՊՈՒՌՆԻ, կամ Լուսէ պօղպոսուն. ըստ հն. Պոօփէնօֆանտի. որ է երկայն քիթ դէպ՚ի Օզու ծուած Սեւեալ ծովուն բերանը. և հեռու է քսասուներկու մղոն կէօզլէվէյէն։

227. ԱՍԿԻ կամ Թարխան աքմէջէթ, ութսուն մղոն հեռու է կէօզլէվէյէն. ունի լաւ նաւահանգիստ արևմտեան կողմն, ուսկից կըսկըսի Սեւեալ ծովը։ Ասկէ անդին է Ասկի եալլթա. և մինչև Օզու երևելի քաղաք չի կայ. դիմացն է Գըրգըլ գամիշ։

228. ԱՕԼԻՒ ՏԷՆԻՋԻ. ըստ յն. Ակէկրօբէնու, է ընդարձակ գօգ սև ծովուն. լայն իբր յիսուն մղոն, երկայն իբր հարիւր մղոն. որ կը վերջանայ երկու ծայր կամ ականջ. վարի ծայրը կըսուի Պուլջէք խրիմու կողմը. վերինը կերթայ Օռ գաբուն. ուսկից կըսկըսի Օռին մեծ խրամը. այս է բուն ծայր Սեւեալ ծովուն, ուր կը վազէ Կալանծա գետ։

Եւ այս հիւսիսային ականջը բոլորովին աւազ լե-

ցուն է ընդարձակ տեղ ։ Ասոր շատ վտանգաւոր ըլլալով բացէն կանցնին նաւերը · թէ որ այս Սեւեաւ ծովը նաւ մտնէ, շատ դժուար կազատի ։

Այս ծով առաջ կըսուէր Կարկինիտեան ծոց · ուր կար Կարկինէ քաղաք Թաթարաց · որուն անուամբն այսպէս կոչեցին այս խորշ և ծոց պոնտոսի · որպէս կը բերէ և Խորենացին ։

229 · ՍԷՆԿՈՒԼԷԹ, է քիթ, և ունի ծոց Սեւեաւ ծովուն ներսը · ուր կայ հին բերդ և գեղ · որուն դիմացն է Նաւլինաձ փոքր կղզի անպէտ ։ Հիւսիսային դին երկու փոքր գետ կը վազեն, և Զէթէրլիկ մեծկակ գետ ։ Անկէ անդին է Պալչիք, և անդին՝ Օռ ։ Ահա հոս կը վերջանայ խրիմու կղզին, որ եռանկիւնաձև ըլլալով միայն Օռին նեղ ցամաքովը փակած է Մոսկովատանու · անոր համար կըսուի Պերեքոփ խրիմ · այսինքն ցամաքակղզի խրիմու · բոլոր շրջապատն է իբր եօթնհարիւր մղոն ։

230 · Սեւեաւ ծովուն հիւսիսային կողմն է դաշտավայր Օզուի · ուր է Թէնէթրէ պուռնի, որ Ադմէջիդին դիմացը կեյնի · որուն դիմացն է Թէնէրէ տոու, կամ Սանռարըլար · որ երկայն բարակ լեզուներ են ծովուն մէջ, մինչև կը մօտենան Գըըլպուռունին իբր հարիւրերսուն մղոն երկայն · ուր գետերուն տիղմը աւազէ կղզիներ շիներ է · միջոցը նեղուցի նման գոլով՝ մանր նաւեր կանցնին ։ Այս նեղուցը Լէյլան կըսուի, և հինգ բերան ունի · Թէնէթրէին քթին վրայ լաթ բացած է նշանի համար · ուր շատ ծանծաղ է ջուրը ։ Տես աշխարհացուցին վրայ ։

231 · ԳԸԸԼՊՈՒՌՈՒՆ, ըստ յն · Պռալոֆայօր, է բարակ սուր քիթ արևելքէն արևմուտք երկնցած օզուի նաւահանգստին բերանը · հեռուէն մազի նման բարակ կերևնայ · անոր համար ըսուեցաւ Գըըլպուռուն · մէկ կողմն է սև ծովը, մէկալ կողմն է Օզուին լիմը · ծայրն ունի լաւ բերդ տաճկէն մնացած · որ մոսկովն առաւ 1774ին ։ Այս քիթն իսկ մղոն դառնալով Օզուին նաւահանգիստը կը մտնէ ։ Այս տեղ հին ատենը կըսուէր Տրօմօս աքիլլէոս, այսինքն ընթացք Աքիլլէայ · զի Աքիլլէս հոն կրթութիւն կընէր կը-

ռեն ։ Արեւմտեան կողմն քթին Սուրբ սար կը կոչէ Պալաղամէոս ։ Պլինիոս այս քիթն ութսուն մղոն երկայն կը դնէ. որ հեռու է Փոռօզէն իբր հարիւրվաթսուն մղոն ։

232. Գուլլապաաունէն կամ օղուի բերնէն ներս շատ ընդարձակ և պատուական նաւահանգիստ է, որ կը վերջանայ մինչև Տնէբէր գետ երկայն իբր քառորհինգ մղոն, և լայն չորս մղոն. որ կըսուի Չխան կամ Օղու սույէ ։ Արրիանոս այս կողմն կը դնէ Տամիրակա քաղաք. որ Տամիրիս թագուհին գեթաց շիներ էր ։

233. ՏՆԷՊԷՐ, կամ Ալէքսէր. ըստ հն. Տանաբրիս կամ Բորիսթենէս. ըստ տճ. Ոչէրոսն սույէ, է երևելի մեծ գետ, որ կելլէ Մոսկովայ անտառէն Աւքանիայի, և անցնելով Լիթուանիան, և անապատն նողայեան թաթարաց կուգայ օղուի հիւսիսային կողմէն Չխան լիմը կը ձևացնէ, և Գուլլապաաունին բերնէն սև ծով կը թափի ։ Ջուրը քաղցր է և ձկները մեծամեծ և զանազան տեսակ. մէջը շատ կղզիներ կան. կամուրջ մի ունի 1638 քայլ ։ Այս գետին արևմտեան կողմն է Ոչէրոսն բերդն. որուն քովէն կը թափէ Ինկուլ գետը. նաև ուրիշ բերդ ալ կար շինեալ հին. 1090 ։ Հիները կը յիշեն Բորիսթենիս քաղաք. ուր կար հին ժողովուրդ նոյն անուամբ. նաև այն քաղաք կըսուէր Ոլբիա ։ Տնեպեր գետին վերը Պօյ սույին վրա է Սլաւօնիեսլաւ քաղաքը. ուր 1779ին Խրիմու հայերէն հարիւր վաթսուն տուն գնացին շինեցին Մ՛ոսկովի թագուհիին անուամբն. ունին երկու եկեղեցի, և օրէօր կը ծաղկին. երկիրն է բարեբեր, և ունին ամէն հարկաւոր բան. որոնց նաւատեղին (Ինկելէն) է Ոչէրոսն. այս նահանգը շատ խաղաղ կայ ։

234. ՊՕԿ, ըստ տճ. Աքսու, ըստ հն. Իպանիս երևելի գետ, կելլէ Լեհաստանէն և օղուի մօտ երկու ճիւղ կը բաժնուի ու հիւսիսային կողմէն կը թափէ լիմանն ճիին մէջ. տասը մէկ փոքր ճիւղը կերթայ Փերեզէն. որով իբր ցամաքակղզի կըլլայ Օզու ։

235. ՕԶՈՒ, է երևելի ցամաքակղզի հիւսիսային ծայրը լիմանն ճիին և գիմացը Գուլլապաաունին ։ Ըստ Արր". Ոչէրոսնիոս Ռոսըլէլէ կըսուի, այսինքն ցամա-

քանկղզի. ունէր անառիկ և զօրաւոր բերդ. լեռան
գլուխը շինած. Քանըրհինդ ոտնաչափ բարձր էր պա-
րիսպը. քաղաքը բերդէն վարն էր. որ 1788ին Մոս-
կովն առաւ քանդեց. ուր առաջ Քանըրհինդ հազար
բնակիչ կային ամէն ազգէ. Հայերն էին քառասուն
տուն, ունէին նաև եկեղեցի:

Այս երկիր առաջ կըսուէր Մխաչա, և կը հասնէր
մինչև Պուրղ քիլիսէ՝ հարիւր քսան մղոն երկայն, և
հարիւր լայն. այս կողմի Թաթարներն իրեք կը բաժ-
նըվին՝ Օզու Թաթարի, Պուճաղ Թաթարի, Տօ-
պրուճա կամ Նօղայ Թաթարի. և երկիրը կը հաս-
նի մինչև Տօնաւիս գետ, որ կըսվի Ենտապար Նահ-
րայ: Շատ բարեկից և առատ երկիրներ են. մանա-
ւանդ օդուն չառնըված ամէն կերպ առատութեամբ
լեցուն էր:

236. ՓԻՐԻՋԷՆ, կղզի է օզուի լճին բերանը. ուր
նաւ կրնայ կենալ, և քովը կը վազէ Փերեզէն գետը.
Ջոն է Խանէ նաւահանգիստը փերեզէնին՝ լայն եր-
կու մղոն. ուր նաւ կը կենայ ապահով: Անկէ ան-
դին է լիճը Տէնի կէօլ. և արևմտեան կողմն է Ջատմի ֆա-
ղա հին բերդը: Տասնըրութ մղոն անդին է Պիրալա հա-
սան Ճատըրի. ուր կայ ծոց և գեղ:

237. ՕՏԷՍԱ, ըստ հն. Օտէսոս, և ըստ ան. Խըօճա-
պէյ, քառասունըչորս մղոն հեռու է Օզուէն: Առաջ
աննշան տեղ էր. Մոսկովն առաւ շատ զօրացուց.
նաւահանգիստը ապահով և լաւ շինեց. բերդը ամրը-
ցուց, և այնչափ երևելի շէնքերով և քաղաքականու-
թեամբ զարդարեց, որ հիմա եղաւ երևելի վաճա-
ռականութեան քաղաք Եւրոպական. Նաւահանգիս-
տը լեցուն է նաւերով, շատ ցորենի առուտուր կըլ-
լայ: Անէլիքէ լիճը մօտ է հոս:

238. ԵԱՆԸՐԳ ՓԱԼԱՆԿԱ, շատ հեռու չէ. որ է
հին բերդ քանդած. որ կըսվի նաև Եէնի ֆալանկա,
այսինքն Նոր դղեակ: Այս աւան բլուրի վրայ շի-
նած է. անկէց մինչև Աքերման ընդարձակ դաշտ է
Պուճաղ Թաթարաց. և իրենց երկիրը կը հասնի
մինչև Պրուտա գետ հարիւր քսան մղոն երկայն: Եր-
կու չափաւոր գետ կը վազէ Պանիրաճէ, և Աճիտէրէ.

239. ԱԳՔԻՐՄԱՆ, է երեւելի եւ զօրաւոր բերդ Թաթարաց՝ վաթսուն մղոն հեռու Օտեսայէն, եւ իրեք մղոն հեռու սեւ ծովէն. մէկ կողմը կայ ահագին խոր խրամ. մէկալ կողմն է Դուռալա գետը, որ առաւ Սուլ. Պայէզիտ 1484ին. ուր ամէն ազգ կը բնակին. հայերն ունին եկեղեցի: Ագքիրման սպիտակ բերդ ըսել է. ոմանք Պէլկօրօտ կըսեն. իսկ Մոլտովանցիք Չէթատէ ալպա կըսեն, որ նոյն ըսել է: Այս քաղաք ունի պատուական նաւահանգիստ կամ գօտ, որ կըսվի Ագքէրման պօղազը. ուր մեծ նաւեր կը մտնեն, թէպէտ բերանը քար կայ. որ կը վերջանայ Տինեստեր գետ: Ասա Պաղ. հին ատենն երկու քաղաք կար հոս: Դիրաս էր հիւսիսակողմն Ագքիրմանու, եւ Նիկոնիասոս հարաւակողմն:

Տինեստեր կամ Դուռալա երեւելի մեծ գետ սեւ ծովուն՝ ընդարձակ միջոցով կուգայ Լէհաստանի կողմէն. եւ կանցնի Կամէնից քաղաքէն քովէն Ագքիրմանու ծոցը կը վազէ. որ հին ատենը կըսվէր Տիրաս կամ Նիստր. որուն վրայ շինված է Ներսը 1792ին Գրիգորիօպոլիս քաղաքն հայոց. որոնք ունին շատ ազատութիւն, եւ ինքնագլուխի պէս կը կառավարվին: Այս գետէն կելլէ Չուկա ձուկը պարարտ նման մէրսինի:

Պէնտէր, կամ ըստ հն. Դէքին եւ Դէթինէ երեւելի բերդ՝ շինված է աջակողմն Դուռալա գետոյն. ուր փախաւ Կարոլոս Թագաւորը շվետաց մնակովի Պետրոս Թագաւորին ձեռքէն 1709ին: Նաեւ Դուռալայի մօտ է Կաւշան քաղաք՝ Պօթնա վտակին վրայ շինված. ուր հայեր կան եւ ունին եկեղեցի: Հոն մօտ է հռչակաւոր խրամը Տրայիանոսի. որուն մէկ ծայրն է Փետրօվարատին, եւ մէկալ ծայրը կը հասնի Տօնաւիս գետ: Թաթար բունար Իսմայիլի կողմը կիյնի. ուր առաջ քաղաք էր ժայռի վրայ շինված. տակէն պատուական ջուր կելլէ: Քէնան փաշային շինված բերդը հոն է անշուք մնացած:

Պէսարապիա, կամ Պէսսարապիա կըսվին այս տեղերն, որ Ագքիրմանէն կըսկըսին եւ կը հասնին մինչեւ Դունա. ուր ոչ անտառ կայ, եւ ոչ լեռ. բնակիչներն

են Նողայ Թաթարք վրանաբնակ․ որոնք շատ կը սի-րեն ձիու միս և ձիու կաթ․ անով կը մեծարեն ի-րենց բարեկամը․ Թէպէտ ամէն բարիք ունին, միս, լաւ եղ, պանիր, և շատ ցորեն կը հանեն։ Գլխա-ւորները կըսվին Միրզէ, որ է ազնուական․ ով որ ա-տոնց ձեռք վերցընէ, ձեռքը կը կտրեն․ Երսուն հա-զար կան․ ամէնն ալ յաջող թէ՛ պատերազմի, և թէ աւազակութեան․ ամէն աշխատանքի կը դիմանան․ ոչ ցրտէ կը վախնան և ոչ տաքէ․ մեծ գետերէն կանցնին մերկ ձիու վրայ նստած․ և շատ զարմանալի բաներ ունին․ Թէ՛ կերակուրնին և թէ հագուստնին պարզ է Սպահներուն պէս․ բայց ասոնք աւելի քա-ղաքավար են, և բոլորն այլազգ են։

Ագքերմանու մօտ կը դնեն Օվիդիոպոլ քաղաքը․ բայց հիները Քիւստենճէի մօտ կը դնեն Տոմիս քաղաքն․ ուր աքսորեցաւ Օվիդիոս (250)։

240․ ՊԱԼԱԳԱՆ ԻՍԿԻԼԻՍԻ, Ագքերմանին և Տու-նային մէջ տեղն է․ ունի քիթ և նաւահանգիստ։ Արևելեան կողմն է չափաւոր լիճն ադի․ իսկ արև-մտեան կողմն է ծոց ընդարձակ, որ կըսվի Սասըք, կամ Ճինկան պօղազի (241)։ Պալագանէն ժամանակով երկու թնդանօթ բերին Ագքերման այնչափ մեծ, որ երկու մարդ կրնայ վրան պառկիլ․ մէկ անգամ նե-տեր են մէկը՝ կրակ տուողն ընկեր մեռեր է։

241․ ՃԻՆՀԱՆ ԳՈՒԺԱՂԻ, կամ Սուրմէշլու գէօլը, է դոդ Պալագանին մօտ․ առջին կայ բարակ լեզու ա-ւազէ։ Այս կողմերս Տունայի մօտ ըլլալով երբեմն լճեր և ծոցեր կըլլան ջրին շատութենէն․ անոր հա-մար Սրխանոս Տունայի մօտ նաւահանգիստներ կը յիշէ։ Արդ՝ Խատըլըթէն մինչև Տունա 720 մղոն է․ որ նաւէ ընթացքով պակաս կը համրեն։

# Լ. ՄԱՍՆ ՍԵՒ ԾՈՎՈՒ

242. ԴՈՒՆԱ, կամ Դանուբ գետ երեւելի մեծութեամբ, Սեւ ծովուն ամէն գետէն աւելի մեծ և անուանի է. որ կելլէ Զուիցցերիոյ լեռներէն, և շատ պտըտելով Սավա մեծ գետին հետ կը խառնըւի, և մեծնալով կը ծովանայ, ինչպէս տեսանք ներսը: Ասիկա շատ զանազան գետեր ընդունելով եօթն աշխարհէ կանցնի. այսինքն Պավիերայէ, Նեմցէստանէ, Մաճառստանէ, Սըրփէ, Պուլղարիայէ, Մոլտավիայէ, և Պուճաղ Թաթարէ՝ կուգայ Սեւ ծով կը վազէ հինգ բերանով. հիները եօթը կը դնէին: Ասոր տեղ տեղ աւազուտ ծանծաղ է. նոյնպէս մէջը. բայց ջուրը լաւ է խմելու. որպէս փորձեցինք: Հիւսիսային կողմէն ա՛ բերանն է Քիլի. բ՛ Սիւնէ. գ՛ Խտրէլէզ. դ՛ Բօղազէջա. ե՛ Համրալը, կամ Քոստենա:

Այս անուանի գետին վրայ հիները զանազան բաներ խօսեցան: Հին ժողովուրդը հիանալով մեծութեանը վրայ տաճար շիներ էին Քիլի բերնէն վեր. և այնպէս սրբազան կը համարէին, որ կըսէին թէ նոյն կռատան ջուրը թռչունները գետէն կը բերեն: Ըստ նախնեաց՝ այս գետ Սեւ ծովուն մօտենալով անունը կը փոխէ Իստրոս կը կոչուի: Ովիդիոս ասոր մեծութիւնն իմացնելու համար՝ կը բաղդատէ Նեղոս գետին հետ այսպէս:

* Դանուբ մեծապանծ գետ ակնածելի,
Չունի խոնարհիլ մեծին Նեղոսի ||:

Այս գետին մէջէն շատ ձուկ կելլէ, և մեծամեծ մուրինաներ կելլեն. ծովուն մօտ փոքրիկ ձուկ մը կելլէ զարմանալի. վրան գոյնզգոյն, նոյնպէս պոչը նաշխուն. երկու ականջ ունի նման մկան: Այս ձուկն օդաչափ պէտք է անուանել. զի ամէն փոփոխութիւն օդին կը յայտնէ օդաչափ գործիքէն շատ

աղէկ. որ կը դնեն ապակէ ամանի մէջ ջրով լեցուն, ջրին տակն աւազ լեցընելու է. Արդ՝ որչափ որ օդն է հանդարտ և չպիտի փոփոխի՝ ձուկն անշարժ և հանգիստ կը կենայ աւազին վրայ. և երբ օդը պիտի փոխուի, կամ անձրև, կամ հով, և կամ կարկուտ պիտի գայ՝ ձուկը կըսկըսի շարժիլ շարունակ՝ ամանին մէջ վեր վար կերթայ, և աւազը խառնելով ամենևին հանդարտութիւն չունենար. Պէտք է ամսէ ամիս ջուրը փոխել, որպէս զի սնունդ առնելով շատ ապրի կենդանին.

243. ԿԻԼԻ ԳՕՂԱԶԻ, վաթսուն մղոն հեռու է Ադքիրմանէն. Հիւսիսային կողմէն առաջին բերանն է Դունայի. որ կէս մղոն լայն ըլլալով նաւ կը մտնէ, և ունի նաւահանգիստ. Բերդը ծովէն վերն է, և զանազան ազգեր կը բնակին գիւղաքաղաքը. Բերդին քով երկու լեռ կայ, վրան երկըթէ օղակներ հաստատած. կըսեն թէ ծովն առաջ հոն ըլլալով՝ նաւ կը կապէին եղեր անոնց (5).

Արրիանոս այս բերանը Բսիլոն, այսինքն փոքր՝ կանուանէ. քիչ վերն էր Աքիլլէոս կղզին. ուր ծնած կըսեն քաջն Աքիլլէս. ուսկից եղած է Կիլի անուանը. Ասոր փառաւոր արձանը հոն մեծագործ տաճարին մէջն էր, որ շատ գանձով և գոհարով լեցուն էր, և երևելի ուխտատեղի ըլլալով հեթանոսաց՝ ով որ ընծայ կը տանէր՝ քարերուն վրայ գրած կար զանազան ազգաց գրերով, ինչպէս կը պատմեն հնախօսները. Արրիանոս շատ այծեր տեսաւ հոն որ Աքիլլէսի ընծայած էին. Բայց հիմա չի կայ այս կղզին. Արրիանոս զարմանալի բաներ լսեր էր հոն այս տաճարին վրայ, որ մեծ ջերմեռանդութեան տեղ էր կռապաշտներուն. մինչ զի՝ ընծայ եղած այծերը սրբազան համարելով մարդ կարող չէր դպչելու, այլ ազատ կարածէին հոն.

244. ԻՍՄԱՅԻԼ, աւելի վերն է Դունայի վրան երևելի բերդ. ուր զանազան ազգեր կը բնակին. Հայերն իրեքհարիւր տուն կան. Եկեղեցին կիսով չափ գետինը թաղված է. Մեծամեծ ցորենի ամբարանոցներ կան այս քաղաքը. և շատ բարիք կերթայ ստամպօլ.

Հոս Դունա երկուս կը բաժնըվի · և վարը զանա-զան ձիւղ կըլլայ ։ Պրիմացն հարաւային կողմն է վե-րը Իպրայէլ, ըստ յն · Բռայիլաւ բերդ հինգ աշտա-րակով · շատ վաճառականութեան տեղ է · ունի նա-ւահանգիստ · բնակիչներն են յն · տճ · մոլտ · և հյ ։

245 · ՍԻՒԼԻՆԷ ՊՕՂԱԶԻ, տասնըութ մղոն հեռու է Վրխըլէն · որ է բուն բերան Դունայի մեծ և խոր · ուսկից մեծամեծ նաւեր կանցնին, և է նաւահանգիստ մեծ ։ Ասոր և Վրխըլին մէջ տեղն է ընդարձակ եղէգ-նոց · ուր սոսկալի մեծ պիծակ կըլլայ, մինչև մարդ-կըման մեռցընել ։

Ըլլան ատասը, տասնըութ մղոն բացն է փոքր կըղ-զի · որ Սիւլինէի դիմացը կիյնի ծովուն մէջ · ուր նաւ կրնայ կենալ ։ Մեր յայսմաւուրքին մէջ կը յիշէ Նա-ւին կղզի Դունային բերանին · ուր վախճանեցաւ սուրբ եպիսկոպոսն Աթերիոս ։

Սիւլինէին աշխարհագրական լայնութիւնն է 45° · 11'։
Երկայնութիւնն է . . . . . . . . . 27° · 40'։

246 · ԽՏՐԻԼԻՋ ՊՕՂԱԶԻ, տասնըութ մղոն հեռու է վերինէն · որ է երրորդ բերան Դունայի ։ Արրիանոս Գալոն կըսէ, այսինքն լաւ բերան · կարելի է թէ առաջուընէ աւելի խոր և աղէկ էր · հիմա մեծ նաւ չի կրնայ մտնել, թէպէտ չափաւոր լայն է ։

247 · ՊՕՌԹԻՑԱ, ըստ Յոյն · Նարակիօն, է չորրորդ բերան Դունայի · տասնըութ մղոն հեռու է վերի-նէն ։ Այս բերնէն վերն է Դուլջէ բերդը նոյն թեւին վրայ ։ Հարպայի կամ Արտաութա պօղազը, է հինգերորդ բերան Դունայի ։ Այս բերնէն ներս նաւ չի կրնայ մտնել շատ ծանծաղ ըլլալուն համար · ուս-տի աշխարհացուցներուն վրայ չեն դներ · ամենք Դա-լախարական կոնուանեն, որ մօտ է ։

248 · ՏՕԳՐՈՒՃԷ գաւառ Թաթարաց՝ ասկէց կը-սկսի և կը հասնի մինչև երկայն պարիսպը քանդուած · որ հին կայսերը շինեցին Սիլիստրէէն մինչև Քէօս-տէնճէ · ծովեզերքը կըսկսի Մանկալիա · ուսկից կըսկսի Պուլղարիա, և կը հասնի մինչև Նուաչուխ · որուն առջևէն կանցնի Դունա · ուր տեսանք հին շէնքեր և քայքայած տեղեր · նաև ինքնաբուխ տաք ջրեր

որ ծծումբ կը հոտէին ։ Երկիրը շատ բարեբեր է, պարարտ և խոտաւէտ դաշտեր, այգիներ, և անտառներ ունի. նաև հանքեր ոսկիի արծաթի երկաթի և կապարի. ուսկից կելլէ Եէշիմ քար կանանչ՝ կարմիր՝ երկնագոյն, և բազմափայլ քար ։

Պուլղարներուն մէջ տեսանք հիւրասէր և անուշ մարդիկ. աղքատներն են արտաքար, իսկ հարուստներն են վաճառական. և ամէնը քաջ պատերազմական մարդիկ են. որ հին ատենը շատ հոգնեցուցեր են յոյն թագաւորները ։ Կը պատմեն թէ ասիայի կողմէն եկած են, և նախ Տօնաւիս գետին քովերն են բնակեր. յետոյ եկեր այս կողմերս զարկեր տիրեր են. լեզունին շլաւոններուն լեզուին շատ մօտ է. ունին զանազան սովորութիւններ. գտակնին կլոր է, և շապիկնին նաշխուն. կնիկներուն գտակին վրա բոլոր ոսկի և արծաթ դրամ կարած է ։ Իրենց գլխաւորը Պօղպօնչ կըսուէր, որ յունաց դէմ շատ քաջութիւններ ըրաւ. մինչև Լևոն կայսրը թագաւոր անուանեց զինքը. իսկ Վօկօրիս թագաւորը յամի 866. քրիստոնեայ եղաւ Միքայէլ կոչուեցաւ, և բոլոր ազգը քրիստոնեայ եղաւ. հիմա շատ այլազգ եղած կան իրենցմէ ։ Հայոց ազգէն ալ ասոնց թագաւոր եղան, ինչպէս էր Սամուէլ թագաւորը. իսկ վերջի թագաւորը կըսուէր Շիշման. մինչև յիսուն թագաւոր նստան Դըռնովի և Նիկէպօլիս մայրաքաղաքներն, որ առաւ ն Սուլ. Միւրատ. և բոլոր պուլղարիայի տիրեց Եըլտըրըմ Սուլ. Պայեզիտ ։ Առաջ ասոնցմէ Օսմանցին տասը մարդէն մէկ զինուոր կառնէր, և վրանին իրենցմէ տասնապետ կը դնէր. որ կըսուէին Վօյնուք դէկի. հիմա վերցած է այս բանը ։ Սուլ. Միւրատն օրէնք դրաւ, որ թագաւորական ձիերը Պուլղարներն հանեն դաշտը. որ մինչև հիմա տարուէ տարի կերթան Ստամպօլ, որ կըսուին Վօյնիկ. և Խըտըրէլէզին հանդէսով կը տանին ձիերը Քեաղըտխանէ ։ Այս կողմն Դուռնայէն սկսեալ մինչև Իսմօս լեռը, նաև մինչև Ստամպօլու բերանը հին ատենը կըսուէր Թրակիա. որ մեծ տէրութիւն էր ։

249. ԴԱՐԱ ԽԱՐՄԱՆ, տասնըութ միլոն հեռու է

Բօռթիճայէն․ որ է փոքր քաղաք։ Հոս է Գարա-սու, որ է նոյն Քուռթա պօղազին․ որուն բերանը կըսվի Գարախարման պօղազը․ և նաւահանգստին քով ունի բերդ հաստան փաշայէն շինած․ ուր նաւ կրնայ կենալ։ Գարասու ջուրն առաջ կըսվէր Օավարօն․ մօտ է հին Սէ-Ընէօլէ ծոցը։ Հին աշխարհագիրներն հոս կը դնեն հին երևելի քաղաքը Փօրնի․ անկէ անդին ուրիշ քաղաք կար Գալաթիս։ Դունայէն տասնըութ մղոն հեռու կը դնեն հիները Սանքիտա քաղաքն․ ուր կատարեցան սուրբ Երմողայոս և Ստրատոն․ ըստ որում կը բերէ մեր յայսմաւուրքը։

250․ ՔԷՕՍՏԷՆՃԷ, երսունըվեց մղոն հեռու է վերընէն․ բերդն է Սիւթկէօլի ծոցին հիւսիսային կողմն․ ունի քիթ Հափճէճ պուռունի։ Այս քաղաք առաջ Քոսդանձա կըսվէր Կոստանդին Թագաւորին քեռուն անուամբը։ Ասոր մօտ է Գարասու լիճը․ նաև Պապա տաղին․ որ է մեծ սար, ուր կան մեծամեծ արծիւներ։ Քէօստէնճէի մօտ է Իւճաքօյ գետն, որ հնազանդութիւն կը նշանակէ․ զի Կոստանդիանոս Թագաւորն հոն տեսնելով խաչին հրաշքը՝ հնազանդութեամբ հաւատաց։

Դօմիս երևելի հին մայրաքաղաքը հոս կը դնեն․ որ ըստ տճ. Բաբէկալը կըսվի։ Այս քաղաք Դունայի բերնէն շատ հեռու չէր․ գտան դրամը, որ մայրաքաղաք պոնտոսի կանուանէ այսպէս․ ΜΕΤΡΟΠ ΠΟΝΤΟΥ ΤΟΜΕΟΣ․ այսինքն ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ՊՈՆՏՈՍԻ ԴՈՄԷՈՍ։ Բայց Ստրաբոնի ատենը այնչափ մեծ չէր։ Այսկէց էր սուրբ Բրետանիոս եպիսկոպոսն չորրորդ դարուն․ որուն յաջորդեց սուրբ Տիոդիմոս, որ էր փիլիսոփայ։ Նմանապէս Ովիդիոս բանաստեղծին ատենը չունէր առջի մեծութիւնը․ ուր աքսորեցաւ Օգոստոս կայսերէն․ որ կը պատմէ, թէ Միլէզիացի հաւաուած եկեր շիներ է այս քաղաքը․ և անոր համար ըսվեցաւ Դօմիս, այսինքն կտրատած․ զի հոն Մեդիա կտրտեց իր եղբայրը, ինչպէս կըսէ։

* Վասն այն Դօմիս անուն դնի․
Կտրատելոյ զի է տեղի․

Վայրըն եղբօր մանրէ զմարմին ,
Բաշխեալ 'ի մասն որպէս ասի ։

Ովիդիոս շատ կը տրտնջայ այս տեղին համար , և քարաշար վար կըզարնէ իր բանաստեղծութեան մէջ՝ անշուք և անշահ տեղ ըլլալուն համար . զորօրինակ .

* Նստիմ մնացեալ 'ի ծագս աշխարհի ,
'Ի ձիւնախառնաղաց երկիր ամէհի .
Ուր ոչ քաղցր միրգ ոչ խաղող ծնանի ,
Ոչ ուռիք գետոց ոչ լերանց կաղնի ։
Մի ըծով քան զցամաք 'ի գօմեսս առցես ,
Ընդունիք անարև 'ի հողմոց պէսպէս .
Ընդուլ մոլեգնեալ ուռնուն դիպաղեզ .
Շուրջ 'ի ծիր աշաց անհուն տապարեզ ,
Դաշտ լայնածաւալ անտառայ երեզ .
Ընգործ անտերունչ տեսցես արտօրէս ‖ ։
Ովիդ . տրտմ . գ . կ ։

251 . ՄԱՆԿԱԼԻԱ , ըստ յն . Բանճալլիս , երսունը- վեց մղոն հեռու է Կէօստէնճէէն . ունի բերդ և նաւ կենալու տեղ . քթին առաջը կայ հին անքար- տակին աւերակն , որ նաւահանգստին համար շինած էր ։ Պլինիոս կը կոչէ այս տեղս Ըրրխանոս , որուն բնակիչները Հերակլեացիք էին ըստ Ստրաբոնի . անունը կայ Գորդիանոս կայսեր դրամին վրայ ։ Պտղոմէոս այս կողմն կը դնէ Տետրիսաս հին բերդը . որուն մէջ Լուսիմաքոս իր գանձը պահեց ժամանակ մը ։

252 . ՇԱԳԼԱ ԳՈՒԹՆԻ , երսունըվեց մղոն հեռու է վերինէն . որ է երկայն սար , և ծովուն մէջ ցամաք . ուր վտանգաւոր ըլլալուն փէնէս կը վառի գիշերը ։

253 . ԿԻԼԻԳՐԻ ԳՈՒՌՆԻ , ըստ յն . Կալլի ակրա , այսինքն բարի քիթ , տասնըութ մղոն հեռու է վերի- նէն . որ է մեծ սար դէպ 'ի հարաւ ծովը մտած . ուր կայ բերդ և վանք , նաև ուխտատեղի տաճկաց . որ կըսուի Սարը սալթըգ ։ Ըսուի թէ հոս հին ատենը կռա- տուն կար , որուն տեղն ուխտատեղի շինեցաւ . զի առաջ ամէն մեծ սար սրբազան կը համարէին . ուս- տի և բարի քիթ կոչեցին այս սարը ։ Ըսոր համար

որչափ երեւելի սարերու առջեւէն անցանք, նաւավարները հաց նետեցին ծովը. որ է կռապաշտութենէ մնացած սովորութիւն. որոնք անկէ անցնելով հացը ընծայ կընէին կուռքին՝ ծովը նետելով. որ մինչեւ հիմա աւանդութեամբ կը պահեն։

254. ԳԱՎԱՌՆԱ, ինը մղոն ներսն է սարէն. ունի պատուական նաւահանգիստ և բերդ։ Այս մեծ ծոցին մէջ իրեք նաւահանգիստ կայ։ Հին աշխարհագիրները այս կողմն կը դնեն Տիոնիսիոպոլիս հին քաղաքը. ոմանք կը համարին թէ Վառնա է։

255. ՊԱԼՃԻԿ բերդաքաղաք՝ է ինը մղոն անդին, և նոյն ծոցին մէջ երեւելի նաւահանգիստ է. քովէն մեծկակ գետ կը վազէ. ուր մօտ է Պաթիկա և Մօղանլըգ։ Այս ծոցին մէջ յորձանքն ընդհակառակն ըլլալով դուրսի յորձանքին բնութենէն դէպ՚ի հիւսիս կը վազէ։

256. ՎԱՌՆԱ քաղաք՝ քսանուերկու մղոն հեռու է վերինէն. որ հիւսիսային կողմն է ծոցին. ունի լաւ նաւահանգիստ. որուն մէկ կողմն է Պալթա պուռունի, և միւս կողմն է Եօլչօք քիթ. քովէն կանցնի չափաւոր գետ, և մօտն է Տէկն լիճը։ Այս գետին վրայ՝ վերը շինած էր Մարկիանուպոլիս երեւելի հին քաղաքը՝ ՚ի պատիւ Մարկիանեայ քրոջը Տրայիանոսի կայսեր, և անունը կայ հին դրամներուն վրայ փորեղւած անուամբ, ինչպէս տեսանք։

Վառնա վաճառականութեան տեղ ըլլալով շատ երթեւեկութիւն կըլլայ նաւերու, և շատ բարիք կերթայ Ստամպօլ. ուր ամէն ազգ կը բնակին. երեսուն տուն հայ կայ, և ունին եկեղեցի. բայց Պուլղարի քաղաք ըլլալով բնակիչներուն շատը Պուլղար են։ Հին բնակիչներն էին Միլէզիացիք, որ շինեցին Վառնայի բերդը, և անուանը շատ անուանի էր, ինչպէս կերեւնայ հին դրամներէն. ուր շատ պատերազմ եղած է։ Սուլ. Միւրատ մեծ կոտորած ըրաւ քրիստոնեից դէմ. ուր մեռաւ Լատիսլաւ Մաճառի թագաւորն 1444ին։

Հին պատմիչներն վառնա կը համարին Կրունիսոպոլիս, քովէն գետ կանցնէր. թերեւս էր Գամչի անէրէ-

ալն, որ կանգնի այս կողմէն. որուն եպիսկոպոսն էր Դարիտոն, որ գնաց Քաղկեդոնի ժողովքը։ Եւ անոր համար կոչվեցաւ Դիոնիսիոպոլիս, զի Բաքոսի կուռքը հոս ծովուն քով գտան, որ Դիոնիսոս կըսվէր. (Դեմ. 643)։ Ովիդիոս այսպէս կը բերէ.

* Եւ զամրոցս որ կոչէին,
Դիոնիսոս յանուն քոյին ||։

Ովիդ. Եղեր. Ա։

257. ԷՄԻՆԷ ՊՈՒՐՈՒՆԻ, ըստ հն. Էմօս, քառասուն մղոն հեռու է Վառնայէն. որ է երևելի սար. որուն գոգը և նաւատեղին է Մեսեմբրի աւան՝ տասնըութ մղոն ներսը. որ է փոքր քաղաք, և ունի քիթ. որ Սիզեպօլիի քթին դէմ ըլլալով Պուռղազու ծոցին բերանն է եղած։ Առաջ կըսվէր Մեսեմբրիա, կամ Մենեբրիա. որ շինողին անունն է. զի Բրիա Թրակացոց լեզուով քաղաք ըսել է. ուստի կը նշանակէ Մենեի քաղաք։ Ասկէց կըսկըսի մեծ լեռը Էմօս, կամ ըստ տճ. Պալքան, և կը հասնի մինչև Տալմացիա. շատ տանջըվեցանք օրերով մինչև որ անկէ անցանք։

258. ԱՀԵՕԼՈՒ աւան՝ ինը մղոն ներսն է հիւսիսային կողմը ծոցին. նաւահանգիստը լաւ չէ։ Ծովուն մէջ դէպ 'ի հիւսիս տեսանք երկան քարուտ կամ աւերակ. բնակիչները պատմեցին թէ առաջ հոն շէնք կայ եղեր իբր ճամբայ շինած։ Մերն է անուանի բաղնիքը բնական. ուր կը բղխի առողջարար ջուր սաստիկ տաք. ջուրը ծծմբային հոտ ունէր։ Ահեոլուի ներսը կայ աղէհան. որ երբ արևը Ցուլը կը մտնէ, ծովուն ջուրը հոն կը կապեն առանձին տեղ. որ կըսկըսի աղանալ։ Պտղոմէոս կը կոչէ այս տեղս Անքիալոս, որուն եպիսկոպոսը Սեբաստիանոս՝ Կոստանդինուպոլսի Ե ժողովին մէջն էր. բայց հիմա Մետրապոլիտ կը նստի։

259. ՊՈՒՌՂԱԶ, տասնըութ մղոն հեռու է վերինէն. ունի լաւ նաւահանգիստ, բերդ, և է վաճառականութեան տեղ. ամէն տարի մեծ վաճառ կըլլայ, և հեռու տեղերէ ապրանք կը տանին. ուսկից շատ Ապա կելլէ. ուր կան ամէն ազգ. և հայերն

ունին եկեղեցի, և վաճառականութեան յարմար են։

260. ՓՈՌՈԶ, Հինգ մղոն ներսն ըլլալով ծայրն է Պուռղազու ծոցին. ունի լաւ նաւահանգիստ. ուր կը վազէ Գրանձիգ գետը։ Այս երևելի ծոց մը և ծովուն՝ քսանչորեք մղոն երկայն է. ոմանք քսանըմէկ մղոն կը դնեն։

261. ԴԻՆԿԵԱՆԻ ԻՍԿԻԼԻՍԻ, Ինը մղոն անդին արևմտեան կողմն է. ունի լաւ նաւահանգիստ և գետ։ Ասոր դիմացն է Մէշէյիշ ադասի, որ է փոքրիկ կղզի. երկու մղոն է շրջապատը, և ունի վանք, և եկեղեցի սուրբ Յովհաննու։ Այս կղզի ըստ Պլինիոսի կըսվի Կիզէ Ապողոնի. ուր կար տաճար և կուռք Ապողոնի. անոր համար քաղաքն ալ կոչվեցաւ Ապողոնիա։ Այս կուռքը Լուկուղոս վերուց Հռոմ տարաւ Կապիտողիոն դրաւ։

262. ՍԻՒԶԻՊՕԼԻ, կամ Սիզօպօլի, Ինը մղոն անդին ըլլալով Պուռղազու ծոցին բերանն է, և Ահեօլուին դիմացը կեցնի. չունի նաւահանգիստ. բնակիչները յոյն են. ուր երևելի բան չտեսանք։ Այս քաղաք Միլէզիացիք շինեցին, որ Ապողոնիա կոչվեցաւ վերի կռատանը համար (261)։

Սոյեան, կամ Օէյեան պուռնի, Ինը մղոն անդին է։ Այս քթին առաջն աւազուտ կայ. որուն մէկ կողմն է Րոսօմա փոքր նաւահանգիստը, մէկալ կողմն է Ագլիման. ուր կը վազէ Պուզտէ գետը։

Արրիանոս Սիզէպօլիէն անդին կը դնէ Քէրրօնէս նաւահանգիստ Թիրակիոյ։ Իսկ Ստրաբոն քաղաք կը դնէ սև ծովուն վրա. ուր գնաց հատուած Հերակլայոց, և կար տաճար կուսի. որ կը համարին Արտեմիս չաստուածուհին. նաև սարին գօգն իրեք նաւահանգիստ կը դնեն։

263. ԱԽՏԱԲՕԼԻ, կամ Ահդաբօլի, երսունըվեց մղոն հեռու է Սիզէպօլիէն. չունի նաւահանգիստ. ուր կը վազէ Թօնձա գետն, որ կուգայ Էտիրնէի կողմէն. բնակիչներն են յոյն. հին բան չտեսանք հոն։

264. ԻՆԱՏԱ ՊՈՒՌՆԻ, կամ Ակրա, քառասունըչորս մղոն հեռու է վերինէն. ունի լաւ նաւահանգիստ. որուն միւս կողմն է Տէալօս պուռնի. որ է փոքր քիթ։

265. ՄԻՐՎԻՋ, տասնըութ մղոն հեռու է վերինէն. չունի լաւ նաւահանգիստ. ուր կը վազէ գետ։ Հիներն այս կողմն կը յիշեն Փինօբօլիս հին քաղաք. բայց մենք չի կրցանք տեղը գտնել որոշակի։

266. ՄԻՏԻԱ, տասնըութ մղոն հեռու է վերինէն. ունի փոքր նաւահանգիստ, և բերանն աւազ ըլլալով դժուար է մուտը. ուր կը վազէ գետ։ Այս քաղաք սև ծովուն վերջի աւանը կը սեպվի. բայց անշուք քաղաք տեսանք սարին վրա շինած. քարոտ տեղ է, բնակիչներն են յն. և տճ։ Արևելեան կողմն է Մաղաճըրլը պուռունէն։ Մօտն է Օղլամուր և Թէրքօսու ծոցը, ուր կը վազէ գետ. և կերևնայ հոն հին պատի մնացորդ դէպ 'ի Մառմարա ծովն երկնցած։

267. ԳԱՐԱՊՈՒՌՈՒՆ, տասնըութ մղոն հեռու է Միտիայէն. որ ըստ ոմանց կըսվէր առաջ Իունէ Քէնէս. կարելի է թէ հին ատենը հոն ձրագ կը վառէին նաւերու համար։ Արրիանոս կը յիշէ հոս Թինեա սարը. կարելի է թէ Գարապուռունն է։

Ասկոնտրի գեղ յունաց, Գարապուռունէն ասդին է. իսկ Տօնուզ տէրէ, աւելի ասդին է. ուր է ընդարձակ աւազուտը դեղնագոյն, որ կըսվի Նէաֆգամպար։ Կերևնայ թէ առաջ ծով է եղեր հոս, և երկըթի հանք ըլլալով գունաւորած է աւազը. ծովը քաշվելէն ետև մնացեր է աւազ, ինչպէս որ դիտեցինք։

Այս կողմերս տեսանք հանքային տեղըրանք. և այս աւազուտ հին ատենէն 'ի վեր կայ. որ կերևնայ թէ Ստամպօլու բերանը բացված ատենը երևցաւ (7)։ Ինչպէս տեսանք նոյնչափ հեռաւորութեամբ Ասիայի կողմը նոյն գունով դեղին աւազուտ (42)։ Արրիանոս կը պատմէ թէ Քսէնոփոն գնաց Իտիսիս քաղաքն, ուսկից կըսկըսի ընդարձակ աւազուտը. հին ատենը կըսէ բնակիչները կրակ կը վառէին գիշերանց. որ նաւերը գան իյնին հոն, որ կողոպտեն. որոնք մինչև հիմա այս չարութիւնը կընեն։ Ասիայէն գալով երբեմն կը կարծըվի թէ հոս է նեղուցին բերանը. ուստի շատ անգամ նաւերը հոս կիյնին կը խորտակին։ Եւսեբիոս կը պատմէ թէ 2474 տարի առաջ Իատրիս քաղաքը շինվեցաւ Պոնտոս, որ ոմանք

